Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ

1990

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

**Խմբագրության հասցեն՝**
**375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2**

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1990 թվականի փետրվարի 5—7-ը տեղի ունեցավ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը: Պլենումը քննարկեց հետևյալ հարցը՝

Կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծի մասին:

Այս հարցի վերաբերյալ զեկուցումով պլենումում հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էին միութենական հանրապետությունների կոմկուս-
ների կենտկոմների, կուսակցության երկրկոմների, մարզկոմների և օկրուգկոմների այն ա-
ռաջին քարտուղարները, միութենական հանրապետությունների գերագույն խորհուրդների նա-
խագահությունների նախագահներն ու մինիստրների խորհուրդների նախագահները, ովքեր
ԽՄԿԿ-ի կենտրոնական մարմինների կազմի մեջ չեն մտնում, կուսակցության քաղկոմների,
շրջկոմների մի խումբ առաջին քարտուղարներ, խոշոր սկզբնական կուսակցական կազմակեր-
պությունների կուսկոմիտեների քարտուղարներ, ինչպես նաև մինիստրությունների, կենտրոնա-
կան գերատեսչությունների, ստեղծագործական միությունների ու կազմակերպությունների ղե-
կավարներ, գիտնականներ, ԽՍՀ Միության զինված ուժերի, մասսայական ինֆորմացիայի մի-
ջոցների ներկայացուցիչներ, երկրի մի քանի ածխավազանների ածխագործներ:

Մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան Ուկրաինայի կոմկուսի Կիևի քաղ-
կոմի առաջին քարտուղար Ա. Ի. Կորնիենկոն, ԽՄԿԿ Մոսկվայի մարզկոմի առաջին քարտուղար
Վ. Կ. Մեսյացը, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ի. Ա. Քարիմովը,
ԽՍՀՄ ժողովրդական կրթության պետական կոմիտեի նախագահ Գ. Ա. Յագոդինը, Լենինգրադի
«Իժորյան գործարան» արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար Յու. Պ. Արխի-
պովը, ԽՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար Յու. Ա. Պրոկոֆևը, ՌԽՖՍՀ Գերագույն
խորհրդի նախագահության նախագահի տեղակալ Տ. Գ. Իվանովան, Բելոռուսիայի կոմկուսի
Կենտկոմի առաջին քարտուղար Ե. Ե. Սոկոլովը, Դոնեցկի մարզի «Արտեմածուխ» արտադրա-
կան միավորման «Կոչեգարկա» հանքի պայթեցնող վարպետ Կ. Գ. Ցեսենկոն, Լատվիայի կոմ-
կուսի Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Յա. Վագրիսը, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի շինա-
րարության և ճարտարապետության հարցերի կոմիտեի նախագահ Բ. Ն. Ելցինը, ԽՄԿԿ Հյուսի-
սային Օսեթիայի մարզկոմի առաջին քարտուղար Ա. Ս. Ձասոխովը, Ուկրաինայի կոմկուսի
Նիկի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Ի. Ռևենկոն, ԽՍՀՄ պաշտպանական արդյունաբերու-
թյան մինիստր Բ. Մ. Բելոուսովը, Ղազախստանի Հանրապետությունում ԽՍՀՄ արտակարգ և լիա-
զոր դեսպան Վ. Ի. Բոլդիկովը, Մոլդավիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Պ. Կ. Լու-
չինսկին, ԽՄԿԿ Լենինգրադի մարզկոմի և քաղկոմի առաջին քարտուղար Բ. Վ. Գիդասպովը,
Ուկրաինական ԽՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Բ. Ե. Պատոնը, Սարատովի
«Էլեկտրաագրեգատ» արտադրական միավորման ավագ վարպետ Վ. Ա. Շարանովը, Ադրբեջանի
կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ն. Մութալիբովը, «Վ. Ի. Լենինի անվան Չելյա-
բինսկի տրակտորի գործարան» արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար Վ. Մ.
Պլատոնովը, ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովը, Մոսկվայի Մ. Վ. Լոմո-
նոսովի անվան պետական համալսարանի կուսկոմիտեի քարտուղար Ի. Ի. Մելնիկովը, ԽՄԿԿ
Իվանովոյի մարզկոմի առաջին քարտուղար Մ. Ա. Կնյազյուկը, ԽՍՀՄ արտաքին գործերի մի-
նիստրի առաջին տեղակալ Ա. Գ.Կովալյովը, ԽՍՀՄ կուլտուրայի մինիստր Ն. Ն. Գուբենկոն,
Կույբիշևի մարզի «Պրոգրես» գործարանի կուսկոմիտեի քարտուղար Վ. Վ. Կոզլենկովը:

Պլենումում կազմվեց կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի
պլատֆորմի լրամշակման և քննարկվող հարցի առթիվ պլենումի որոշման նախապատրաստ-
ման խմբագրական հանձնաժողով:

Փետրվարի 6-ին ԽՄԿԿ Կենտկոմի պլենումում շարունակվեց կուսակցության XXVIII հա-

Այդ իրադարձությունները հատկապես ողբերգական բնույթ ստացան Բաքվում՝
ջարդեր, սպանություններ, անմեղ մարդկանց իրենց բնակարաններից հանում և ար-
տաքսում հանրապետության սահմաններից դուրս:

Ադրբեջանում ծայրահեղական ուժերի գործողությունները ստանում էին ավելի
ու ավելի բացահայտ հակապետական, հակասահմանադրական և հակաժողովրդա-
կան բնույթ:

Մի շարք շրջաններում բռնի ուժով իրենց ֆունկցիաների կատարումից հեռաց-
վեցին իշխանության օրինական մարմինները, քայքայվեցին կառավարման կառույց-
վածքները:

Հարյուրավոր կիլոմետրերի վրա ոչնչացվեցին պետական սահմանի ինժեներա-
տեխնիկական կառուցվածքները: Գործնականում չէր թաքցվում հանրապետությու-
նում իշխանությունը բռնի զավթելու խնդիրը:

Այդպես չէր կարող շարունակվել: Անմեղ զոհերի նկատմամբ խոր կարեկցան-
քի հետ մեկտեղ երկրում ահագնանում էր վրդովմունքն ու զայրույթը հանցավոր
գործողությունների, դաժան բռնության և վանդալիզմի, օրենքների ոտնահարման
փաստերի առթիվ:

Խորհրդային մարդիկ հիմնավորված կերպով երկրի ղեկավարությունից պա-
հանջեցին վճռական միջոցներ ձեռնարկել օրինականությունն ու իրավակարգը վե-
րականգնելու, մարդկանց կյանքի անվտանգությունն ապահովելու համար:

Դուք արդեն գիտեք, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության հրամանով
Բաքվում արտակարգ դրություն է մտցված, ներքին գործերի մինիստրության զոր-
քերի և խորհրդային բանակի ստորաբաժանումները մտել են քաղաք:

Նրանք գրավել են հանգուցային օբյեկտները, իրենց վերահսկողության տակ
են առել պետական հիմնարկները, վճռական միջոցներ են ձեռնարկվում ջարդարար-
ների, անկարգությունների կազմակերպիչների ու սադրիչների դեմ: Հանցավոր տար-
րերից վերցվում են հրազենը և զինամթերքները:

Ցավոք, զոհեր կան: Որոշ վայրերում զինվորական ստորաբաժանումներին տե-
ռորիստները կրակով դիմավորեցին, և նրանք հարկադրված եղան ի պատասխան
զենք գործադրել:

Այսօր դժբախտությունը մտել է ոմանց տները: Ես իմ ամենաանկեղծ ցավակցու-
թյունն եմ հայտնում այդ ընտանիքներին:

Բաքվում, Ադրբեջանի և Հայաստանի սահմանամերձ շրջաններում, Անդրկով-
կասի այլ շրջաններում տեղի ունեցած ողբերգական իրադարձությունները մինչև
վերջ բացահայտում են ազգայնական մոլեգնության, սրբազան ազգային զգաց-
մունքները չարաշահելու գինը: Հանցագործություն է մարդկանց դրդել կույր ատելու-
թյան, եղբայրասպան պատերազմի խելացնորության:

Պետության պարտքն է վերջ տալ անօրինականությանն ու անմարդկայնությանը,
վճռականորեն կանխել մարդկային կերպարանքը կորցրած ծայրահեղականների
հանցավոր գործողությունները, որոնք պատրաստ են ուրիշներին զոհաբերել հա-
նուն իրենց անձնական հավակնությունների, շահադիտական նպատակների, իշխա-
նության ծարավի:

Պետության պարտքն է վերադարձնել մարդկանց խաղաղությունն ու անվտան-
գությունը, երկու հանրապետությունների ժողովուրդների ազատ, դեմոկրատորեն
զարգանալու, նորմալ աշխատելու, հանգիստ ապրելու, երեխաներ մեծացնելու ու դաս-
տիարակելու հնարավորությունը:

Խորհրդային բանակի և ներքին զորքերի զինվորներն ու սպաները կատարում
են ԽՍՀՄ սահմանադրության և օրենքի պաշտպանության իրենց պարտքը:

Ղեկավարությունը հուսով է, որ ձեռնարկված միջոցները կհասկացվեն և
կպաշտպանվեն մեր երկրի բոլոր ժողովուրդների կողմից:

Այս ժամին Ադրբեջանի, Հայաստանի բոլոր քաղաքացիներին կոչ եմ անում
ցուցաբերել իմաստնություն ու ողջամտություն, չենթարկվել պրովոկացիոն լոզունգ-
ների ու գործողությունների: Բոլոր խաբվածներին, մոլորվածներին կամ բռնի ուժով
հանցավոր գործողությունների մեջ ներքաշվածներին կոչ եմ անում ուշքի գալ, խո-
րը մտածել և կանգ առնել:

Ձեզ բոլորիդ խնդրում եմ ամեն կերպ աջակցել քաղաքացիական խաղաղու-
թյան վերականգնմանը, մեզ բաժին ընկած փորձության համատեղ հաղթահարմանը:

Խորապես հավատում եմ, որ ողջամտությունն ու պատասխանատվությունը
կհաղթանակեն, կգերիշխեն:

Այսօր, ինչպես երբեք, մեզ անհրաժեշտ են համազգային համաձայնություն,
սերտ համագործակցություն, միմյանց օգնություն՝ հանուն մեր պետության բոլոր
ժողովուրդների լավագույն կյանքի:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ, ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ԿՈՂՄԻՑ

**Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահությունը, Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհուրդը խոր կսկիծով հայտնում են, որ վայրագությունների, ջարդերի հետևանքով Բաքու քաղաքում մարդկային զոհեր կան հայ բնակչության շրջանում և խոր ցավակցություն են հայտնում զոհվածների ընտանիքներին ու հարազատներին:**

**Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ցասումով դատապարտում են անմեղ մարդկանց դեմ ուղղված վանդալիզմի քայլերը, Ադրբեջանական ԽՍՀ-ի ղեկավարությունից վճռականորեն պահանջում անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել Բաքվում և ամբողջ հանրապետությունում հայազգի անձանց անվտանգության երաշխիքներ ապահովելու, արյունալի չարագործությունների կազմակերպիչներին ու կատարողներին խիստ պատասխանատվության ենթարկելու համար:**

**Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահությունը, Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհուրդը, արտահայտելով հայ ժողովրդի կամքը, երկրի կենտրոնական մարմիններից պահանջում են վերջ դնել Ադրբեջանի տարածքում հայ բնակչության դեմ չդադարող բռնության ու դաժանության քայլերին, քաղաքական գնահատական տալ կատարվածին:**

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**
**ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ**
**ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ**

## Դատապարտում ենք ոճրագործությունը

### ՈՒ՞Ր Է ԱՐԴԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Չեմ կարող զայրույթս չհայտնել Ադրբեջանում և հատկապես Բաքվում կատարվող հակահայկական անմարդկային գործողությունների դեմ: Իրենց ինտերնացիոնալիստ հորջորջող ազգայնամոլները ոտնահարեցին այն կոչերն ու լոզունգները, որոնք խորհրդանշում էին Խորհրդային Միությունում հաստատված ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը: Սակայն այն, ինչին ականատես եղանք, պարզապես խայտառակություն է:

Այստեղ, անկեղծ ասած, ինձ մեծ վրդովմունք է պատճառում այն իրողությունը, երբ կենտրոնը կշեռքի նույն նժարների վրա է դնում և՛ ոճրագործներին, և՛ զոհերին: Կամ, մի՞թե արդարություն է, երբ կենտրոնական լրատվական աղբյուրները (մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն և այլն) իրադրությունը ներկայացնում են այնպես, որ ընթերցողները կամ ունկնդիրները չեն կարողանում հասկանալ ինչն ինչոց է, ով է մեղավոր՝ մարդ սպանո՞ղը, թե՞ անմեղ պաշտպանվողը: Ավելի ճիշտ, այդ հաղորդումներից անհնար է պատկերացնել պատճառն ու հետևանքը:

Իսկ ոճրագործները մինչև օրս անպատիժ են մնացել: Հետևաբար նրանք ոգևորվել և ավելի են անառակ դարձել: Ինձ ցավ է պատճառում, որ իրեն արդարության պետություն համարող երկրում կատարվում են այնպիսի անմարդկային, հակաբարոյական արարքներ, որոնք ոչ միայն պատիվ չեն բերում կուսակցությանը և պետությանը, այլև ժամանակակից քաղաքակրթությանը:

Կես դարից ավելի է հաշվվում իմ աշխատանքային գործունեությունը, և այդ ընթացքում միշտ էլ այն համոզմանն եմ եղել, որ, ի վերջո, արդարությունը կհաղթի, բայց այսօր այն ուշանում է՝ բոլորիս դարձնելով նյարդային ու թերահավատ:

Սարսափելին այն է, որ այս զգացումները համակել են նաև աճող սերնդին: Ինչպես անել, որ նրանք զերծ մնան անխոհեմ քայլերից, ինչպես նրանց բացատրել, որ այս աղետը վերջ կունենա և մոտ է հատուցման ժամը:

Ես խորապես համոզված եմ, որ հայ ժողովուրդն այս չարիքը ևս կհաղթահարի իր տոկունությամբ և անկոտրում կամքով, խոհեմությամբ կհաստատի խաղաղություն ու կարժանանա ողջ մարդկության համակրանքին:

Համոզված եմ նաև, որ այն բոլոր անարդարությունները, որոնք բաժին են ընկել մեր ժողովրդին, դեն կնետվեն, ի լուր աշխարհի տեղյակ կպահվեն և պատշաճորեն կներկայացվեն հայ ազգի կերպարը, նրա ձիրքն ու տաղանդը, նրա արարչագործ ոգին:

Այո՛, մենք գոյատևելու իրավունք ունենք, քանի որ մեր իղձն ու նպատակը խաղաղ աշխատանքն է, սերտ բարեկամությունը հարևանների հետ: Ավելացնեմ նաև, որ մեր հարևանների սանձարձակությունները ի վերջո կենտրոնին ստիպեցին թեկուզ ոչ հրապարակավ համադրելու, թե ով ով է:

ՎԱՀԱՆ ՄԱՆՈՒԿՅԱՆ

Երևանի «Էլեկտրոն» գործարանի ինժեներ,
պահեստի սպա, աշխատանքի վետերան



### ՄԵՐԸ ԱՐԱՐԵԼՆ Է, ՈՉ ԹԵ ՋԱՐԴԵԼԸ

Ադրբեջանի ժողովրդական ճակատ կոչված բարբարոսական ելուզակախմբի կողմից հայերի նոր ցեղասպանությունը Բաքվում, Շահումյանի շրջանում և Գետաշենի ենթաշրջանում սանձազերծված ընդհարումները զայրույթ ու բողոքի մեծ ցասում առաջացրին հայ էլեկտրամեքենաշինարարների բազմահազարանոց կոլեկտիվում:

Այո՛, այդպես էլ սպասվում էր:

Ես՝ շարքային բանվորս, այն խոր համոզմանն եմ, որ նման բարբարոսական գործողությունները կատարվեցին միայն ու միայն այն պատճառով, որ Սումգայիթում Ադրբեջանի ազգայնամոլ ծայրահեղականների վայրագությունները ժամանակին արժանի գնահատական չստացան և անհասկանալի պատճառով անհապաղ չկասեցվեցին: Մեր «ինտերնացիոնալիստ» հարևանները մեկ անգամ ևս ցույց տվեցին իրենց իսկական դեմքը և նպատակները՝ վերստին դիմելով բացահայտ գենոցիդի, մոռանալով, որ այդ ակտը սև խարան է բոլոր նրանց ճակատին, ովքեր պլանավորեցին ու իրականացրին մեր օրերի ամենախայտառակ վանդալիզմը, բոլոր նրանց, ովքեր շարունակում են ապակողմնորոշել ոչ միայն խորհրդային ժողովրդին, այլև համաշխարհային հասարակայնության կարծիքը:

Դեռ չբուժած հայոց համազգային մեծ աղետի ու ողբերգության վերքերը՝ այսօր Հայաստանը նորից է ընդունում իր վիրավոր զավակներին ու նրանց արցունքները սրբում մայրական գորովանքով:

Հիմա, ռեգիոնում արտակարգ դրություն է: Հուսանք, որ դա դրական փոփոխությունների կհանգեցնի, կդադարեն դարանակալ գնդակոծությունները, կապահովվի մարդկանց կյանքի անվտանգությունը, և, վերջապես, տեղից կշարժվեն շրջափակման հետևանքով կանգնած հազարավոր վագոնները, կյանքը կմտնի նորմալ հունի մեջ:

Ի դեպ, վերջերս, երբ վերադարձա Մոսկվայից (մասնակցում էի բանվորների, կոլտնտեսականների, ինժեներատեխնիկական աշխատողների ներկայացուցիչների համամիութենական խորհրդակցությանը) և գնացի գործարան, նորից զայրույթը պատեց ինձ: Հարազատ ձեռնարկությունը երբեք այսպիսի վիճակում չի եղել: Տնտեսական շրջափակման հետևանքով կոլեկտիվը պարզապես հայտնվել է անելանելի դրության մեջ: Բազմաթիվ արտադրամասեր այս օրերին արտադրանք են տալիս կիսով չափ, անգործության են մատնված հաստոցներն ու վառարանները: Բանվորներն օրվա ընթացքում աշխատում են մեկ-երկու ժամ այն դեպքում, երբ այս հզոր ձեռնարկությունը օրական թողարկում էր գրեթե մեկ միլիոն ռուբլու համախառն արտադրանք, իսկ այժմ՝ միջին հաշվով 170 հազար ռուբլու:

Ո՞վ պետք է պատասխան տա այս ամենի համար...

Վերջում կցանկանայի էլեկտրամեքենաշինարարների կոլեկտիվի անունից կոչ անել մեր հայրենակիցներին՝ հանդես բերել բարձր կազմակերպվածություն թե՛ աշխատանքում, թե՛ հասարակական միջավայրում, զսպվածություն ու հավասարակշռություն, չենթարկվել պրովոկացիաների: Հավատանք մեր ժողովրդի ուժին, նրա իմաստնությանը:

Դեպի գործ, դեպի աշխատանք, քանզի մերն արարելն է, ոչ թե ջարդելը:

ՄՆԱՑԱԿԱՆ ՍՈՒՔԻԱՍՅԱՆ

Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական
գործարանի հղկող բանվոր, Աշխատանքային կարմիր
դրոշի շքանշանակիր, ՀԽՍՀ պետական մրցանակի դափնեկիր

### Ո՞ՐՆ Է ՍԽԱԼԸ

Մեր երկրի ներկայիս քաղաքական, տնտեսական, սոցիալական ճգնաժամի պատճառներից է նաև ազգամիջյան հարաբերությունների առանձնահատկությունների ոչ պատշաճ հաշվառումը, ինչպես նաև հասարակական գիտակցության մեջ սոցիալական ու ազգային հոգեբանության դիալեկտիկայի մակերեսային ըմբռնումը: Ցավոք, տարածվել էր այն մտայնությունը, թե նյութական բարիքների առատության ստեղծումով, իբր, կվերանան նաև ազգային պատկանելության հետ կապված պրոբլեմները:

Մեր ճանապարհին եղել են վերելքներ ու վայրէջքներ, ցավոք, թույլ են տրվել
ճակատագրական սխալներ հատկապես ազգամիջյան հարաբերությունների բնագա-
վառում, որից շատ է տուժել նաև հայ ժողովուրդը:

Վերջերս, երբ Բաքվում արյուն թափվեց, երբ բռնի տեղահանվեց այնտեղի հա-
յությունը, նորից ու նորից ինքդ քեզ հարց ես տալիս, թե ինչ տեղի ունեցավ մեր
բազմազգ պետությունում: Դժբախտաբար, ժամանակին երկրի վարչական-տարած-
քային կազմավորման հիմքում չդրվեց ազգային ամբողջականության և ազգային
կազմավորումների համագործակցության սկզբունքը: Նույն ազգին պատկանող տա-
րածքը տրոհվեց վարչական միավորների միջև, ստեղծվեց փոքրաթիվ բնակչություն
ունեցող ազգային կազմավորումներն ավելի մեծաթիվ ազգային հանրությանը են-
թարկելու համակարգ, որը չէր կարող չոտնահարել փոքրաթիվ ազգերի հոգևոր ու
տնտեսական զարգացման օրինական իրավունքը: Տրամաբանական է, որ ամեն մի
ժողովուրդ, անկախ նրա թվաքանակից, ձգտում է հոգևոր զարգացման ազատու-
թյան, պայքարում սեփական իրավունքների վերահաստատման համար, մի հան-
գամանք, որն առավել սուր դրսևորվեց Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում:

Հարցի արմատական լուծումը թելադրում է բոլոր ազգային-տարածքային կազ-
մավորումները դուրս բերել ավելի խոշոր ազգային կամ տարածքային միավորների
ենթակայությունից և դրանց իրավունք տալ որպես ինքնուրույն պետական միավոր-
ներ ուղղակի մտնելու ժողովուրդների ազատ համագործակցության մեջ: Բոլոր ազ-
գային-տարածքային կազմավորումների քաղաքական իրավունքները և պարտա-
կանությունները պետք է լինեն հավասար՝ անկախ դրանց մեծությունից: Հարկավոր
է ճշտել պետական ինքնուրույնություն ունեցող կազմավորումների տարածքային
սահմանները, քանի որ դրանց մեծ մասի ձևավորումը կատարվել է կամայական-
րեն և չի համապատասխանում ինչպես պատմական իրողությանը, այնպես էլ տվյալ
տարածքների էթնիկական կազմին: Այդ պրոբլեմի արդարացի լուծումն այսօր դար-
ձել է առաջնահերթ խնդիր, մեր Միության միասնության, ժողովուրդների համերաշ-
խության և առաջընթացի ապահովման երաշխիք: Ուստի ազգային-տարածքային
միավորումների սահմանների վերանայումը և կարգավորումը, ինչքան էլ դրանք
դժվար լինեն, հասարակական անհրաժեշտություն են, անհետաձգելի հրամայական:

Հիրավի նյութական և հոգևոր իրական առաջընթաց կարող է լինել միայն ժո-
ղովուրդների և ազգերի ազատ ու անկաշկանդ համագործակցության պայմաններում:
Կարծում եմ, որ այն, ինչ տեղի ունեցավ Սումգայիթում ու Բաքվում պետք է համա-
կողմանիորեն քննարկվի կուսակցական ու պետական ամենաբարձր ատյաններում,
արժանանա համընդհանուր դատապարտման:

**ՄԻՔԱՅԵԼ ՔՈԹԱՆՅԱՆ**

ՀԽՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի դիրեկտոր,
հանրապետության ԳԱ իսկական անդամ

## ՍՏԻ ՈՏՔԵՐԸ ԿԱՐՃ ԵՆ

Հայ ժողովուրդը, Խորհրդային Հայաստանի ամբողջ բնակչությունն արդեն երկու
տարի է, ինչ գտնվում են ծայրաստիճան լարված պայմաններում: Արցախի պրոբլեմի
արդարացի լուծման անբացատրելի ձգձգումը, ավերիչ երկրաշարժը, էկոլոգիական
ոչ դյուրին իրավիճակը, և, վերջապես, ադրբեջանական ծայրահեղականների կող-
մից Հայաստանի շրջափակումը հյուծել են հանրապետության առանց այն էլ ծանր
կացության մեջ գտնվող էկոնոմիկան: Բայց այն, ինչ կատարվեց ընթացիկ տարվա
հունվարի կեսերին, ուղղակի մղձավանջ էր...

Նորահայտ բարբարոսները Բաքվում և Ադրբեջանի տարբեր շրջաններում գա-



զանություններ գործեցին հայ խաղաղ բնակչության նկատմամբ, որի հետևանքով
եղան մարդկային բազմաթիվ զոհեր: Վայրագ ամբոխն անում էր այն, ինչ երկու
տարի առաջ կատարվեց Սումգայիթում: Եվ, ո՞վ զարմանք, մարդու կերպարանքը
կորցրած այդ վանդալների ավազակությունները կրկին անտարբերության արժա-
նացան, նույնիսկ չեն դիտվում որպես ցեղասպանության փաստ: Մինչդեռ նենգ
դավադրությունը նախապատրաստվում էր մեթոդապես, սառնասիրտ ճիվաղությամբ:

Մենք ցասումով դատապարտում ենք անմեղ մարդկանց դեմ կատարված ոճ-
րագործությունը, ինչպես նաև մեր վրդովմունքը հայտնում կենտրոնական իշխանու-
թյունների «անճարակության» հանդեպ: Ցավոք, այդ իրադարձությունների ժամա-
նակ իրենց բարձրության վրա չգտնվեցին մասսայական ինֆորմացիայի միջոցներից
մի քանիսը: Այսպես, կենտրոնական հեռուստատեսության «Ժամանակ» ինֆորմա-
ցիոն ծրագիրը, ի լրումն ղարաբաղյան շարժման առաջին օրերից եթեր արձակած
բազմաթիվ ոչ օբյեկտիվ հաղորդումների, ամբողջ երկրով սուտ տարածեց, թե, իբր,
Հայաստանում «սպառնում, ահաբեկում են քրդերին, նրանց նկատմամբ դրսևորում
անբարյացակամ վերաբերմունք»: Բայց ստի ոտքերը կարճ են, քանզի փաստերը
հաստատում կամ հերքում է ռեալ իրականությունը: Այդ է վկայում Հայաստանում
ապրող քրդերի խոր վրդովմունքն ու զայրույթը վերը նշված հայտարարության հան-
դեպ:

Ադրբեջանի ազգային ճակատի անդամ Վ. Կուլիևը Լենինգրադի «Սմենա» (14
հոկտեմբերի 1989 թ.) օրաթերթի թղթակցի հարցին, թե «... Ի՞նչ պատահեց քրդերի
հետ Ադրբեջանում», պատասխանել է. «... Քրդերը ամբողջովին ուծացվել են...,
որովհետև մենք նույն կրոնի ենք, և նրանք Ադրբեջանում պաշտոնապես քրդեր չեն
կոչվում...»: Ոչ ավել, ոչ պակաս:

Տեսնու՞մ եք, որքան պարզ է ու հեշտ: Կարելի է, ուրեմն, սկզբում հանգիստ
խղճով ուծացնել մի ժողովուրդ, հետո կանգնել «ինտերնացիոնալիզմի» դիրքերում
և ընդունել այդ ուծացված ժողովրդին «պաշտպանողի» կեցվածք:

Բայց ճշմարտությունը սա է. 1926 թ. Ադրբեջանում երեք անգամ շատ քուրդ
կար, քան Հայաստանում: Իսկ 1979 թ. մարդահամարի տվյալներով մեր հանրապե-
տությունում քուրդ ազգաբնակչության քանակն ավելացել է շուրջ չորս անգամ, այն
դեպքում, երբ «ինտերնացիոնալ» Ադրբեջանում նույն մարդահամարի տվյալներով
պաշտոնապես հայտարարվեց, որ քրդերի թիվը հասել է... զը-րո-յի:

**ՏԻՏԱԼ ԴԱՎՐԵՇՅԱՆ**

«Ռյա թազա» հանրապետական քրդական թերթի խմբագիր

## ՄԵՆՔ ԱՊՐԵԼՈՒ ԵՆՔ

Ուզում եմ, ինչպես ասում են, թղթին հանձնել երկու տարի շարունակ ինձ ան-
քնության մատնած, հոգեկան հավասարակշռությունս տակնուվրա արած մտքերս...
Ուզում եմ, բայց չեմ կարողանում: Աչքերս մթագնում են, ձեռքս չի ենթարկվում ինձ,
գրիչս դողում է, դողում զայրույթից: Այն, ինչ լսել ու տեսել եմ, վեր է ամեն տեսակ
երևակայությունից...

Իրենց տուն ու տեղից բռնի քշված, բզկտված, առևանգված կանայք, ծերեր,
մանուկներ, որոնց միակ մեղքն այն է, որ հայի արյունից են սերված:

Երկու տարի է Անդրկովկասում բռնկվել, շարունակվում է և, սատանան գիտե,
թե երբ և ինչպես կվերջանա վանդալիզմի և քաղաքակրթության հին կռիվը...

Ուզում եմ հավատալ, որ մեր հարևանների մեջ կգտնվեն խոհեմ ու խելամիտ
անձինք, որոնք, ի վերջո, ուժ կունենան սթափեցնելու մարդկային կերպարանքը
կորցրած ծայրահեղականներին և անարգանքի սյունին կգամեն բանականությունից
զուրկ հրոսակներին:

**ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ**

## ՈՒՐԻՇԻ ՑԱՎ ՉԿԱ

Ստավրոպոլցի և կրասնոդարցի սիրելի մայրեր, քույրեր: Մենք՝ հայ մայրերս ու քույրերս, խոր կարեկցանքով ու զայրույթով ընդունեցինք ձեր որդիների կյանքին վտանգ սպառնալու լուրը: Բայց միևնույն ժամանակ մեզ զայրույթ պատճառեց այն փաստը, որ դուք հայ մայրերին՝ տուժածներին ևս զգաստության կոչ եք անում: Ցավում ենք, որ մենք չլսեցինք ձեր բողոքի ձայնը, երբ վայրի ծայրահեղականները Սումգայիթում հոշոտում էին ոչ միայն մեր որդիներին, այլև մեզ՝ կանանց, աղջիկներին, ծերերին... Անարձագանք եղաք և այն ժամանակ, երբ Լեռնային Ղարաբաղում և հայկական սահմանամերձ գյուղերում բռնանում էին մեր հայրենակիցների վրա: Նույնիսկ ձայն չբարձրացրիք, երբ «ինտերնացիոնալիստ» Բաքվում կրկնվում էր սումգայիթը, թափ էր առել մի նոր եղեռն:

Այժմ, երբ վտանգ է սպառնում ձեր որդիներին, բնականաբար ոտքի ելաք: Մենք ձեզ իսկույն արձագանքեցինք, դատապարտեցինք անասնձ հարևանի վայրագությունները: Ժամանակն է, որ մեր բազմազգ երկրի մայրերն ու քույրերը թացը չորից ջոկեն և արժանին հատուցեն այն անմարդկային արարքների, եղեռնագործության համար, որ կատարվեցին վերջին երկու տարում:

Բավ է անմեղ մարդկանց արյուն հեղվի, արդարության ձայնին ունկնդրող ու պաշտպան է պետք:

**ՇԱՀԱՆԴՈՒԽՏ ԱՎԱԳՅԱՆ**
ԽՍՀՄ ժուռնալիստների միության անդամ

---

## ՍԽԱԼ ՀԱՍՑԵՈՎ

Վերջերս խորհրդային մշակույթի մի խումբ անվանի գործիչներ դիմել են Ադրբեջանի և Հայաստանի ժողովուրդներին՝ հրամայաբար կոչ անելով վերջ դնել փոխադարձ թշնամությանը և բռնել հաշտեցման ուղին: Նրանց դիմումը հրատարակվել է «Պրավդա» թերթի ս. թ. հունվարի 26-ի համարում: Անկասկած, այդ դիմումը թելադրված է ամենալավ զգացմունքներով, մեր երկրի ժողովուրդներին միասնական, բարիդրացիությամբ ապրելու ցանկությամբ:

Ակներև է, որ Բաքվի դեպքերը, որոնք իրենց մասշտաբներով և դաժանությամբ գերազանցեցին սումգայիթյան ողբերգությունը, շփոթություն են առաջ բերել դիմումը ստորագրողների մեջ: Սակայն զարմացնում են տեղի ունեցած դառնաղետ երևույթների էությանը խորամուխ չլինելու ֆենոմենը, դրանց համար պատասխանատվությունը դահիճի ու զոհի միջև հավասարապես բաշխելու փորձը:

Անկասկած, կան ուժեր, որոնց ազդեցությամբ մասսայական ինֆորմացիայի միջոցները ամեն կերպ ջանում են «հաշվեկշռել» իրենց հաղորդումները: Եթե հաղորդվել է Բաքվում կատարված սպանությունների մասին, ապա անպայման ավելացվել է, որ Երևանում էլ, որտեղ ժողովուրդն իսկապես հոգեպես հուզված վիճակում էր, կա «լարված դրություն»: Լարված դրություն ասելով՝ ինչ ուզես կարելի է հասկանալ: Այդ հաղորդումների հեղինակները գուցե կարծում էին, թե Երևանի բնակչությունը Բաքվից տեղ հասնող վիրավորներին և ծեծված մարդկանց պետք է դիմավորեր ուրախության և հիացմունքի բացականչություննե՞րով:

«Հաշվեկշռի» ակնբախ օրինակ մատուցեց վերջերս «Իզվեստիան», տեղեկացնելով, թե Ադրբեջանում և Հայաստանում արտակարգ դրության ժամանակ զոհվել են 148 զինապարտներ և քաղաքացիական անձինք: Այնինչ Հայաստանում ոչ միայն այդ ժամանակ, այլև բուռն դեպքերով հարուստ վերջին երկու տարվա ընթացքում ոչ մի զինծառայող չի զոհվել:

Եվ այնուամենայնիվ վերջին երկու տարվա դեպքերի, մասնավորապես վերջին շաբաթների ընթացքում Անդրկովկասում տեղի ունեցած դեպքերի նույնիսկ այն աղավաղված պատկերը, որ մասսայական ինֆորմացիայի միջոցները ներկայացնում են բազմամիլիոն ընթերցողների ու հեռուստադիտողների պահանջմունքը բավարարելու համար, նույնիսկ այդ պատկերը իրոք շահագրգռված մարդկանց ինչ-որ հնարավորություն է տալիս պատկերացնելու, թե իրականում ինչ է տեղի ունեցել Ադրբեջանում, Բաքվում և թե ինչ է տեղի ունեցել Հայաստանում: Այնտեղ եղել են ջարդեր, հայերի, ապա նաև ռուսների գազանային սպանություններ և տմարդի արտաքսում, Հայաստան տանող ճանապարհների շրջափակում: Այստեղ՝ զուսպ ինքնապաշտպանություն «եղբայրական» հանրապետության սահմանագծի երկայնքով, որն իրականացնում են աշխարհազորայինները և որոնց վերջին օրերին օգնության եկան խորհրդային ռազմիկները:

Տարօրինակ չէ՞ արդյոք, որ հարկ է լինում այս ակներև բաները բացատրել մեր հարգարժան ու թանկագին մարդկանց, խորհրդային գիտության ու մշակույթի ականավոր գործիչներին: Պատշաճը հատուցելով դիմումի հեղինակների խոհերին ու զգացմունքներին, կարծում ենք, որ տեղի ունեցող դեպքերի սոսկ իրական գնահատականը, կոնֆլիկտի մասնակիցների միջև պատասխանատվության արդար բաշխումը կարող են նպաստել կոնֆլիկտի էսկալացման դադարեցմանը և ռեգիոնում իրադրության կայունացմանը:

**Հայկական ԽՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոսներ**

| | |
|---|---|
| Վ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ | Գ. Ս. ԳԱԼՈՅԱՆ |
| Ս. Ա. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ | Գ. Մ. ՂԱՐԻԲՅԱՆ |
| Բ. Ն. ԱՌԱՔԵԼՅԱՆ | Ա. Ռ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ |
| Գ. Ա. ԲՐՈՒՏՅԱՆ | Վ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆ |
| Ս. Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ | Ֆ. Տ. ՍԱՐԳՍՅԱՆ |
| Ա. Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ | Վ. Բ. ՖԱՆԱՐՋՅԱՆ |

# ԴԻՄՈՒՄ-ԲՈՂՈՔ

## ՄԻ ԽՈՒՄԲ ԲՈՒԼՂԱՐ ԳՐՈՂՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ ԱԴՐԲԵՋԱՆՈՒՄ ԾԱՎԱԼՎՈՂ ԱՐՅՈՒՆԱՀԵՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՄ

**Սոֆիա, 20-ը հունվարի 1990 թ.**

Մոտավորապես երկու տարի է, ինչ մենք՝ մի խումբ բուլղար գրողներ, Բոտևի և Յավորովի մարտական ինտերնացիոնալ ավանդների ժառանգորդներ, տագնապով և սրտի ցավով հետևում ենք այն իրադարձություններին, որ տեղի են ունենում Ադրբեջանում և բազմաչարչար Հայաստանում։ 1896-ի աբդուլհամիդյան հայտնի ջարդերից և 1898—1915 թթ. հայ ժողովրդի ցեղասպանությունից հետո, որոնք դատապարտվեցին ողջ քաղաքակիրթ մարդկության կողմից, 1988 թ. փետրվարին, դժբախտաբար, հեռվից վկա եղանք նոր հայկական կոտորածների, սպանությունների և մոլեռանդ խառնամբոխի կողմից սանձազերծված վանդալիզմի արտահայտությունների՝ Սումգայիթում, Բաքվում, Կիրովաբադում և Ադրբեջանի այլ քաղաքներում և, որ ավելի սարսափելի է, դրանց կրկնությունը նաև այս օրերին, 1990 թ. հունվարին։

Կարեկցանքի խոր զգացումով լցված հերթական բռնության անմեղ զոհերի հանդեպ, մենք մեր վճռական բողոքն ենք արտահայտում արյունահեղությունների, կրոնական մոլագարության և ազգային անհանդուրժողականության դրսևորումների դեմ։ Չի կարելի մեր օրերում, մեր աչքի առաջ անպատիժ կերպով կատարել հանցագործություններ, սերմանել ազգամիջյան թշնամություն, ատելություն և խելահեղություն, որոնք վաղը կարող են վերածվել անկանխատեսելի հետևանքներ ունեցող աղետի ոչ միայն այդ երկու հարևան ժողովուրդների համար։

Համառորեն պահանջում ենք, որպեսզի անհապաղ արմատապես վերջ դրվի քաղաքակիրթ աշխարհի համար այդ խայտառակությանը, երբ սպանում, տանջամահ են անում և ստորացնում մարդկանց միմիայն նրանց ազգային ու կրոնական պատկանելության համար։

Հետևում է 41 գրողների ստորագրություն, որոնց թվում՝ **Վրբան Ստամատով, Խրիստո Ռադևսկի, Գեորգի Սվեժին, Մարիյ Յագոդով, Կոստանդին Կյուլյումով, Դոնչո Ցոնչև, Իվայլո Պետրով, Տոնչո Ժեչև, Բոգոմիլ Ռայնով, Վլադիմիր Սվինտիլա, Բորիսլավ Հերոնտիև, Իվան Ռադոև։**

Դիմում-բողոքը հաղորդվել է Բուլղարիայի հեռուստատեսությամբ, տպագրվել է Բուլղարիայի կուսակցական և գրական մամուլում, ինչպես նաև բուլղարահայ «Երևան» թերթում։

---



# *ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԱԶԳԵՐԻ ԻՆՔՆՈՐՈՇՈՒՄԸ*

**Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**

*ԱՅՍՕՐ ԱՆՉԱՓ ՄԵԾ Է ՀԵՏԱՔՐՔՐՈՒԹՅՈՒՆԸ ազգերի ինքնորոշման պրոբլեմի նկատմամբ։ Վերջին երկու-երեք տարում մեր երկրում ծայրահեղ սրված ազգային հարցը այդ պրոբլեմն առաջ քաշեց որպես արմատական՝ ազգային հարաբերություններում։ Բուն ինքնորոշման հարցի շուրջն են այսօր ծավալվում առավել սուր բանավեճերը։*

*ԽՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1989 թ.) պլենումը, որն ընդունեց ազգային քաղաքականության վերաբերյալ պլատֆորմը, նույնպես հատուկ ուշադրություն նվիրեց ինքնորոշման պրոբլեմին։ Մ. Ս. Գորբաչովը պլենումում նշեց. «Այստեղ վճռական հարցը, որին պետք է առանձնակի անդրադառնալ, արդի պայմաններում ազգերի ինքնորոշման լենինյան սկզբունքի իրականացման ուղին է։ Անցած տասնամյակներում այստեղ թույլ են տրվել զգալի խեղաթյուրումներ։ Ցավոք, դրանք որոշակի չափով ամրացվել են նաև հասարակական գիտակցության մեջ։ Ուստի և անհրաժեշտ է հստակորեն կողմնորոշվել մեր տեսության և քաղաքականության համար արմատական այդ հարցում»։*

## 1. ԱԶԳԵՐԻ ԻՆՔՆՈՐՈՇՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՆՑԵՊՑԻԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՕՐՈՔ

*Ազգային հարաբերությունների վերակառուցման պրակտիկայի այդ իրոք վճռական հարցը, ցավոք, մենք այսօր էլ վատ գիտենք, չենք փորձում խորամուխ լինել նրա էության մեջ և օբյեկտիվորեն ըմբռնել նրա բովանդակությունը, այլ առաջվա նման այն հարմարեցնում ենք կոնյունկտուրային քաղաքական և գաղափարախոսական խնդիրներին, ընդ որում պահպանելով հին շատ ստերեոտիպեր և նախապաշարմունքներ։*

*Սկսենք այն բանից, որ ազգային հարցի վերաբերյալ Վ. Ի. Լենինի հիմնական աշխատությունները նվիրված են հենց ինքնորոշման պրոբլեմին։ Նա ելնում էր այն բանից, որ ինքնորոշման մեջ ընդհանրացված ձևով արտահայտված են հասարակական զարգացման գլխավոր օրինաչափությունները ազգային հարաբերություններում, ազգային հարցի լուծման դեմոկրատական բովանդակությունն ու պայմանները, ընդհանուր առմամբ՝ դեմոկրատիզմը ազգային հարաբերություններում։ Պետք է նշել, որ Վ. Ի. Լենինի աշխատություններում հազիվ թե կարելի լինի գտնել բոլոր պատրաստի դեղատոմսերը արդի դրության մասին։ Ինքնորոշումը որպես մարքսիստական կոնցեպցիա հասարակական պատմական պրոցեսի ընթացքում և հեղափոխական շարժ-*

---

*ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ՄԿՐՏԻՉ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ— Մոսկվայի միջազգային հարաբերությունների պետական ինստիտուտի փիլիսոփայության ամբիոնի պրոֆեսոր, փիլիսոփայական գիտությունների դոկտոր։*

ման փորձի հիման վրա ապրել է որոշակի էվոլյուցիա, նրա բովանդակությունը դարձել է ավելի հարուստ ու բազմակողմանի։ Այդ կոնցեպցիայի շատ ասպեկտներ զարգացել են ու փոփոխվել և, ընդհանրապես, ինչպես ինքնորոշման տեսական պրոբլեմը, այնպես էլ ամբողջությամբ ազգային հարցը պահանջում են կոնկրետ-պատմական մոտեցում։ Բայց մի բան միանգամայն պարզ է. հենց լենինյան դրվածքն է մեզ ճիշտ կողմնորոշիչներ ու մեթոդաբանական բանալիներ տալիս ժամանակակից ազգային պրոբլեմների բովանդակությունը ճիշտ հասկանալու համար։ Լենինյան կոնցեպցիայի ողջ ոգին, նրա անկյունաքարերը, իրականացման սկզբունքները կօգնեն ճիշտ ուղղությամբ վերափոխելու մեր ֆեդերացիան, ազգային քաղաքականության բուն հիմքերը։

Ինքնորոշման մարքսիստական սկզբունքը կիրառելի է և՛ բուրժուադեմոկրատական ազգային շարժումների, և՛ ազգային շարժումների նկատմամբ՝ սոցիալիստական հեղաշրջման ընթացքում, և՛ ազգային հարաբերությունների նկատմամբ՝ սոցիալիզմի օրոք։ Հասարակական զարգացման բոլոր փուլերում էլ ազգային հարցում ինքնորոշումը պատմատնտեսական տեսակետից նշանակություն է ունեցել իբրև քաղաքական ինքնորոշում, անջատման ազատություն, ազգային պետականության՝ ազգի իրավունքի իրացում, վերջին հաշվով՝ իր բախտը սեփական կամքով տնօրինելու ազգի իրավունք։ Ինքնորոշման պրոբլեմը բուրժուադեմոկրատական հեղափոխություններում, որն արտացոլված է մինիմում ծրագրում, հետաքրքիր, յուրատեսակ և մասնագիտական գրականության մեջ քիչ հետազոտված պրոբլեմ է։ Բայց մի բան անչափ պարզ է. ազատորեն դուրս գալու, իր ազգային-պետական կազմավորման, վերջապես, պետականության իրավունքը պրոլետարիատի շուրջը բոլոր հեղափոխական, դեմոկրատական, այդ թվում ազգային-ազատագրական շարժումների և ուժերի միավորման միակ քաղաքական հիմքն է, դա անջատման դեմ պայքարի յուրատեսակ միջոց է։ Չէ՞ որ ինքնորոշումը, ուրիշ խոսքով, դա հրաժարում է ազգը նրա կամքին հակառակ բռնի կերպով պետության սահմաններում պահպանելուց։ Մեզ այսօր գլխավորապես հետաքրքրում է ինքնորոշման պրոբլեմը սոցիալիզմի օրոք։

Կարևոր է հենց միանգամից նշել, որ սխալ է այն պատկերացումը, թե իբր Վ. Ի. Լենինը սոցիալիզմի օրոք ինքնորոշման պրոբլեմն սկսել է մշակել արդեն Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, իսկ մինչև հեղափոխությունը նրա հայացքները հիմնականում արտացոլվել էին «Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին» աշխատության մեջ և սահմանափակված են եղել զուտ բուրժուադեմոկրատական բնույթի շրջանակներով ու պատկերացումներով։ Իսկ իրականում դեռ մինչև Հոկտեմբերը «Ինքնորոշման վերաբերյալ դիսկուսիայի արդյունքները», «Մարքսիզմի ծաղրանկարի և «իմպերիալիստական էկոնոմիզմի» մասին» (1916 թ.) և այլ աշխատություններում նա մշակել էր սոցիալիզմի օրոք ազգային հարցի լուծման պետական-քաղաքական ձևերի բուն հիմունքները, բացահայտել ինքնորոշման բովանդակությունը, նրա հարստությունն ու բազմակողմանիությունը։

Նախ և առաջ ինքնորոշման պրոբլեմը դեմոկրատիզմի պրոբլեմն է սոցիալիզմի օրոք։ Դեմոկրատիան սոցիալիզմի ժամանակ վերացություն չէ, ընդհանուր սկզբունքներ չէ և նույնիսկ կյանքի ոլորտներից մեկը չէ, այլ ամբողջ հասարակական կառուցվածքի բովանդակությունը։ Այն իր հատուկ արտահայտություններով ու ձևերով պետք է դրսևորվի բոլոր ոլորտներում, այդ թվում՝ ազգային հարաբերություններում։ Մենք պետք է կոնկրետ պատասխանենք. ինչում և ինչպես է դրսևորվում դեմոկրատիզմը ազգային հարցում։ Հենց ինքնորոշումն է, որ տալիս է այդ հարցի պատասխանը. «... երբ ասում են, թե ինքնորոշումը սոցիալիզմի ժամանակ ավելորդ է, դա հենց այնպիսի անհեթեթություն է, այնպիսի անճարակ խճճվածություն, ինչպես եթե որևէ մեկն ասեր՝ դեմոկրատիան սոցիալիզմի ժամանակ ավելորդ է» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 30, էջ 159)։ Սոցիալիզմի ժամանակ «իր ազգային պետությունն ունենալու իրավունքի ժխտումը իրավահավասարության ժխտումը չէ՞ արդյոք» (Նույն տեղը, էջ 160)։ «Եվ հետևողական, այսինքն՝ սոցիալիստական դեմոկրատիան կազդարարի, կձևակերպի և կիրագործի այդ իրավունքը, առանց որի ճանապարհ չկա դեպի ազգերի լիակատար կամավոր մերձեցումը և միավորումը» (Նույն տեղը, էջ 160)։



Սոցիալիստական դեմոկրատիզմն ազգային հարցում հավասարություն է «ամեն բանում, այդ թվում և պետական շինարարության մեջ», ««իր» պետությունը կառուցելու փորձի մեջ» (Նույն տեղը, էջ 45)։ Վ. Ի. Լենինը համոզված է, որ ազգային պետականության կառուցման ժամանակ «քաղաքական ձևերի բազմազանությունը» չի նշանակում այդ ձևերի անհավասարարժեքություն, նրանց որակական տարբերություն իրավունքների, լիազորությունների ծավալի տեսակետից և այլն, քանի որ կհակասեր ինքնորոշման իրավունքին, «հավասարությանը ամեն բանում», կօրինականացներ ժողովուրդների փաստական անհավասարությունը, նրանց բաժանումը կարգերի, կատեգորիաների։ «Քաղաքական ձևերի բազմազանությունը, պետությունից դուրս գալու ազատությունը, պետական շինարարության փորձը, այս ամենը կլինի, մինչև որ մահանա ամեն մի պետություն ընդհանրապես,— սա կուլտուրական հարուստ կյանքի հիմքն է, ազգերի հոժարակամ մերձեցման ու միաձուլման պրոցեսի արագացման գրավականը» (Նույն տեղը, էջ 46)։ Հենց այդ ձևերի հավասարությունը, որպես ազգային իրավահավասարության արտահայտություն, կարող է դառնալ ազգերի զարգացման, նրանց «կուլտուրական հարուստ կյանքի», նրանց միասնության հիմքը։ Ավելացնենք, որ «բոլոր ազգերն ինքնորոշման իրավունք ունեն», որ «մենք այդ բանը չենք կարող մերժել նախկին Ռուսաստանի կայսրության սահմաններում ապրող ժողովուրդներից և ոչ մեկին» (ԵԼԺ, հ. 38, էջ 200, 119)։

Իրերի տրամաբանությամբ ազգը պետական շինարարության փորձ է ձեռք բերում սոցիալիզմի ժամանակ և ֆեդերացիայի ստեղծման, նրա զարգացման գործում, ընդհանուր միութենական պետությունը նույնպես ազգի համար «իր» պետությունն է։ Չէ՞ որ հանրապետությունները, այսինքն՝ ժողովուրդներն իրենք են միավորվել և ստեղծել բազմազգ ֆեդերատիվ միութենական պետություն, և բոլորն էլ պետք է մասնակցեն նրա շինարարությանը, զարգացմանը, լինեն ֆեդերացիայի սուբյեկտներ, մասնակցեն նրա աշխատանքին, դրանով իսկ հաստատելով «հավասարություն ամեն բանում» սկզբունքը։ Պետական-քաղաքական իրավահավասարության, այսինքն՝ դեմոկրատիզմի ամեն մի սահմանափակում ազգային հարցում, ամեն մի, նույնիսկ նվազագույն ազգային անարդարություն ազգային հարաբերությունների այդ ոլորտում, ընդունակ են առաջացնելու կասկածամտություն, անվստահություն, ազգային բախումներ և անգամ թշնամություն, լրջորեն թունավորել ազգերի համատեղ կյանքը։

Ուրեմն ի՞նչ է ինքնորոշումը սոցիալիզմի ժամանակ։ Ո՞րն է նրա պատմատնտեսական բովանդակությունը։ Ինքնորոշումը մարքսիստական տեսակետից բազմազգ երկրում ազգերի կամավոր և իրավահավասար միավորման միակ հնարավոր պետական-քաղաքական հիմքն է, կենտրոնախույս միտումների, անջատողական ձգտումների վերացման միջոցը։ Դա իսկական դեմոկրատիզմի հաստատումն է, հրաժարումը ազգերին բռնությամբ պահելու ամեն կարգի դրսևորումներից, ազգային պրոբլեմների լուծման հակադեմոկրատական մեթոդներից։ Այդ կոնցեպցիայի համաձայն ամեն մի ազգ, մեծ կամ փոքր, սուվերեն իրավունք ունի անձամբ լուծելու, թե ինչպես ապրի, անջատվի կամ մնա։ Եթե ապրի միասին, ապա ինքը պետք է լուծի պետական-քաղաքական զարգացման ձևերի և միավորման պայմանների պրոբլեմը։ Անջատվելու իրավունքը, ֆեդերացիայից դուրս գալու ազատությունը մնում են որպես կարևորագույն սկզբունք և որպես համատեղ կյանքի կամավորության ու իրավահավասարության, դեմոկրատիզմի երաշխիք։ Եվ, վերջապես, ինքնորոշումը նշանակում է լայն ինքնակառավարում, լայն իրավունքներ տեղական, բուն ազգային սոցիալ-տնտեսական, կուլտուրական, լեզվական և այլ պրոբլեմների լուծման գործում։ Այլ խոսքով ասած, դեմոկրատիզմը, քաղաքական ինքնակառավարումը դառնում են ազգային կյանքի մյուս բոլոր ոլորտներում լայն և իրական հասարակական ինքնակառավարման պայմանն ու հիմքը։

Իրոք, ինքնակառավարումը համապատասխանում է վերակառուցման ոգուն և մեր երկրի քաղաքական սիստեմի արդի վիճակին։ Եթե միայն չմոռանանք, որ ինքնորոշումը զգալիորեն ավելի լայն հասկացություն է, նրա բովանդակությունն ավելի հարուստ է ու բազմակողմանի, քան պարզապես ինքնակառավարումը։ Եթե խոսենք ազգերի ինքնորոշման ոգու և իրական բովան-

որպես անառարկելի ճշմարտություն կրկնվել է այն դրույթը, թե ազգային հարցը հաջողությամբ լուծված է և ձեռք է բերված բազմազգ հասարակության լիակատար ինտերնացիոնալ միասնություն, մենք բախվում ենք ազգային հարաբերությունների լուրջ ձևախեղումների, բախումների և նույնիսկ բացահայտ թշնամության ու ազգերի անվստահության միմյանց նկատմամբ։ Այժմ արդեն պարզ է, որ բանը առանձին սխալների մեջ չէ, այլ ազգային քաղաքականության բուն կոնցեպցիայի, բազմազգ հասարակության կառուցվածքի սկզբունքային հիմքերի մեջ։ Այժմ անհրաժեշտություն է առաջացել իրականացնել ազգային նոր քաղաքականություն, վերափոխել բուն ֆեդերացիան։ ԽՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը, հավանություն տալով ազգային քաղաքականության վերաբերյալ ընդունված պլատֆորմին, այդպիսով երկրին տվեց ազգային քաղաքականության նոր կոնցեպցիա և ազգային հարցի լուծման տեսական-քաղաքական հիմք։ Հենց այդ փաստաթղթում առաջին անգամ ուղղակի ասված է, որ «ազգային հարցը Խորհրդային Միությունում վերջին ժամանակներս բացառիկ սրություն է ստացել»։ Պլատֆորմն իր դեմոկրատական միտումներով և բարդ պրոբլեմների ստեղծագործական դրվածքով, լավ հիմք է ստեղծում տեսական որոնումների, ազգային հարցի տեսության բարդ պրոբլեմների վերաիմաստավորման համար։ Դեռ երեկ վերին աստիճանի պարզ էր թվում, թե ինչ է ազգային հարցը, ինչպես է ծագում այն, ինչպիսիք են նրա լուծման պայմաններն ու գործոնները, այսօր այդպիսի պարզություն չկա։ Իսկ գործնական առումով ազգային քաղաքականության որակական նորացման, նրա կենսագործման խնդիրները պահանջում են այդպիսի պարզություն։ Այսօր կարևոր է ելնել ռեալ պրակտիկայից, ազգային հարցի լուծման ինչպես մեր բազմազգ հասարակության, այնպես էլ համաշխարհային փորձից։

Այդ կապակցությամբ մեր կյանքի դեմոկրատացման պրոցեսում, ազգերի ինքնորոշման իրավունքի լենինյան սկզբունքի հետևողական կիրառման հարցում առանձնահատուկ տեղ է գրավում Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը։ Այդ պրոբլեմը, որ իր արմատներով գնում է մինչև ստալինյան կամայականության տարիները, հերթական անգամ բարձրացվեց տեղի հայ բնակչության կողմից, որը վերակառուցման և սոցիալիստական հասարակության դեմոկրատացման պրոցեսով ոգևորված, որոշեց վերջնականապես վերամիավորվել մայր հայրենիքի՝ Խորհրդային Հայաստանի հետ։ Բայց կենտրոնական իշխանությունների որոշումների և նրանց դիրքորոշման կիսակատարության ու անհետևողականության պատճառով պրոբլեմի լուծումը ձգձգվեց, առաջացնելով նոր բարդացումներ, ուժեղացնելով լարվածությունը ռեգիոնում, և ոչ միայն ռեգիոնում։ Պրոբլեմի ձգձգման վերջին ակորդը եղավ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1989 թվականի նոյեմբերի 28-ի որոշումը «Լեռնային Ղարաբաղի Ինքնավար մարզում իրադրության նորմալացման միջոցառումների մասին», որը փաստորեն անտեսում է նրա բնակչության ինքնորոշման, իր բախտն անձամբ տնօրինելու նրա իրավունքի ապահովման հարցը։

Այսօր, իրոք, դժվար է բացատրել, թե որտեղից ծագեց ազգային հարցը մեր երկրում, եթե բոլոր պաշտոնական փաստաթղթերում հաստատվում է այն դրույթը, որ այն լուծված է. մի դեպքում՝ լրիվ և վերջնականապես, մյուս դեպքում՝ հաջողությամբ, երրորդ դեպքում՝ սկզբունքորեն։ Իսկ դրանց կողքին կարծես աննկատելիորեն հայտնվում է մեկ այլ դրույթ. ազգային հարցը մեր հասարակության ռեալությունն է։ Այսօր գոյություն ունեցող ոչ մի տեսական կառուցվածք ի վիճակի չէ քիչ թե շատ պարզ լույս սփռելու այդ հակասության վրա։ Օրինակ, փորձ է եղել այդ բանը բացատրել նրանով, որ ազգային հարցը լուծվել է այն ձևով և այն բովանդակությամբ, որ մնացել է անցյալից։ Այդ դեպքում ի՞նչ ձևով գոյություն ունի այն, ո՞րն է նրա բովանդակությունն այսօր։ Բացատրություններ չեն եղել և չկան։ Բայց մեր որոշ հեղինակներ, փորձելով ինչ-որ կերպ հաղթահարել այդ հակասությունը, առաջ են քաշել մի դրույթ ազգային հարցի նեղ և լայն իմաստի մասին։ Նեղ իմաստով՝ այն ամենը, ինչ մենք հասկացել ենք ավանդաբար. անհավասարություն և անիրավահավասարություն, ազգային հակամարտություն, ճնշում, շահագործում և այլն։ Իսկ լայն իմաստով պարզվում է՝ լուծել բոլոր այն պրոբլեմները,



որոնք ծագում են և դեռ կծագեն ազգային հարաբերություններում, քանի ազգեր գոյություն ունեն։

Ազգային հարաբերությունները, ինչպես և այլ ցանկացած սոցիալական հարաբերություններ, չեն կարող զարգանալ առանց պրոբլեմների, որոշակի հակասություններից դուրս։ Բայց արդյո՞ք բոլոր տեսակի հակասություններն ու պրոբլեմները ծնում և սրում են ազգային հարցը և իրո՞ք ազգային հարաբերությունները ճակատագրականորեն դատապարտված են «հավերժ» զարգանալու ազգային հարցի կերպարով։ Ըստ երևույթին, հասունացել է մշուշապատ և անընկալելի չափանիշներից հրաժարվելու, հստակ բնորոշելու անհրաժեշտությունը, վերջապես, ի՞նչ է ազգային հարցը, այնուհանդերձ մարքսիզմը ի՞նչ էր հասկանում այդ տարողունակ և բարդ հասկացության տակ։

Ազգային հարցը մարքսիստական կոնցեպցիայի համաձայն ծագումնաբանորեն կապված է բազմազգ երկրներում հասարակական զարգացման արմատական պրոցեսների և պրոբլեմների հետ։ Այն հանդես է գալիս որպես այնպիսի հասարակական հակասությունների, չլուծված արմատական քաղաքական, սոցիալ-տնտեսական, կուլտուրական, լեզվական և այլ պրոբլեմների դրսևորման հատուկ արտահայտություն և ձև, որոնք լրջորեն, ուղղակի շոշափում են տվյալ հասարակության մեջ ապրող ազգերի և ազգային խմբերի կենսական շահերը, ծնում են ազգային բախումներ, թշնամություն և անվստահություն ազգերի միջև, լրջորեն թունավորում նրանց համատեղ կյանքը։ Ազգային հարց ծնում և սրում են ոչ թե իրենք՝ բազմազգ հասարակության մեջ միասին ապրող ազգերը, այլ այն քաղաքական և սոցիալ-տնտեսական պայմանները, որոնցում ապրում ու զարգանում են նրանք։ Պատմականորեն դասավորվել է այնպես, որ ազգային հարցը ծագել է դեռ կապիտալիզմի արշալույսին ազգերի ձևավորման հետ միաժամանակ ու դրա հետ միասին՝ թույլ և փոքր ազգերի ազգային ճնշման, անիրավահավասարության, շահագործման երևան գալու հետ և այլն։

Բազմազգ հասարակության մեջ չկան այնպիսի արմատական հասարակական պրոբլեմներ, որոնք օրգանապես կապված չլինեին ազգերի կյանքի, նրանց շահերի հետ։ Ուստի ազգային հարցը հանդես է գալիս և՛ որպես քաղաքական դեմոկրատիզմի հարց, և՛ որպես սոցիալ-տնտեսական զարգացման հարց, և՛ որպես լեզվական ու մշակութային հարց։ Սակայն վճռական գործոն է դեմոկրատիզմը քաղաքական ոլորտում, հենց այստեղ են սկսվում ազգամիջյան հարաբերությունների բարդացումները, այստեղից են զարկերը գնում դեպի մյուս բոլոր ոլորտները։ Բոլոր սոցիալ-տնտեսական, մշակութային, լեզվական, ժողովրդագրական և այլ ազգային պրոցեսները հետևանք են որոշակի քաղաքականության, որի մշակումն ու իրականացումը քաղաքական իշխանության ֆունկցիան է։ Բարդացած ազգամիջյան հարաբերությունները բազմազգ հասարակության քաղաքական սիստեմի ձևախեղվածության, ժողովուրդների քաղաքական իրավունքների սահմանափակվածության, ինքնորոշման սկզբունքների խախտման բացահայտ նշանն են։ Ազգային հարցը նախ և առաջ քաղաքական դեմոկրատիայի հարց է։

Ազգային հարցը յուրաքանչյուր բազմազգ երկրում ի հայտ է բերում կարծես երկմիասնական մի առանձնահատկություն, արտահայտելով երկակի կարգի փոխադարձ կապեր. առաջին, այն ենթարկված է քաղաքական, սոցիալ-տնտեսական, հոգևոր կյանքի, դեմոկրատիայի և այլ ներքին օրինաչափությունների ու պրոցեսների ներգործությանը, երկրորդ, կրում է համաշխարհային, գլոբալ միտումների ուժեղ ազդեցությունը։ Դեռ Վ. Ի. Լենինն է ձևակերպել կապիտալիզմի երկու պատմական միտումները ազգային հարցում։ Առաջինը ազգերի և ազգային շարժումների զարգացումն է, պայքարը ազգային ճնշման դեմ, ազգային պետությունների կազմավորումը։ Երկրորդը՝ ազգերի ամբողջ կյանքի ինտերնացիոնալացումը, այդ օբյեկտիվ հիմքի վրա ինտեգրացիոն միտումների ուժեղացումը։ Այսօր այդ միտումները դարձել են համամարդկային, դրանցում արտահայտված է արդի համաշխարհային առաջադիմությունը։ Այդ միտումները ռեալ կյանքում դրսևորվում են նաև որպես դիալեկտիկորեն հակասական միասնություն ազգային ինքնագիտակցության աճի և ինտերնացիոնալացման պրոցեսի միջև։

Ժամանակակից համաշխարհային պրակտիկան ցույց է տալիս, որ միայն հասարակական-քաղաքական կյանքի խոր ձևախեղումը, սոցիալական

*լարվածության ուժեղացումը բազմազգ հասարակություններում, երբ լրջորեն սահմանափակվում են ժողովուրդների իրավունքներն ու շահերը, որոնք կյանքի են կոչում ազգային շարժումներ, բողոք, լարվածություն և նույնիսկ ազգերի թշնամություն միմյանց նկատմամբ, հասարակական-քաղաքական և պետական կառուցվածքի գոյություն ունեցող ձևերի անընդունելիություն, այդ ժամանակ կարելի է խոսել ազգային հարցի մասին։ Այդպիսի իրադրությունը թունավորում է ազգերի համատեղ կյանքը, պահանջում արմատական վերափոխումներ ամբողջ հասարակական-քաղաքական կառուցվածքում, որոնց էությունն է կյանքի բոլոր ոլորտների դեմոկրատացումը։*

*Ուստի ազգային հարցը կարող է լինել միայն, մի կողմից, ազգերի միջև և, մյուս կողմից, ազգերի և իշխանության գոյություն ունեցող սիստեմի միջև անվստահության, թշնամության և լարվածության առաջացման պատճառների հարց, դեմոկրատիզմի հիման վրա ազգերի մերձեցման, հասարակական առաջադիմության շահերի համար դրանց վերացման ձևերի ու պայմանների հարց։ Վ. Ի. Լենինը խոսում էր ամեն բանում նույնիսկ փոքրագույն «ազգային բախումների» կասկածամտության, ազգային անարդարությունների հաղթահարման մասին։ Կոնկրետ-պատմական մոտեցումը ազգային հարցին՝ նրա այդպիսի դրվածքով նշանակում է այն ծնող հիմքի կոնկրետ վերլուծություն, նրա սրման կոնկրետ պատճառների բացահայտում։*

*Ազգային հարցի արդի դրվածքը ԽՍՀՄ-ում պարունակում է այնպիսի էական գծեր, որոնք խոսում են մի շարք ավանդական էական ազգային պրոբլեմների չլուծվածության մասին, ինքնորոշման դեմոկրատական հիմունքների լուրջ ձևախեղումների, ազգային հարցում լենինիզմի հիմնարար սկզբունքների կոպիտ խեղաթյուրումների մասին։ Այլ կերպ չի էլ կարող լինել սոցիալիզմի հիմնարար սկզբունքների, ամենից առաջ նրա էական հիմքի՝ դեմոկրատիզմի այնքան կոպիտ խեղաթյուրումների ու ձևախեղումների պայմաններում։ Սոցիալիզմի ստալինյան, փակուղային մոդելը յուրովի էր «լուծում» ազգային հարցը։ Իսկ մինչդեռ սոցիալիզմը ճակատագրականորեն դատապարտված չէ տասնամյակներով, հարյուրամյակներով (քանի գոյություն ունեն ազգերը) ազգային հարցը լուծել «լայն իմաստով», եթե այն զարգանա լիարյուն, իսկական դեմոկրատիզմի հիմքերի վրա։ Նա կարող է պայմաններ ստեղծել ազգերի միանգամայն խաղաղ, բարիդրացիական համակեցության համար, հուժկու խթաններ հաղորդել ինտեգրացման, պատմականորեն առաջադիմական միտումներին, ընդ որում փոխելով սեփական դիմագիծը, դառնալով ազատ ինքնորոշված ազգերի դեմոկրատականորեն կազմակերպված համակեցություն։ Սա միակ ճանապարհն է։ Եթե կապիտալիզմը ժամանակին տվել է ազգային հարցի լուծման օրինակներ, առանց ունենալու նրա «նեղ» և «լայն» մեկնաբանման կարիքը, ապա սոցիալիզմը չի կարող չտալ իրական դեմոկրատիզմի իր օրինակները բազմազգ հասարակության, ազգերի միասնության կազմակերպման գործում, չդադարելով լինել կապիտալիզմից ավելի բարձր կանգնած սոցիալական կարգ։*

*Պլատֆորմի ընդունումն ազգային քաղաքականության առայժմ դեռ ընդհանուր սկզբունքների և դրույթների կենսագործման ուղղությամբ ծավալվող բարդ ու բազմակողմանի աշխատանքի լոկ սկիզբն է, ելագիծը։ Դրա հետ մեկտեղ ազգային հարցը, որն անկասկած ունի համեմատաբար ինքնուրույն բնույթ, այնուհանդերձ ածանցյալ հարց է և կարող է հաջողությամբ լուծվել վերակառուցման համատեքստում, բազմազգ հասարակության իրական նորացման, նրա բոլոր ոլորտների ու հարաբերությունների դեմոկրատացման պրոցեսում։ Հասարակության սոցիալական հարաբերությունների ներդաշնակումը ազգային հարաբերությունների ներդաշնակման բանալին է։*

---



# ԳԻՏԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՆԵՐՈՒՄ*

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ԱՆԴՐԱԴԱՌՆԱՆՔ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԵՋ մտավորականության դերին և նրա նկատմամբ բոլշևիկների ցուցաբերած վերաբերմունքին։

Վ. Ի. Լենինը ի սկզբանե մեծ նշանակություն էր տալիս մտքի աշխատանքին, բանվոր դասակարգի պայքարի, հեղափոխության տեսական նախապատրաստմանը։ Իսկ դրանում որոշիչ դերը կամա թե ակամա պատկանելու էր մտավորականությանը։ Նա «Ի՞նչ անել» երկում հստակ գրեց տեսության նշանակության մասին, իսկ հետագայում բուրժուական մտավորականությանը աշխատանքի հրավիրեց պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման պայմաններում՝ հանուն նոր հասարակարգի նյութական և մշակութային հիմքերի կառուցման։ Ստալինը մտավորականության նկատմամբ արհամարհանք ու կասկածամտություն արմատավորեց, նրա դեմ, հատկապես կուսակցական մտավորականության դեմ, կիրառեց հալածանքների ու ջարդերի մահասարսուռ մեթոդը։ Այդ բոլորից զերծ չի եղել նաև Խորհրդային Հայաստանը։ Հայաստանի կոմկուսի և անկուսակցական աշխատավորների շարքերում այնքան բեղմնավոր գործունեություն ծավալած, հիմնավոր կրթություն ստացած մտավորական մարդկանց թիվը հետզհետե արհեստականորեն կրճատվեց։ Ընդ որում, այդ այն դեպքում, երբ Հայաստանում բանվորական հեղափոխական շարժման սկզբնավորման ու ծավալման, մարքսիստական, սոցիալ-դեմոկրատական խմբակների, բոլշևիկյան կազմակերպությունների ստեղծման, տարածման գործում այնքան շատ ավանդ ունեին մտավորական ընտանիքներից ելած կրթված մարդիկ։ Միայն նրանց կենսուղին և կենսափորձը բավական էին համոզվելու համար, թե որքան ճիշտ էր Վ. Ի. Լենինը, երբ պրոլետարիատի գաղափարական դաստիարակության գործում այնպես կարևոր նշանակություն էր տալիս դրսից, այսինքն ոչ պրոլետարական միջավայրից, թեկուզև ազնվական, բուրժուական-քաղքենիական ընտանիքներից ելած մարդկանց կողմից բանվորական միջավայրում գիտակցականություն մտցնելու գործի կազմակերպմանը։

Մտավորական ընտանիքի զավակներ էին Ստեփան Շահումյանը, Սարգիս Կասյանը, Սուրեն Սպանդարյանը, Կնունյանց եղբայրներն ու քույրը, Բեկզադյան եղբայրներն ու քույրերը, Կասպարյանց եղբայրն ու քույրերը, Աշոտ և Հակոբ Հովհաննիսյան եղբայրները և շատ ուրիշներ։ Բոլշևիկյան հայ մամուլի էջերում և հայ մարքսիստների հեղինակած առանձին երկերում հանդիպում ենք անհարկի արտահայտությունների ու գնահատականների հեղափոխական շարժման մեջ և առհասարակ հայ ժողովրդի կյանքում մտավորականության խաղացած դերի մասին։ Ըստ երևույթին արդի պատմագիտական միտքն այս հարցում ևս պետք է պարզորոշում մտցնի. դարձյալ միջոցը միայն և միայն օբյեկտիվ, անաչառ մոտեցումն է, գնահատականներն ու եզրակացությունները փաստից բխեցնելը, ինչպես որ ասել է Վ. Ի. Լենինը՝ «Մարքսիզմը կանգնած է փաստերի և ո՛չ թե հնարավորությունների հողի վրա» (**ԵԼԺ**, հ. 49, էջ 400)։ Այդ դեպքում չի լինի ավելորդ գովք, չի լինի նաև ավելորդ թերագնահատում։

* *Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով», 1990 թ. № 1։*

Իսկ այժմ անդրադառնանք Հայաստանի կոմունիստական կուսակցության ծննդյան, ձևավորման ընդունված տարեթվին: Նրա ակունքներում յուրօրինակություններ են եղել: 1918-ի սկզբին մի խումբ հայ կոմունիստների նախաձեռնությամբ ձևավորվել է Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, որը ճանաչվել է ՌԿ(բ)Կ Կենտկոմի կողմից: Նրա ներկայացուցիչ Գ. Հայկունին մասնակցել է կոմինտերնի ստեղծման հետ կապված նախնական քննարկման նպատակով 1918 թ. հունվարի 24-ին Պետրոգրադում ՌԿ(բ)Կ Կենտկոմի նախաձեռնությամբ հրավիրված խորհըրդակցությանը: Ապա նա իր մասնակցությամբ Հայաստանի կոմկուսը ներկայացրել է 1919 թ. մարտի 2-ին բացված կոմինտերնի առաջին կոնգրեսին, որպես նրան մասնակցած 21 երկրների 35 կուսակցությունների ու կազմակերպությունների վճռական ձայն ունեցող 34 պատվիրակներից մեկը: Ի վերջո, աշխարհի բոլոր երկրների պրոլետարներին ուղղված կոմինտերնի մանիֆեստի տակ տասնյոթ ստորագրությունների թվում նաև Գ. Հայկունունն է՝ Հայաստանի «պատվիրակության հանձնարարությամբ» (տե՛ս Первый конгресс коминтерна. М., 1933 г., стр. 48—49, 211):

Կոմինտերնի անդամ Հայկոմկուսը նախապես իր մեջ միավորել է Ռուսաստանի հայաքնակ վայրերի հայ կոմունիստներին, ձգտելով կապեր հաստատել նաև Հայկական հանրապետության տարածքում գործող կոմունիստական կազմակերպությունների հետ: Այս և 1918-ին ստեղծված Հայաստանի կոմկուսի գործունեության այլ էջեր ներկայացվել են «Հայաստանի կոմկուսի պատմության ուրվագծերում», ինչպես նաև թեմայի հետ առնչվող մի շարք այլ գրքերում: Սակայն «Հայաստանի կոմունիստական կուսակցություն» բառերը առնված են չակերտների մեջ և չի նշված նրա հիմնարար տեղն ու դերը Հայաստանի կոմունիստական կուսակցության ստեղծման, ձևավորման պատմական պրոցեսում: Ավելին, մասնավորապես «ՀԿԿ պատմության ուրվագծերում», Հայաստանի, ինչպես նաև Ադրբեջանի ու Վրաստանի առանձին կոմկուսների ստեղծումը պայմանավորված է 1920 թ. մայիսի վերջերին-հունիսի սկզբներին անդրկովկասյան երեք հանրապետություններում կոմկուսներ ստեղծելու մասին որոշմամբ, որից հետո, հունիսի 30-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոն, քննարկելով կովկասյան բյուրոյի միջնորդությունը, որոշում է «Վրաստանում, Հայաստանում և Ադրբեջանում ստեղծել կոմունիստական կուսակցություններ»: Ընդ որում նկատենք, որ այս դեպքում ևս եղել է կրկնություն, որովհետև մինչ այդ, 1920-ի փետրվարին, ձևավորված էր նաև Ադրբեջանի կոմկուսը (տե՛ս «ՀԿԿ պատմության ուրվագծեր» Ե., 1967, էջ 261—262 և 298):

Հայաստանի կոմկուսի ստեղծման, ձևավորման ամբողջական պրոբլեմը ներառում է քննարկման ենթակա երեք ենթահարց.

1. սոցիալ-դեմոկրատական, բոլշևիկյան խմբակների առաջացումն ու գործունեությունը Հայաստանում և հայ իրականության մեջ, որն ընդգրկում է XIX դարի վերջին տարիներից մինչև 1917 թ. Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը: Այդ ժամանակաշրջանում դեռևս ազգային կոմունիստական կուսակցությունների գաղափարը չի դրվել, բնականաբար, չի եղել նաև Հայկոմկուսը:

2. 1918-ի սկզբին հռչակվել, ասպարեզ է իջել Հայաստանի կոմունիստական կուսակցությունը: Սա անվիճելի փաստ է: Վեճը, որ եղել է ու կա մինչև օրս, ստեղծման փաստին չի վերաբերում, այլ ԽՄԿԿ մյուս ջոկատների ստեղծման ու գործունեության շաբլոնից տարբեր, յուրօրինակ ձևերին, որոնց շուրջը ժամանակին ևս եղել են տարակարծություններ: Բայց այդ տարակարծությունները ինքնին դարձյալ չեն հերքում նշված ժամանակ Հայկոմկուսի ծննդյան փաստը: Այնպես որ, Հայկոմկուսի կազմակերպական ձևավորման ակունքը 1918 թ. սկզբին է և այդ էլ պետք է ճանաչվի որպես նրա հիմնադրման տարեթիվ՝ պրոբլեմի հետ կապված պատմաբաններին հայտնի բոլոր բարդություններով հանդերձ: Գիտության խնդիրը ո՛չ նոր փաստեր ստեղծելն է, ո՛չ էլ եղածը ժխտելը:

3. Ինչ վերաբերում է 1920 թ. ՌԿ(բ)Կ Կենտկոմի կովկասյան բյուրոյի և կուսակցության Կենտկոմի կազմբյուրոյի վերը նշված որոշումներին, ապա դրանք պետք է գնահատվեն որպես Հայաստանի կոմունիստական կուսակցության ոչ թե հիմնադրում, այլ կազմակերպական ձևավորման պատմական պրոցեսի ավարտ:

Հայաստանի կոմկուսի՝ մասնավորապես 1920 թ. գործունեության վրա շատ ծանր անդրադարձավ այդ ժամանակ Թուրքիայում Մուստաֆա Քեմալի գլխավորությամբ ծավալված շարժման երկակի բնույթը: Երկրում առկա իսկական բանվորական, կոմունիստական կուսակցությանը հակառակ, Քեմալը շինծու կոմունիստական կուսակցություն էր ստեղծում, իր բանակը Խորհրդային Ռուսաստանի բանակի նման հանդերձավորում էր կարմիր աստղակիր կոմունարկա գլխարկով... Անցնելով խաբեբայության բոլոր սահմանները, Քեմալը Վ. Ի. Լենինին գրած նամակում խնդիր էր դնում իրեն վերապահել Հայաստանում խորհրդային իշխանության հաստատումը, բնականաբար, դրա տակ հասկանալով իր ցանկացած բնաջնջիչ ձևն ու բովանդակությունը: Ցավոք սրտի, ՌԿ(բ)Կ ղեկավար և ոչ ղեկավար գործիչների, այդ թվում նաև Կովկասի հարցերում որոշիչ դեր խաղացող գործիչների մեջ քիչ չեղան այդ խաբեությամբ հրապուրվողներ և դրա հետ հույսեր կապողներ: Նրանց օրինակով և ազդեցությամբ Հայաստանի կոմկուսի՝ այդ ժամանակ գործին մոտ կանգնած ղեկավար գործիչները հանրապետության աշխատավորներին կոչ էին անում չդիմադրել 1920-ի սեպտեմբերին Հայաստանի վրա հարձակված քեմալական զորքերին, հաշտությամբ ընդառաջ գնալ նրանց, ովքեր փաստորեն համատարած մահ ու ավերում էին բերում երկրին: Այս քվազի-տակտիկան այնպես հրամայաբար էր դրվում, որ առարկողներին սպառնում էր կուսակցությունից և կոմերիտմիությունից վտարումը:

Հայ պատմաբանը, եթե անցյալում այս փաստը լռության մատնելը և այդ մասին չգրելը կարող էր ճշմարտության առջև դռների գոցմամբ պատճառաբանել, այժմ նա լռում է պարզապես անհարմար զգալով գրելու կոմունիստի տոմս կրած հարգարժան անձնավորությունների այդ աստիճանի միամտության, թույլ տված բացահայտ սխալի մասին: Պարզապես զարմանալի է, անցյալում գրքեր են գրվել նաև ասես թե ուղղակիորեն շրջանցելու և լռության մատնելու, առանձին դեպքերում էլ խեղաթյուրելու հենց այն փաստերը, որոնք առանց այն էլ հայտնի են եղել անկախ նրանից, թե տվյալ ժամանակահատվածում այդ մասին որևէ գիրք կամ հոդված հրապարակվել է, թե ոչ: Առհասարակ խիստ արհամարհական վերաբերմունք է եղել ժողովրդի հիշողության նկատմամբ: Բոլորովին հաշվի չի առնվել, որ եթե մեկը կամ մյուսը մի ճշմարտություն գիտե, ուրեմն լուրերի տարածման մաթեմատիկական կարգի համաձայն այդ մասին աստիճանաբար շատերը կիմանան: Ինչի՞ հասավ Ստալինը, որն այնպես աչալուրջ հետևում էր, որ իր անձնավորության լենինյան բնութագրությունը պարունակող «Նամակ համագումարին» փաստաթուղթը գաղտնի մնա, «խնամքով հոգ տանելով», որ այդ մասին բոլոր իմացողները ազատ ապրողների կամ առհասարակ ապրողների շարքից շուտափույթ կերպով հանվեն:

Անցյալում Հայաստանում խորհրդային իշխանության հաստատումը որակվել է որպես բանվորների և գյուղացիների ապստամբական ելույթի հետևանք և կատարված ակտը գնահատվել որպես Նոյեմբերյան հեղափոխություն: Թերևս հենց այդ կապակցությամբ էլ տարիներ շարունակ՝ խոր թաքստոցում է պահվել 1920 թ. դեկտեմբերի 2-ին Խորհրդային Ռուսաստանի լիազոր-ներկայացուցիչ Բ. Վ. Լեգրանի և Հայկական Հանրապետության ներկայացուցիչների միջև կնքված պայմանագիրը: Վերջինս միայն տարիներ անց հրապարակվելով համապատասխան փաստաթղթերի ռուսերեն ժողովածուում, որի համար, ի դեպ, կազմողները մամուլում քննադատվեցին, այլևս հարկ չհամարվեց վերահրատարակել փաստաթղթերի նույն ժողովածուի հայերեն հրատարակության մեջ: Մինչդեռ առանց այդ և խնդրի հետ կապված մյուս փաստաթղթերի և դրանց ստեղծման հանգամանքների պատշաճ վերլուծության Հայաստանում խորհրդային իշխանության հաստատման և դրանում կոմկուսի խաղացած դերի պատմությունը ոչ միայն թերի կմնա, այլև չի լինի բավականաչափ գիտական: Ահա թե ինչու: 1920-ի սեպտեմբերից Հայաստանի առանց այն էլ ծանր վիճակը հետզհետե ավելի ու ավելի էր ծանրանում, դառնալով օրհասական: Քեմալական թուրքերը նշված ամսին սկսած պատերազմով հոկտեմբերի 20-ին գրավել էին Կարսը, նոյեմբերի 7-ին՝ Ալեքսանդրապոլը: Ներքևում խմորվում էր ապստամբական տրամադրություն, վերևում՝ իշխանության ղեկի մոտ, հասունանում էր իշխանությունը հարկադրված կամովին հանձնելու գիտակցությունը: Հայաստանի 1920-ի նոյեմբերի վերջին օրերին Բ. Վ. Լեգրանի հետ սկսված բանակցությունները հանգեցնում են ձևավորված հեղկոմի կողմից նոյեմբերի 29-ին Հայաստանը անարյուն կերպով խորհրդային հռչակվելուն, և այդ ակտը դիվանագիտական տեսքի բերող դեկտեմբերի 2-ի պայմանագրի կնքմանը, անարդարացի տարածքային զիջումներով հանդերձ:

Պրոբլեմները, անելիքները քիչ չեն: Ցանկալի է, որ հարցերի կոլեկտիվ քննարկումներ լինեն, բոլոր պատմաբանների ջանքերի միավորում, տարակարծությունների նկատմամբ համբերատար, բայց և քննական մոտեցում:

---

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ, ԵՐԲ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ կազմակերպություննե-
րից պահանջվում է իրականացնել վերակառուցման ստրատեգիական կուրսը,
հույժ հրատապ են դառնում կուսակցական կոմիտեների ու սկզբնական կազմակեր-
պությունների աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործումը, նրանց
գործունեության արմատական վերակառուցումը: Եվ օրինաչափ է, որ կուսակցու-
թյան XXVII համագումարին տրված Քաղաքական զեկուցման մեջ կուսակցական
աշխատանքի վերակառուցման էությունը համարվեց այն, որ յուրաքանչյուր կուս-
կազմակերպություն՝ հանրապետականից մինչև սկզբնականը, ակտիվորեն պայքարի
ԽՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի գծի կենսագործման համար, ապրի
որոնումների, իր գործունեության ձևերի ու մեթոդների նորացման մթնոլորտում:
Կուսակցության այս պահանջների առումով հետաքրքրական է նաև Նաիրիի շրջա-
նի կուսակցական կազմակերպության գործունեությունը, որին էլ նվիրված է ներկա
հարցազրույցը: ՀԿԿ Նաիրիի շրջկոմի առաջին քարտուղար **ԱՇՈՏ ՄԱՐԴՈՅԱՆԻ**
հետ այն անցկացրեց մեր ամսագրի կուսակցական կյանք բաժնի վարիչ ԱՐՏԱ-
ՎԱԶԴ ՍԱՔԱՆՅԱՆԸ:

**ՀԱՐՑ.— ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը հետապրիլյան ժամանակաշրջանի գլխավոր քաղաքական արդյունքը համարեց «հասարակական մըթնոլորտի փոփոխությունը, նորացման գաղափարների սկսված նյութականացումը, վերակառուցման կուսակցական կուրսի խորհրդային ժողովրդի հարաճուն պաշտպանությունը»: Վերակառուցման կուրսն ընդունելուց անցել է հինգ տարի, մենք գտնվում ենք նրա երկրորդ՝ պրակտիկ գործերի փուլում, ԽՄԿԿ XXVIII համագումարի նախաշեմին: Աշոտ Անուշավանի, ցանկալի է իմանալ, թե ինչպե՞ս է ընթանում վերակառուցումը ձեր շրջանում: Եվ, ապա, անտարակույս, վերակառուցման ճանապարհին ծագում են բազում դժվարություններ ու խոչընդոտներ, ինչպե՞ս եք հաղթահարում դրանք:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Այսօր դժվար թե գտնվի իմ գործընկերներից մեկը, որը համարձակվի ասել, թե վերակառուցումը շրջանում ընթանում է բավարար կամ գոհ ենք նրա ընթացքից: Խնդիրն այն է, որ բոլոր մակարդակներում կրքոտ խոսվում է վերակառուցման անհրաժեշտության մասին, սակայն երբ հարցը հասնում է կոնկրետ գործին, պատնեշի պես կանգնում են հին ստերեոտիպերը, նոր մտածողությունն ու գործելակերպը հաճախ տեղի են տալիս պահպանողականությանը, սովորույթի ուժին:

Հարցերի գործնական լուծման ժամանակ վերակառուցում հասկացությունը հիմնականում փոխարինվում է բարելավում, բարեփոխություններ և այլ հասկացություններով: Մինչդեռ այն ընդգրկում է լայնամասշտաբ խնդիրներ:

Եթե շրջանի ժողովրդական տնտեսության մեջ ցուցանիշների առումով նկատելի բարեփոխումներ են կատարվել, ապա դրանք մեխանիկորեն չպետք է վերագրել վերակառուցմանը: Նույնը վերաբերում է և սոցիալական հարցերին, կուսակցական, խորհրդային, հասարակական կազմակերպությունների աշխատանքին: Վերակառուցումը առաջին հերթին վերաբերում է արտադրահարաբերությունների արմատական փոփոխությանը, աշխատանքի և վարձատրության սկզբունքներին նորովի մոտեցմանը:

ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումը մշակեց ագրարային պրոբլեմի լուծման կոնկրետ ծրագիր, որը հիմնովին տարբերվում է նախորդից: Պլենումը առաջին անգամ համարձակորեն առաջ քաշեց արտադրական հարաբերությունների արմատական վերակառուցման հարցը, խնդիր դրեց հողը հանձնել գյուղացուն:

Գյուղում նոր արտադրահարաբերությունների արմատավորման և զարգացման ասպարեզում շրջանում որոշակի քայլեր են արվել: Աշխատանքի կազմակերպման վարձակալական եղանակի առավելությունները ու կենսունակությունը երևաց կարճ ժամանակահատվածում: Թեկուզ միայն «Նաիրի» ագրոֆիրմայի օրինակը մեզ համոզում է այդ բանում: Իհարկե, դեռ վաղ է այգեգործության և դաշտավարության ճյուղերում կոնկրետ եզրակացություններ անելը, սակայն անասնապահության բնագավառում արդյունքները շոշափելի են: Տնտեսությունում մեկ կովի տարեկան կաթնատվությունը անցել է 4.600 կգ-ից, պետությանը հանձնըված խոշոր եղջերավոր անասունների կենդանի քաշը՝ 465 կգ-ից: Գրեթե չորս անգամ աճել են ճյուղի եկամուտները, նույնքան էլ՝ աշխատողների վաստակը: Այստեղ լուծվում են սոցիալական այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք բնակարանային պրոբլեմն է, գյուղի բարեկարգումը, սպասարկման ոլորտի ընդարձակումը և այլն: Ագրոֆիրմայի արտադրության մեջ ներդրվել են աշխատանքի և վարձատրության այնպիսի առաջավոր ձևեր, որոնք խթանում են մարդկանց շահագրգռությունը: Այս իմաստով կարելի է նշել նաև Լուսակերտի թռչնաֆաբրիկայի, Ջրավանի մսի արտադրության համալիրի, Քարաշամբի և այլ տնտեսությունների դրական աշխատանքը:

Քիչ չեն նաև հոգսերը: Եթե մայրաքաղաքին մերձ շրջանում մեկ կովից ստացվում է 3000 կգ-ից ավելի կաթ, ապա դա հուշում է, որ այնտեղ պիտի զարգացնել անասնապահությունը, լուծել քաղաքի բնակչությանը թարմ կաթով ապահովելու խնդիրը: Դրա համար հարկ է ամրապնդել կերի բազան, որի հնարավորությունները մեզ մոտ, ցավոք, խիստ սահմանափակ են: Կամ ներկայումս ունենք 800 հեկտար խաղողի ու պտղի ոչ լիարժեք այգի, որի բերքատվությունը անչափ ցածր է: Այդ առթիվ բազմիցս դիմել ենք համապատասխան վերադաս մարմիններին՝ դրանք քանդելու և կերային մշակաբույսերի տակ դնելու հարցով, սակայն այն մինչև օրս չի լուծվում: Դեռևս շարունակվում է վերադասի կողմից բոլոր ցուցանիշների պլանավորման արատավոր պրակտիկան, առանց հաշվի առնելու շրջանի հնարավորությունները: Ներկայումս գյուղատնտեսական արտադրությամբ ու նրա սպասարկմամբ զբաղվող շուրջ 25 կազմակերպություններ ենթարկվում են միութենական ու հանրապետական յոթ գերատեսչությունների, մինչդեռ շրջանը լրիվ տընտհաշվարկի անցնելու համար հարկավոր է, որ նրանք ունենան մեկ ենթակայություն:

Արդյունաբերության տեխնիկական վերազինման, նոր, առաջավոր տեխնոլոգիաների ներդրման նպատակով մեր ձեռնարկումները հանդիպում են լուրջ խոչընդոտների: Մինիստրությունների միջոցով նշված հարցերը չեն լուծվում, ձեռնարկությունները արտասահմանյան ֆիրմաների հետ գործարքի մեջ չեն կարողանում մտնել, հայրենական արտադրության շատ մեքենասարքավորումների ձեռքբերումը նույնպես կապված է որոշակի դժվարությունների հետ: Պահեստամասերի պակասը պատճառ է դառնում անթույլատրելի պարապուրդների: Շատ ձեռնարկություններ իրենց շենքային պայմաններով, տեխնիկական հագեցվածությամբ չեն համապատասխանում ժամանակակից արտադրության պահանջներին: Չլուծված հարցերը թվարկելը բոլորովին էլ չի նշանակում հաշտվել նման իրավիճակի հետ կամ դրանով գործը համարել ավարտված: Սակայն մենք պետք է ունենանք նման կոմպլեքսային միջոցառումների իրականացման ռեալ երաշխիքներ: Այս հարցում ցանկությունը դեռ քիչ է: Անցել են այն ժամանակները, երբ պլանների կատարումը դարձնում էին վարագույր՝ թերությունները ու թերացումները ծածկելու համար: Մենք իրավունք չունենք գոհանալ նրանով, երբ համամիութենական սոցիալիստական մրցության մեջ շրջանը հաղթող է ճանաչվում, արժանանում փոխանցիկ դրոշների, դիպլոմների ու մրցանակների:

Մեր առավել կարևոր խնդիրը մարդկանց պահանջմունքների բավարարումն է, մեծ թվով գյուղատնտեսական մթերքների, արդյունաբերական ապրանքների դեֆիցիտի վերացումը: Եթե նշված հարցերը երկրում չեն լուծված, նշանակում է առանձին ցուցանիշներով գոհանալը միայն ու միայն փափուկ բարձ է, որի վնասարարության մասին ներկայումս խոսվում է ամենայն սրությամբ:

Շինարարության պրոբլեմներն ու չլուծված հարցերը շրջանում ավելի խորն են: Շինարարության ինդուստրացման մասին խոսք լինել չի կարող, եթե չբավարարվեն նրա ամենանվազագույն պահանջները: Տեխնիկական անչափ նվազ հագեցվածությունը, շինանյութերի պակասը, դրանց ցածր որակը ուղղակիորեն խոչընդոտում են աշխատանքի և վարձատրության առաջավոր եղանակների արմատա-

վորմանը: Դրան էլ գումարվում են շինարարական կազմակերպությունների ղեկավարների անձեռներեցությունը, պատճառաբանությունների հետևից ընկնելը: Եվ արդյունքում ստացվում է, որ արտադրական նոր կարողությունները ժամանակին չեն գործարկվում, մարդկանց սոցիալական հարցերը չեն լուծվում, իսկ մինիստրությունների բյուրոկրատական քաշքշուկները, պրոբլեմների լուծման դժվարությունների տակ չմտնելը առայժմ իրենց որոշակիորեն զգացնել են տալիս:

Կենսագործել վերակառուցման հսկայածավալ ծրագիրը, նախ և առաջ, նշանակում է այն իրականացնողներին վերափոխել հոգեբանորեն, մասնագիտական առումով, նրանց մեջ սերմանել նորի զգացողություն, համարձակություն և ձեռներեցություն: Իսկ դա բոլորովին էլ դյուրին գործ չէ: Դա պահանջում է տևական, սիստեմավորված ու հետևողական աշխատանք: Մենք սկսել ենք այդ աշխատանքը, իսկ թե մեզ ինչ չափով է առայժմ հաջողվում, ցույց կտա ժամանակը:

**ՀԱՐՑ.— ԽՄԿԿ XIX կոնֆերանսը խնդիր դրեց վերակառուցել կուսակցության բոլոր օղակները, այդ թվում և ապարատը, բարձրացնել ընտրովի մարմինների դերն ու պատասխանատվությունը: Ի՞նչ է արվում ձեզ մոտ այդ բնագավառում և ո՞րն է դրա արդյունքը:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Վերակառուցել կուսակցական կազմակերպության կամ նրա օղակների գործունեությունը, նշանակում է նրանց վերադարձնել քաղաքական-կազմակերպական աշխատանքը՝ ազատելով խորհրդային, տնտեսական մարմիններին փոխարինելու արատավոր սովորույթից, ձերբազատվել վարչահրամայական մեթոդներից: Այս իմաստով, ճյուղային բաժինների վերացումից բացի, որոշակի փոփոխություններ ենք կատարել շրջկոմի ապարատում: Այն համալրել ենք երիտասարդ բանիմաց կադրերով, որոնք ճիշտ են ընկալում կուսակցության ներկա պահանջները: Միայն մեկուկես տարում 60 տոկոսով թարմացվել, երիտասարդացվել է շրջկոմի ապարատը: Կուսշրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների առջև ինչպես միշտ, այսօր էլ ծառացած է ամենածանր խնդիրը՝ իրականացնել ԽՄԿԿ-ի քաղաքական գիծը, կոորդինացնել խորհրդային, տնտեսական, հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը: Այս իմաստով է՛լ ավելի՛ է բարձրանում շրջկոմի յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը: Շրջանում արվում է հնարավոր ամեն բան, որպեսզի կուսակցական ապարատի աշխատողը, սկզբնական կազմակերպության քարտուղարը պատասխանատվություն կրեն իրենց վստահված տեղամասի գործերի համար, դրսևորեն նախաձեռնություն:

Ինչ վերաբերում է ընտրովի մարմիններին, ապա պետք է ասել, որ դեմոկրատիայի ներկա պայմաններում շրջկոմներին մնում է այնպիսի գործի դնել սկզբնական կուսկազմակերպություններին, որպեսզի աշխատավորական կոլեկտիվները լավ ճանաչեն իրենց կոմունիստներին, յուրաքանչյուր կոմունիստ իր վրայից դեն նետի անտարբերության, բյուրոկրատիայի աղտը, որը վարկաբեկում է նրանց, գցում ընտրովի մարմինների հեղինակությունը: Եթե մեզ հաջողվի ընտրել շրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների կոմիտեների, բյուրոների այնպիսի կազմ, որ մարդիկ հավատան նրան, նշանակում է մենք մոտ ենք մեր նպատակների իրագործմանը:

Կուսակցական աշխատանքը ավելի կոնկրետ և դեմոկրատական դարձնելու նպատակով մեզ մոտ ևս ստեղծել ենք հանձնաժողովներ: Դրանցից յուրաքանչյուրը ղեկավարում է շրջկոմի քարտուղարներից մեկը: Հանձնաժողովները, որպես ընտրովի մարմիններ, ավելի մեծ ֆունկցիա և խնդիրներ ունեն, քան շրջկոմի բաժինները: Մենք գործը սկսել ենք այնպես, որ հանձնաժողովները դառնան շրջանի մասշտաբով իրենց բնագավառի լիիրավ տերեր, խորությամբ ուսումնասիրեն իրադրությունը և մշակեն լայնամասշտաբ հեռանկարային ծրագրեր, հետևեն դրանց կատարմանը:

**ՀԱՐՑ.— Ընկեր Մարդոյան, խոսեցիք հանձնաժողովների մասին: Կուսակցական-կազմակերպական հանձնաժողովն էլ ղեկավարում եք Դուք: Ի՞նչ կասեիք նրա և մյուս հանձնաժողովների գործունեության մասին:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Իմ ղեկավարած հանձնաժողովի գլխավոր նպատակը կուսակցական-կազմակերպական աշխատանքի և կադրային քաղաքականության արմատական բարելավումն ու վերակառուցումն է: Դա հավասարապես վերաբերում է կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը, արտադրության մեջ կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխմանն ու ավանգարդային դերի ապահովմանը, կուսակցության կանոնադրական պահանջների անվերապահ կատարմանը, նրա շարքերի համալրմանը, կադրերի ռեզերվի ստեղծմանն ու նրանց հետ աշխատանքի պատշաճ կազմակերպմանը: Մի խոսքով, ներկուսակցական աշխատանքի բոլոր հարցերը գտնվում են մեր հանձնաժողովի ամենօրյա ուշադրության կենտրոնում:



Մյուս կարևոր խնդիրը, որին հանձնաժողովը մշտական ուշադրություն է նվիրում, պայքարն է մեր կյանքի ստվերոտ կողմերի, այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են հովանավորչությունը և այլ բացասական երևույթներ, որոնք տեղ էին գտել մեր կյանքում:

Գաղափարախոսական հանձնաժողովը գլխավորում է կուսշրջկոմի քարտուղար Հայկուշ Հովհաննիսյանը: Հանձնաժողովի առաջին նիստում հստակորեն որոշվել են նրա յուրաքանչյուր անդամի անելիքները: Հանձնաժողովում ընդգրկված են տարբեր բնագավառների մտավորականներ: Հաշվի առնելով մասնագիտությունը, աշխատանքային փորձը և հետաքրքրությունները՝ նրանցից յուրաքանչյուրին հանձնարարել ենք գաղափարախոսական աշխատանքի մեկ ուղղություն: Հանձնաժողովն արդեն մանրամասնորեն ուսումնասիրել և քննարկել է «Շրջանի կուլտուրլուսավորական հիմնարկների աշխատանքի և նրա հետագա բարելավման մասին» հարցը: Ընդ որում, արվել են այդ բնագավառում աշխատանքի իսկական վերակառուցման, նրա նկատմամբ շրջանի կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների գործնական հոգատարությունը և ուշադրությունը ապահովելու մի շարք առաջարկություններ:

Գաղափարախոսական հանձնաժողովը ձեռնամուխ է եղել 30-ական թվականների և հետպատերազմյան շրջանի ռեպրեսիաների զոհերի մասին տեղեկությունների հավաքմանը: Գրի են առնվում ականատեսների հիշողությունները, ձեռք են բերվում լուսանկարներ, այդ տարիների պաշտոնական փաստաթղթեր, առավել ուշագրավները հրապարակվում են շրջանային թերթում: Առաջիկայում հանձնաժողովը դրանք կամփոփի և կպահի որպես տվյալ բնակավայրի պատմության էջ, ինչպես, ասենք, ունենք Հայրենական մեծ պատերազմին մեր գյուղերի մասնակցության պատմությունը: Հատուկ ուշադրություն է նվիրվում Ադրբեջանից և աղետի գոտուց շրջանում տեղավորված մեր հայրենակիցների հետ տարվող քաղաքական աշխատանքին: Ադրբեջանից գաղթածների համար նախատեսում ենք բացել հայոց լեզվի և հայ ժողովրդի պատմության ուսումնասիրման կիրակնօրյա դպրոցներ: Շուտով այդպիսի առաջին դպրոցը կգործի «Ռեմդետալ» գործարանում:

Գաղափարախոսական հանձնաժողովը նախատեսել է անդրադառնալ նաև շրջանի աշխատավորների իրավական, ռազմահայրենասիրական, ինտերնացիոնալ դաստիարակության և գաղափարախոսական-քաղաքական մի շարք այլ հարցերի:

Ղարաբաղյան շարժման առնչությամբ սկսված մասսաների քաղաքական ակտիվության շեշտակի բարձրացման առաջին օրերին գաղափարախոսական ճակատի շատ աշխատողներ, ինչու չէ, գրեթե բոլորս էլ հանկարծակիի եկանք և անհրաժեշտ ինֆորմացիայի, քաղաքական համարձակության և հեռատեսության պակասի հետևանքով չկարողացանք ճիշտ նպատակաուղղել կոլեկտիվներին, ողջ բնակչությանը: Երբեմն չգիտակցելով, իսկ ավելի հաճախ գիտակցելով, բայց տուրք տալով տասնամյակներով ամրապնդված մտածողության իներցիային, մենք ևս կրկնեցինք կենտրոնական մամուլի և իշխանությունների սխալ, կիսաբերան, մակերեսային ձևակերպումներն ու քաղաքական գնահատականները՝ դրանով իսկ կորցնելով վստահությունը մեր իսկ աշխատավորների աչքում:

Այժմ ջանում ենք վերականգնելու այդ վստահությունը, որի նախապայմանը ճշմարիտ, անկեղծ երկխոսությունն է ժողովրդի, նրա ներկայացուցիչների հետ: Գաղափարախոսական ճակատի մեր աշխատողների խելամիտ գործելակերպով է պայմանավորված այն: Այստեղ վճռական նշանակություն ունեն գաղափարախոսական կադրերի ճիշտ ընտրությունը և տեղաբաշխումը: Առայժմ քիչ են համարձակ, ինքնատիպ մտածողությամբ, քաղաքական արտակարգ իրավիճակում ճիշտ և արագ կողմնորոշվող կադրերը: Իրեն զգացնել է տալիս տարիներով ամրապնդված ոչ ճիշտ կադրային քաղաքականությունը, որի շտկման համար նպատակային աշխատանք է տանում կուսշրջկոմը:

Սոցիալական զարգացման հանձնաժողովի (նախագահ՝ կուսշրջկոմի երկրորդ քարտուղար՝ Արարատ Էվոյան) հիմնական խնդիրն է մշակել շրջանի սոցիալական զարգացման քաղաքականությունը և հետևել դրա իրականացմանը: Նրա անդրանիկ նիստում քննարկվեց ու հաստատվեց հանձնաժողովի պլանը, կատարվեց աշխատանքի բաժանում նրա անդամների միջև: Ապա՝ հուլիսին տեղի ունեցած երկրորդ նիստում քննարկվեց պլանի կատարման ընթացքը: Այդտեղ ծագեցին լրացուցիչ հարցեր, ինչպես, օրինակ, տեղում շինանյութերի արտադրության ու վաճառքի, անհատական բնակշինարարության կազմակերպումը: Հանձնարարվեց մի քանի անդամների՝ ուսում-

նասիրել վիճակը և մտցնել հանձնաժողովի քննարկմանը:

Կուսշրջկոմի առաջարկությամբ և նախաձեռնությամբ մշակվել է շրջանի սոցիալական զարգացման ծրագիրը 1988—1995 թվականների համար՝ ըստ բնակավայրերի: Ընդ որում, հաշվի են առնվել աշխատավորների պահանջները, նրանց առաջարկները, տնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվների կարծիքը: Ծրագիրը հաստատվել է շրջխորհրդի նստաշրջանում և դրվել գործողության մեջ:

Որպեսզի հնարավոր լինեն իրականացնել մտահղացումները, հանձնաժողովը իր առաջին գործը համարեց բացատրական աշխատանք ծավալել աշխատավորական կոլեկտիվներում: Հարկավոր էր մարդկանց իրազեկ դարձնել, որ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում սոցիալական զարգացման խնդիրները հիմնականում պետք է լուծվեն իրենց իսկ ստեղծած միջոցների հաշվին: Հանձնաժողովն իր ուշադրության կիզակետում է պահում հատկապես սոցիալական զարգացման ծրագրի հիմնական ուղղություններից մեկի՝ բնակարանային պրոբլեմի լուծման խնդիրը: Կարևորելով պետական և կոոպերատիվ բնակշինարարությունը՝ միաժամանակ գտնում ենք, որ առանց անհատական բնակարանային շինարարության անհնար է այդ խնդիրը լուծել: Դրա համար էլ սոցիալական զարգացման հանձնաժողովը հսկում է գյուղերում բնակարաններ կառուցելու նպատակով հողերի հատկացմանը, տեղում շինանյութերի արտադրության և վաճառքի կազմակերպմանը:

Ծրագրի իրականացման գործին, բացի տնտեսություններից, ակտիվորեն պետք է մասնակցեն նաև այն արտադրական մասնաճյուղերը, որոնք գտնվում են գյուղերի տարածքում: Հանձնաժողովը մանրամասնորեն ուսումնասիրել է նրանց հնարավորությունները և արել համապատասխան առաջարկություններ: Վերջերս շրջկոմի բյուրոն հանձնաժողովի նախաձեռնությամբ քննարկեց այդ հարցը, կոնկրետ հանձնարարություններ տվեց մասնաճյուղերից յուրաքանչյուրին, նրանց առջև խնդիր դրեց ակտիվորեն մասնակցել տվյալ բնակավայրում սոցիալական ծրագրի իրականացմանը:

Հանձնաժողովն զբաղվում է նաև աղետի գոտու շրջաններին և Լեռնային Ղարաբաղին օգնություն ցույց տալու հարցերով:

**ՀԱՐՑ.— Գուցե ավելի կոնկրետ խոսեիք այդ մասին:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Խնդրեմ: Աղետի գոտուն ցույց տրվող օգնությունը համաժողովրդական, մարդասիրական գործ է: Հասկանալի է, մեր շրջանի մարդիկ չէին կարող անմասն մնալ այդ շարժումից: Երկրաշարժից տուժածների օգնության ֆոնդին շրջանի աշխատավորական կոլեկտիվները փոխանցել են երկու միլիոն ռուբլուց ավելի գումար: Այնտեղ են մեկնել մեր բժիշկները՝ բուժական տեխնիկայով և դեղորայքով: Տուժած շրջաններ ենք առաքել զգալի քանակությամբ տեխնիկա, սննդամթերք, վառելիք, մի քանի հարյուր տնակ, խտացրած կեր և այլն: Կազմել ենք շինարարական հատուկ խմբեր, որոնք շաբաթ և կիրակի օրերին մեկնում են Ստեփանավանի և Սպիտակի շրջանների գյուղերը և բնակիչներին անհատույց օգնում բնակելի տների վերականգնման գործում:

Ստեղծված է Արցախի և աղետի գոտու օգնության շրջանային հանձնաժողով: Շրջանն ստանձնել է Լեռնային Ղարաբաղի Հադրութի շրջանի շեֆությունը, կուսակցության Հադրութի շրջկոմի հետ համատեղ մշակվել է համագործակցության ծրագիր: Պարբերաբար Հադրութ, ինչպես նաև Արցախի այլ բնակավայրեր են ուղարկվում սննդամթերքով, հագուստեղենով, գյուղատնտեսական գործիքներով, առաջին անհրաժեշտության այլ ապրանքներով բեռնված ուղղաթիռներ: Այդ բարի գործին մասնակցում են շրջանի բոլոր կազմակերպությունները: Աշխատանք ենք տանում Արցախի մի շարք բնակավայրերում գործարանային արտադրական մասնաճյուղեր, կոոպերատիվներ և օժանդակ տնտեսություններ ստեղծելու համար:

**ՀԱՐՑ.— Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն 1987 թ. հոկտեմբերին ձեր կուսշրջկոմին քննադատել է կադրերի ընտրության և տեղաբաշխման, կուսակցության շարքերի ընդունելության գործում կատարած կոպիտ սխալների և խնամակալության համար: Ի՞նչ եք արել Կենտկոմի բացահայտած թերությունները վերացնելու համար:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Միանգամայն իրավացի էր Կենտկոմի քննադատությունը: Կուսշրջկոմը ընդունել է այն և քննարկել բացահայտված թերությունների վերացման և նշված ոլորտներում կարգուկանոն սահմանելու հարցը: Կադրերի ընտրության և տեղաբաշխման գործում վերացվել են հովանավորչական դրսևորումները, ԽՄԿԿ շարքերի համալրման ժամանակ ելակետ ենք ընդունում կոմունիստի անաղարտ կերպարի վերաբերյալ կուսակցության XXVII համագումարի պահանջները: Ավելի կոնկրետ ասեմ. հնարավորին չափ թյուրիմացություններից խուսափելու համար կուսակցության մեջ ընդունելիս դիմումը պարտադիր կարգով քննարկվում է դռնբաց ժողովում, կադրեր առաջ քաշելիս անպայման տեղյակ է պահվում կոլեկտիվին, սկզբնական կուսկազմակերպությանը, նրանց երաշխավորությունից հետո միայն առաջ է քաշվում տվյալ անձնավորության թեկնածությունը: Այսպես, ավտոտրակտորային արդյունաբերության մինիստրության գիտահետազոտական ինստիտուտի հարավային մասնաճյուղի կոմունիստները, կոլեկտիվը երաշխավորեցին Նորիկ Սարգըսյանին՝ աշխատելու կուսշրջկոմի ապարատում, նույն կերպ վարվեցին № 23 ՇՄԾ-ի կոմունիստներն ու կոլեկտիվը Աղվան Ղուկասյանին շրջկոմի ապարատ աշխատանքի ընդունելիս: Ղեկավար կադրեր, լինի կուսակցական, խորհրդային, տնտեսական, շրջանում չենք նշանակում: Նրանք անցնում են ընտրությունների միջոցով և, կարելի է ասել, շատ տեղերում անաչառ կատարված ընտրությունը մեծապես նպաստում է գործին: Ընտրված անձը իրեն միշտ էլ պատասխանատու է զգում ընտրողների առաջ:

Կուսակցության XIX կոնֆերանսից հետո շրջկոմի բյուրոյում, ապա պլենումում վերանայել ենք շրջկոմի անվանացանկը՝ պահպանելով այն սկզբունքը, որ պետք է սահմանազատվեն կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների ֆունկցիաները: Այս իմաստով անվանացանկից հանել ենք այն մարդկանց, որոնց կուսակցական առումով հսկողության տակ պահելը այլևս իմաստ չունի: Մենք որոշել ենք հետևողականորեն իրականացնել այս կարգը:

Հիմա կադրերի ընտրության գործը շատ է բարդացել, շատ տեղերում գլուխ են բարձրացնում տեղայնությունը, խմբակայնությունը: Բայց երբ երաշխավորվող կադրը, իրոք, ունենում է արժանիքներ ու անհրաժեշտ հատկանիշներ, ճիշտ է, դժվարությամբ, բայց ընտրություններում հաղթում է: Նոր Երզնկայի պետտնտեսության դիրեկտորի ընտրության արդյունքները դրա վառ ապացույցն են: Մրցութային հանձնաժողով էին դիմել ութ ընկերներ, որոնց թվում նաև՝ ներկա դիրեկտոր Ջոհրաբ Ջոհրաբյանը, որը նախկինում աշխատել էր իր մասնագիտությամբ, ապա անցել կոմերիտական, կուսակցական աշխատանքի բովով և մինչև դիրեկտոր ընտրվելը նույն տնտեսության սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի քարտուղարն էր: Ընտրություններն անցան երկու փուլով, բոլոր թեկնածուները սկզբից ներկայացան կոլեկտիվին իրենց ծրագրերով, պատասխանեցին աշխատավորների հարցերին: Առաջին փուլում Ջոհրաբյանի ծրագիրը ընդունվեց, նա հավաքեց բոլորից ավելի ձայներ, միանգամից ընտրվելու համար չնչին քանակությամբ ձայներ պակասեցին: Երկրորդ փուլում արդեն նրա առավելությունը բացահայտ էր:

Եթե ժամանակին անհրաժեշտ աշխատանք տարվեր Բուժականի կադրերի ռեզերվի հետ, բարձրացվեր նրա քաղաքական և արտադրական ակտիվությունը, ապա այդ տնտեսությունում ամիսներ շարունակ չէր ձգձգվի դիրեկտորի ընտրությունը: Այսօր մեզ ռեզերվ է պետք ոչ թե նախկինի պես թղթի վրա, այլ քաղաքական ու տնտեսական ասպարեզում, գործունեության մեջ:

**ՀԱՐՑ.— Վերակառուցման գլխավոր նպատակներից մեկը հասարակական կյանքի, կուսակցական աշխատանքի դեմոկրատացումն է, հրապարակայնության ապահովումը: Ի՞նչ է արվում այդ առնչությամբ ձեր շրջանում:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Կյանքը ցույց է տալիս, որ ցանկացած վճիռ, որքան էլ հիմնավորված լինի, դրա արձակողը կամ արձակողները՝ տաղանդավոր, չի իրագործվի, եթե այն ընդունվում է փակ դռների հետևում, առանց ժողովրդի կարծիքի խոր վերլուծության: Հետևապես, հրամայական անհրաժեշտություն է առաջանում շատ հարցերի մասին խորհրդակցել բոլոր կոմունիստների, աշխատավորական կոլեկտիվների, ազգաբնակչության տարբեր խավերի ու խմբերի հետ: Միայն նրանց հետ համակողմանի քննարկման, կարծիքների փոխանակման ընթացքում է բացվում ողջ ճշմարտությունը: Հենց այս սկզբունքներն են, որ այսօր դրված են շրջկոմի, շատ սկզբնական կազմակերպությունների աշխատանքի հիմքում: Մենք շրջանի առանձին ավանների ու գյուղերի, հիմնարկ-ձեռնարկությունների ու տնտեսությունների զարգացման ծրագրերը դրեցինք համաժողովրդական քննարկման, ուսումնասիրվեցին եղած բոլոր առաջարկներն ու դիտողությունները, նոր միայն լրացումներ անելուց հետո, դրանք քննարկվեցին կուսակցության շրջանային կազմակերպության կոնֆերանսում և երաշխավորվեցին հաստատել շրջխորհրդի նստաշրջանում:

Կուսակցական աշխատանքում մենք թաքցնելու ոչինչ չունենք մեր ազգաբնակչությունից, աշխատավորներից, առավել ևս՝ կոմունիստներից: Նույնիսկ շրջկոմի բյուրոյում, բաժիններում քննարկվող յու-

րաքանչյուր հարց նախապատրաստելիս և որոշման նախագիծը մշակելիս ներգրավում ենք դրանով շահագրգռված բոլոր կազմակերպությունների ներկայացուցիչներին, հաշվի առնում նրանց առաջարկությունները, կազմակերպական խորհրդակցությունում կրկին վերլուծում, նոր միայն քննարկում և ընդունում համապատասխան որոշում:

Ինչ վերաբերում է դիմում-գանգատներին, աշխատավորների ընդունելությանը, ապա շրջանի յուրաքանչյուր բնակչի, ամեն մի աշխատողի առջև բաց են շրջկոմի դռները շաբաթվա ցանկացած օր և ցանկացած ժամ, իսկ եթե որևէ հարց պահանջում է լրացուցիչ ուսումնասիրություն, ապա այն արվում է միայն հրապարակայնորեն ու արդյունքի մասին տեղյակ պահվում և՛ դիմողին, և՛ այն կոլեկտիվին, որին առնչվում է հարցը: Այդ գործում քաշքշուկներ ծագում են, բայց այժմ մենք վարում ենք այնպիսի կուրս, որպեսզի քաշքշուկը, հարցի արդարացի լուծումը ձգձգելու ամեն մի քայլ արժանանա սկզբունքային կուսակցական գնահատականի:

**ՀԱՐՑ.— Իրազեկ եմ դարձել, որ պարբերաբար կազմակերպում եք ղեկավար կադրերի հանդիպումներ աշխատավորական կոլեկտիվների հետ, խնդրում եմ մի քանի խոսք այդ մասին: Չէ՞ որ դա ևս դեմոկրատիայի և հրապարակայնության արտահայտությունն է:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Մենք նման հանդիպումներ կազմակերպում ենք ոչ միայն աշխատավորական կոլեկտիվների, այլև հանդիպումներ ենք ունեցել ուսուցիչների, տարբեր խմբերի հետ: Օրինակ, առանձին աշխատավորների ու ազգաբնակչության, բժիշկների, կուլտուրայի, իրավապահ մարմինների աշխատողների, պատերազմի վետերանների, ինտերնացիոնալ մարտիկների և շատ այլ խմբերի հետ:

Երբ վերլուծում ենք որևէ աշխատավորական կոլեկտիվում, ավանում, գյուղում գոյություն ունեցող իրավիճակը, մեր ստացած նամակներն ու աշխատավորների ընդունելության արդյունքները, պարզվում է, թե որ կոլեկտիվ կամ գյուղ գնալիս ում տանել մեզ հետ՝ հարցերին տեղում պատասխանելու, դրանք լուծելու համար: Դա շատ օգտակար է նախ այն իմաստով, որ մարդիկ իմանում են, թե որ հարցի համար ում դիմեն և չարածի համար ումից հաշիվ պահանջեն: Երկրորդ, որպեսզի ամեն մի ղեկավար աշխատող, լինի տեղական թե շրջանային մասշտաբի, իմանա, որ ուշ թե շուտ ինքը պիտի պատասխան տա իր չարածի համար: Այս աշխատանքը ապահովում է անհրաժեշտ ինֆորմացիա գործերի իրական վիճակի մասին:

**ՀԱՐՑ.— Ընկեր Մարդոյան, ընդհանուր գծերով բնութագրեցիք կուսակցական աշխատանքի վերակառուցման գլխավոր ուղղությունները, իսկ ի՞նչ կասեք կուսակցության ստորին օղակների դերի բարձրացման մասին:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Այսօր մեր շրջանում գործում են 103 սկզբնական, 50 արտադրամասային կուսկազմակերպություններ և 82 կուսխմբեր, որոնցում ներգրավված են ավելի քան 2.850 կոմունիստներ: Հետևաբար, նրանց հեղինակության բարձրացումը, մարտունակության ուժեղացումը և ինքնուրույնության ընդլայնումը կուսշրջկոմի մշտական ուշադրության կիզակետում են: Մշակել և սկզբնական կազմակերպություններ ենք ուղարկել մեթոդական ցուցումներ, պարբերաբար անցկացնում ենք նրանց քարտուղարների սեմինար-պարապմունքներ, հրահանգիչների միջև կատարել ենք աշխատանքի բաժանում՝ ըստ կազմակերպությունների: Ներկայումս բաժնի յուրաքանչյուր հրահանգիչ սպասարկում է 15—19 կուսկազմակերպություն: Հաճախ լինելով տեղերում՝ նրանք գործնական օգնություն են ցույց տալիս քարտուղարներին: Աշխատանքի նման ոճը հնարավորություն է ընձեռում, որպեսզի կուսկազմակերպությունների յուրաքանչյուր ձեռնարկում, կոմունիստի՝ գործին օգնող խելացի ամեն մի առաջարկություն ժամանակին ընթացք ստանան և արժանանան կուսշրջկոմի պաշտպանությանը:

Կուսկազմակերպությունների հեղինակության ու ակտիվության բարձրացմանը մեծապես նպաստում է նրանց ժողովներին և միջոցառումներին շրջկոմի անդամ-թեկնածուների, վերստուգիչ հանձնաժողովի անդամների, կուսակցական ապարատի և շրջխորհրդի գործկոմի պատասխանատու աշխատողների մասնակցությունը:

Մյուս կարևոր հանգամանքն այն է,որ կուսկազմակերպություններում կոմունիստների բարձրացրած հարցերը, առաջարկություններն ու քննադատական դիտողությունները արժանանում են շրջկոմի ուշադրությանը: Մանրամասնորեն քննարկում ենք բարձրացված հարցերի լուծման ուղիներն ու հնարավորությունները, մշակում միջոցառումների պլան՝ ըստ ժամկետների: Միայն անցած տարի շրջկոմի բյուրոյում քննարկված հարցերից 6-ը վերաբերվել է առանձին հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների և կուսքարտուղարների հաշվետվություններին, քննադատական դիտողությունների ու առաջարկությունների, ընդունված որոշումների կենսագործման ընթացքին:

Կուսբյուրոների և քարտուղարների ընտրությունների ընթացքում լայնորեն կիրառում ենք բազմաթեկնածության սկզբունքը, որի շնորհիվ զգալիորեն բարելավվել է նրանց որակական կազմը, բարձրացել պատասխանատվությունը իրենց պարտականությունների կատարման համար: Ներկայումս սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներից 67-ը ունի բարձրագույն կրթություն: Աշխատանքի դրական փորձ են կուտակել «Նաիրի» ագրոֆիրմայի, Քանաքեռավանի պետտնտեսության, «Հայգյուղմեքենայացում» ԳԱՄ-ի և մի շարք այլ կազմակերպություններ: Նրանցում լավ է կազմակերպվում նաև ստորին օղակների հետ տարվող աշխատանքը, կարևոր տեղ հատկացվում կադրերի հուսալի ռեզերվ ստեղծելու գործին:

**ՀԱՐՑ.— Ստորին օղակների հետ տարվող աշխատանքի հիմնական նպատակը նրանց մարտունակության ուժեղացումն է, ակտիվության բարձրացումը: Ի՞նչ է արվում այդ ասպարեզում:**

ՊԱՏԱՍԽԱՆ.— Հարցադրումը միանգամայն ճիշտ է: Կուսկազմակերպությունը մարտունակ է նախ և առաջ իր անդամների գաղափարայնությամբ ու ակտիվությամբ: Իսկ այդ հատկանիշների ամրապնդման երաշխիքներից մեկը կուսշարքերի խելամիտ համալրումն է քաղաքականապես լավ պատրաստված և ճիշտ դիրքորոշում ունեցող երիտասարդ մարդկանցով: Կուսշարքերի որակական կազմի բարելավման առնչությամբ շրջկոմը ուժեղացրել է պահանջկոտությունը սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների և նրանց քարտուղարների նկատմամբ: Որոշակի քայլեր են արվել ԽՄԿԿ շարքերի համալրման դեմոկրատացման ճանապարհին: Կուսակցության շարքերն ընդունվողների գործերը, ինչպես արդեն ասվեց, հիմնականում քննարկվում են դռնբաց կուսակցական ժողովներում, որտեղ նրանց մասին իրենց կարծիքն են հայտնում նաև կոլեկտիվի ոչ կոմունիստ անդամները, գործընկերները, հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչները:

Ասվածից թող այն ենթադրությունը չստացվի, թե մեզ մոտ ամեն ինչ բարեհաջող է: Ընդհակառակը, կան և լուրջ թերություններ: Դեռևս ոչ բոլոր սկզբնական կազմակերպություններն են նորովի վերաբերվում իրենց շարքերի համալրմանը: Առանձին տեղերում դիմողների քաղաքական-գործնական հատկանիշները ուսումնասիրվում են հապճեպորեն, քննարկումները՝ անցկացվում մակերեսորեն: Հաճախ հաշվի չեն առնվում աշխատավորական կոլեկտիվների, հասարակական կազմակերպությունների կարծիքը տվյալ անձի մասին, երաշխավորողները իրենց բնութագրերը չեն հիմնավորում հասարակական համատեղ աշխատանքի, անձնական շփման, հասարակական կարծիքի միջոցով և այլն:

Բարձր մարտունակության չափանիշ է նաև այն, թե ինչպիսի որոշում է ընդունում կուսկազմակերպությունը և ինչպես է կենսագործում այն: Շրջկոմում արմատապես փոխվել է վերաբերմունքը ընդունված որոշումների ճակատագրի նկատմամբ: Եթե նախկինում բավարար էր համարվում ստացված ինֆորմացիան որոշման կատարման վերաբերյալ, ապա այժմ այն հանվում է հսկողությունից, երբ կատարման ընթացքն ու արդյունքները մանրամասնորեն ուսումնասիրում է սպասարկող հրահանգիչը և ներկայացնում շրջկոմի բյուրո: Սակայն որոշումների կատարման գործում հիմնական թերությունը շարունակում են մնալ ժամկետների ձգձգումը և առանձին պաշտոնատար անձանց դանդաղկոտությունը:

Ընդհանուր հետևությունն այն է, որ մեր շրջանային կուսկազմակերպությունը քայլ առ քայլ ընթանում է վերակառուցման ճանապարհով դեպի կուսակցության XXVIII համագումար, ընդհանրացնում արած ուսանելին ու լավը, դասեր քաղում չարածից ու թերություններից: Այժմ շրջանի կուսկազմակերպությունները, կոմունիստները ծանոթանում են համագումարի առթիվ Կենտկոմի ընդունած պլատֆորմին և անհրաժեշտ հետևություններ անում նրա դրույթներից:

# ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ՏՆՏՀԱՇՎԱՐԿ. ԱՐՄԱՏԱՎՈՐՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

**Ի. ՀԱԿՈԲՅԱՆ**
**Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ԻՐԱԿԱՆԱՑՎՈՂ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԻ առանցքը ռեգիոնալ տնտհաշվարկի մշակումն ու արմատավորումն է։ Մինչև վերջերս տնտհաշվարկային հարաբերությունները գերազանցապես ներդրվում էին հասարակական արտադրության հիմնական օղակում՝ ձեռնարկություններում։ Այս ապարեզում հաջորդ քայլը տերիտորիալ տնտհաշվարկի սկզբունքների կիրառումն է, որը դրսևորվում է հանրապետությունների ու ռեգիոնների տնտեսական ինքնուրույնության, միութենական, հանրապետական և տեղական մարմինների միջև իրավասությունների հստակ բաշխման մեջ։

Նշված խնդիրների իրականացումը հնարավոր է սոսկ քաղաքական սիստեմի ռեֆորմի, խորհուրդների դերի վերականգնման, ազգամիջյան հարաբերությունների ներդաշնակման, ժողովրդական տնտեսության ղեկավարման ողջ համակարգի դեմոկրատացման հետ անխզելի կապի պայմաններում։ Դեմոկրատացումը պայմաններ է ստեղծում ժողովրդատնտեսական ողջ կոմպլեքսին վերաբերող ստրատեգիական հարցերի լուծման գործում կենտրոնացվածությունը առանձին ռեգիոններում զարգացող տնտեսական պրոցեսների հետ զուգակցելու և համաձայնեցնելու համար։ Դրան նպաստում են նաև հանրապետությունների նախաձեռնության, ինքնուրույնության ու պատասխանատվության ընդլայնումը՝ իրենց տարածքներում էկոնոմիկայի և սոցիալական ոլորտի զարգացման մարզերում։

Հանրապետությունների և նրանց ռեգիոնների ինքնուրույնության ուժեղացման անհրաժեշտությունը հստակապես սուր է դրվում վերջին տարիների կուսակցական և պետական փաստաթղթերում։ Քննարկվող պրոբլեմի նկատմամբ արդի մոտեցումները ձևակերպվել են ԽՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1987 թ.) պլենումի, կուսակցության ու կառավարության մի շարք այլ որոշումներում։ Համամիութենական XIX կուսկոնֆերանսը նորովի դրեց ինքնակառավարման, ինքնաֆինանսավորման, ռեգիոնալ ու համապետական շահերի զուգակցման հարցը։

Միայն էկոնոմիկայի կառավարման ասպարեզում նոր մոտեցումների օրգանական կապակցումը քաղաքական իշխանության համակարգում ու մեթոդներում կատարված փոփոխությունների հետ, կարող է տերիտորիալ ինքնակառավարման համար իրական պայմաններ ապահովել։ Սակայն այդ պայմանները հնարավոր չէ իրականացնել ինքնաբերաբար։ Պահանջվում է կառավարման տարբեր մակարդակներում տնտեսական մեխանիզմի բոլոր տարրերի՝ պլանավորման համակարգի, ֆինանսավարկային լծակների տնտեսական նորմատիվների կիրառում։

---

*ՀԱԿՈԲՅԱՆ ԻՐԻՆԱ ԳՐԻԳՈՐԻ— ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի ավագ գիտաշխատող, տնտեսագիտության թեկնածու։*

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՍՈՒՍԱՆՆԱ ՀՐԱՆՏԻ— նույն ինստիտուտի գիտաշխատող, տեխնիկական գիտությունների թեկնածու։*



Տնտհաշվարկը, որ հիմնված է ռեգիոնի էկոնոմիկայի կառավարման մեջ տնտհաշվարկային սկզբունքների օգտագործման վրա, նպատակ ունի ամրապնդելու հանրապետությունների և առանձին տարածքների ինքնուրույնությունը։ Միաժամանակ այն ենթադրում է ընդհանուր միութենական համալիրի կազմում տարբեր ռեգիոնների խելամիտ մասնագիտացում և կոոպերացում, արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխում, հանրապետությունների, ռեգիոնների ու ճյուղերի միջև հորիզոնական կապերի զարգացում, հարաբերությունների որակական նոր ձևերի ստեղծում (օրինակ, համատեղ ձեռնարկություններ) և այլն։

Ռեգիոնալ տնտհաշվարկի զարգացման գործում կոչված է էական դեր խաղալու 1989 թվականի մարտին ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած՝ «Միութենական հանրապետություններում էկոնոմիկայի և սոցիալական ոլորտի ղեկավարումը՝ նրանց սուվերեն իրավունքների, ինքնակառավարման և ինքնաֆինանսավորման ընդլայնման հիման վրա վերակառուցելու ընդհանուր սկզբունքների» նախագիծը։ Վերջինիս համաձայն միութենական հանրապետությունների և ռեգիոնների զարգացումը ենթադրվում է իրականացնել գլխավորապես ստացվող եկամուտների հաշվին, իսկ նրանց ֆինանսական ռեսուրսները կախված կլինեն իրենց տարածքում գտնվող բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքի արդյունքներից։ Այսպիսով, ռեգիոնալ տնտհաշվարկի իրականացումը նպատակ ունի հանրապետության սուվերենության ձևական մոդելից անցում դեպի իրական սուվերենություն։ Ընդ որում, բնականաբար, կարևոր է հաշվի առնել յուրաքանչյուր ռեգիոնի զարգացման առանձնահատուկ պայմանները։

Երկրի յուրաքանչյուր ռեգիոն զարգանում է առանձնահատուկ պայմաններում, որոնք ընդգրկում են բնակլիմայական և լեռնաերկրաբանական յուրահատկություններ, բնական ռեսուրսների յուրացման աստիճան, ենթակառուցվածքի զարգացում, ազգային և տնտեսական ավանդույթներ, արտադրության ձևավորված կառուցվածք, սոցիալական պայմաններ, գիտատեխնիկական զարգացման մակարդակ և այլն։ Հայաստանը բնութագրվում է զարգացած արդյունաբերությամբ՝ դեպի տեխնոլոգիապես բարդ և գիտատար ճյուղերն իր ակնհայտ կողմնորոշմամբ, բարձր որակավորում ունեցող կադրերի պոտենցիալով։ Հանրապետությունը հարուստ է նաև մի շարք բնական ռեսուրսներով։ Միաժամանակ հարկ է նշել նրա էկոնոմիկայի զարգացման ոչկոմպլեքսայնությունը, առանձին ճյուղերի ոչ ռացիոնալ և չափից դուրս լայն մասնագիտացումը։

Հանրապետական տնտհաշվարկի կոնցեպցիայի մշակումը Հայաստանում ընթանում է տնտեսական սրված դժվարությունների պայմաններում։ Վերջին տարիներին այստեղ էկոնոմիկայի զարգացման մեջ նկատվում են անբարենպաստ միտումներ։ Դրանք սրվել են քաղաքական ծանր իրավիճակի հետևանքով, իսկ էլ ավելի շատ՝ ազգային հարստության մեկ երրորդի (մոտ 13 միլիարդ ռուբլի) կորստի պատճառ դարձած երկրաշարժի հետևանքով։ Եթե սրան ավելացնենք նաև Ադրբեջանի կազմակերպած շրջափակումը, ապա պարզ կլինի, որ Հայաստանը գտնվում է ծայրահեղ ծանր պայմաններում և նրա անցումը տնտհաշվարկի պահանջում է ուժերի մեծ լարում ու մանրակրկիտ հաշվարկներ։

Հանրապետությունը ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատանքի փոխադրելու հնարավորությունները գնահատելիս պետք է հենվել ոչ թե մեկ, այլ մի ամբողջ շարք ցուցանիշների վրա։ Ընդ որում պետք է նկատի ունենալ այդ ցուցանիշներից շատերի հաշվարկների մեթոդաբանության ոչ կատարյալ լինելը, դրանց վրա կառուցվածքային և արժեքային գործոնների ազդեցությունը հաշվելու հուսալի մեթոդիկայի բացակայությունը, որը բարդացնում է վերջիններիս վերլուծությունն ու հետևությունների հավաստիությունը։

Հանրապետության ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման անցնելու էական նախադրյալներից մեկը ազգային եկամտի աճն է։ Պետք է ասել, որ վերջին երկու տարիներին նրա աճը նկատելիորեն նվազել է։ Ազգային եկամտի աճի տեմպերի նվազումը ինքնըստինքյան բացասական գործոն է, բայց այն պետք է քննարկել մյուս ցուցանիշների հետ ամբողջության և փոխկապակցության մեջ։

Ռեգիոնալ տնտհաշվարկի անցնելու առավել ծանրակշիռ փաստարկը արտադրված ազգային եկամտի գերազանցումն է այդ եկամտի օգտագործման նկատմամբ։ Տվյալների վերլուծությունը վկայում է, որ 1980 թվականից հանրապետությունում արտադրված ազգային եկամուտը կայունորեն գերազանցում է դրա օգտագործմանը։ Սակայն, 1986 թվականից սկսած՝ ազգային եկամտի արտադրման ա-

նի տեմպերի նվազման միտումի կապակցությամբ այդ երկու ցուցանիշների միջև խզումը կրճատվել է:

Ազգային եկամտի զարգացման դինամիկայի օրինաչափությունները ուսումնասիրելիս այն չպետք է արտադրության կառուցվածքում տեղի ունեցող փոփոխություններից մեկուսացված դիտարկել (օրինակ, ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ճյուղերի օգտին միջոցներ վերաբաշխելուց), ինչպես նաև արտադրանքի ներմուծման և արտահանման ցուցանիշների հարաբերակցությունից, ընդհանուր միութենական բյուջե կատարվող մուծումներից և դրամական մուտքերից, ֆինանսական ռեսուրսների ծավալի դինամիկայից, հանրապետության պետբյուջեի եկամտի ու ծախսի մասերից և այլն: Միայն այս ցուցանիշների մանրակրկիտ վերլուծության հիման վրա է հնարավոր տերիտորիալ տնտհաշվարկի մեխանիզմի գործնական մշակումը, հանրապետության էկոնոմիկայի կառուցվածքի բարելավումը, նրա տնտեսական կապերի կատարելագործմանն ուղղված առաջարկությունների նախապատրաստումը:

Մեր հանրապետությունում ազգային եկամտի օգտագործման նկատմամբ նրա արտադրության գերազանցության հիմնական աղբյուրը երկրի մասշտաբով միջհանրապետական շրջանառության դրական հաշվեկշիռն է, ժողովրդական տնտեսության կառուցվածքի առանձնահատկությունները: 1982 և 1987 թվականներին Հայկական ԽՍՀ ժողտնտեսության մեջ հանրային արտադրանքի թողարկման և բաշխման միջճյուղային հաշվեկշռի տվյալները վկայում են, որ արտածման ծավալը գերազանցել է ներմուծմանը: Սակայն ինքնըստինքյան պարզ է, որ նման գերազանցումը բավարար հիմք չէ պնդելու, թե հանրապետությունը պատրաստ է տնտհաշվարկի անցնելու: Եվ ընդհակառակը, ներմուծման գերազանցումը արտահանման նկատմամբ չի կարող լուրջ խոչընդոտ լինել այդպիսի անցման համար: Այս հարցում պետք է հաշվի առնվեն նաև այլ պարագաներ: Արտադրանքի տերիտորիալ փոխանակումը էապես ազդում է ամբողջ հասարակական արտադրանքի և ազգային եկամտի վրա: Ազգային եկամտի (արտադրվող-օգտագործվող) մասերի հարաբերակցության հավելամնացորդը մեծ չափով կախված է այն բանից, թե հանրապետություն ներմուծվող արտադրանքի որ բաժինն է տրամադրվում հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի վրա կատարվող ծախսումների հատուցմանը և հիմնական ֆոնդերի վերանորոգմանը, որը՝ սպառման ու կուտակման ֆոնդերի ստեղծմանը: Երբ ներմուծվող արտադրանքը հիմնականում տրամադրվում է արտադրության ընթացիկ ծախսերի ծածկմանը, ապա այն մեծացնում է հասարակական արդյունքի հատուցման ֆոնդը, իսկ դա իր հերթին հանգեցնում է արտադրված ազգային եկամտի ծավալի նվազեցմանը և վերջինիս ու օգտագործվող ազգային եկամտի միջև խզման կրճատմանը: Եվ ընդհակառակը, ներմուծվող արտադրանքի կառուցվածքում հատուցման ֆոնդի նվազումը հանգեցնում է արտադրված ազգային եկամտի ավելացմանը, որը ապահովում է վերը նշված խզման աճը:

Մեր ներմուծած արտադրանքի կառուցվածքում գերակշռում են նյութահումքային և վառելիքաէներգետիկ ռեսուրսները: Ընդ որում միջհանրապետական փոխանակության դրական հաշվեկշիռը, ինչպես նաև արտահանվող ապրանքների կառուցվածքի առանձնահատկությունները ապահովում են ընդհանուր դրական տարբերությունը արտադրվող և օգտագործվող ազգային եկամտի միջև: Թեպետ ամբողջությամբ վերցրած մեր հանրապետությունն ավելի է մոտենում նյութահումքային ռեսուրսներ ներմուծող ռեգիոնների կատեգորիային, սակայն նրա այդ ուղղվածությունը վառ արտահայտված չէ, քանի որ արտահանվող արտադրանքի կառուցվածքում առկա է մի ամբողջ շարք ռեսուրսների զգալի բաժին (պղինձ, մոլիբդեն, շինանյութեր և այլն):

Առանձնահատուկ է Հայկական ԽՍՀ-ից արտահանվող պատրաստի արտադրանքի կառուցվածքը: Հանրապետության միագումար հասարակական արդյունքում արդյունաբերական արտադրանքի բաժինը մեծ է՝ այն ապահովում է ազգային եկամտի մոտ 60 տոկոսը: Ընդ որում թողարկված արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալում վերջնական սպառման տրամադրվող պատրաստի արտադրանքը կազմում է 30 տոկոսից պակաս, իսկ մնացած մասը բաժին է ընկնում միջնակա արտադրանքին: Այդպիսի պայմաններում էական դեր է խաղում ոչ այնքան ներմուծման նկատմամբ արտահանման գերազանցումը, որքան դրսից ստացված արտադրանքի արդյունավետ օգտագործումը, արտադրության նյութատարության նվազեցումը, առավելապես այնպիսի արտադրությունների զարգացումը,



որտեղ կարող են օգտագործվել տեղական ռեսուրսներ, ինչպես նաև արտահանվող պատրաստի արտադրանքի բաժնի մեծացումը: Օրինակ, վերջին 2—3 տարիներին հանրապետությունում ազգային եկամտի աճի տեմպերի նվազման գլխավոր պատճառներից մեկը հասարակական արդյունքի նյութատարության բարձրացումն է: Այսպես, 1986—1987 թվականներին դիտվել է նյութատարության 0,85 տոկոս աճ: Այդ պատճառով էլ այժմ ավելի սրությամբ է դրվում բոլոր ռեսուրսների, հատկապես նյութական օգտագործման արդյունավետության բարձրացման հարցը, ինչպես նաև ճիշտ կառուցվածքային քաղաքականության ընտրության պրոբլեմը:

Կառուցվածքային վերակառուցումը արտադրության արդյունավետության աճի երկարաժամկետ կայուն տեմպերի հիմնական պայմանն է: Ռեգիոնալ տնտհաշվարկի անցնելիս ծագում է ժողտնտեսության այնպիսի ճյուղային կառուցվածք ստեղծելու պահանջ, որը կապահովեր, մի կողմից, նրա տնտեսական անկախությունը, մյուս կողմից՝ ժողովրդի կենսամակարդակի բարձրացումն ապահովող հզոր տնտեսական պոտենցիալի ստեղծումը: Նշված նպատակների իրականացումը ենթադրում է ժողովրդական տնտեսության օպտիմալ կառուցվածքի ստեղծման անհրաժեշտություն: Այստեղ հնարավոր է երկու մոտեցում. ա) առկա կառուցվածքի վերլուծություն և դրա ռացիոնալացում՝ ստեղծված փոխադարձ կապերի հիման վրա. բ) սկզբունքորեն նոր կառուցվածքի ստեղծում:

Արդյունաբերության մեջ առկա կառուցվածքի վերլուծությունը վկայում է հետևյալի մասին.

1. Վերլուծվող բոլոր ճյուղերի գործունեության արդյունքի ձևավորումը հիմնված է եղել ծախսումային սկզբունքի վրա: Արդյունքի աճի տեմպերը, որպես կանոն, պայմանավորված են արդյունաբերության բոլոր ճյուղերում ծախսումների աճի տեմպերով,

2. գոյություն ունի որոշակի, բավականին սերտ կապ գիտատար արտադրություններում (սարքաշինություն, ավտոմոբիլային արդյունաբերություն) ծախսումների աճի տեմպերի և արդյունաբերության մյուս ճյուղերի արդյունքների միջև: Միաժամանակ գիտատար ճյուղերի արտադրությունների մակարդակն ու աճի տեմպերն այնքան աննշան են, որ չեն կարող արդյունաբերության մեջ էական կառուցվածքային տեղաշարժերի հանգեցնել,

3. որոշ ճյուղեր, ինչպես օրինակ, քիմիական արդյունաբերությունը, էլեկտրատեխնիկան և այլն, գտնվում են մյուս բնագավառներից միակողմանի կախվածության մեջ: Այսպես, թվարկված ճյուղերում ծախսումները կախված են ինչպես մյուս ճյուղերի ծախսերից, այնպես էլ արդյունքներից: Այնինչ նշված ճյուղերի արդյունքները գործնականում ոչ մի կերպ չեն ազդում արդյունաբերության մյուս ոլորտների արդյունքների մակարդակի և աճի տեմպերի վրա: Ընդ որում, եթե քիմիական արդյունաբերությունում ստեղծված բացասական իրավիճակը կարող է ինչ-որ կերպ կարգավորվել որոշ քիմիական արտադրությունների կրճատումով (առավել ևս, որ դա համընկնում է էկոլոգիական պրոբլեմների լուծման պահանջների հետ), էլեկտրատեխնիկական արդյունաբերությունում գործերն ավելի բարդ են: Հանրապետությունում հատկապես զարգացած այս ճյուղը ինչպես արտադրության ընդհանուր ծավալի և թողարկվող արտադրանքի տեսականու, այնպես էլ մյուս ճյուղերի հետ կոոպերացված կապերի տեսակետից, փաստորեն իր մեջ կուտակում է առկա միջոցները (արդյունաբերության շատ ճյուղերի ծախսերը և աշխատանքի արդյունքները), գործնականում չազդելով նույնիսկ հարակից ճյուղերի (հաստոցաշինություն, սարքաշինություն) գործունեության արդյունքների վրա: Նշված պրոբլեմի լուծումը հնարավոր է ժողովրդական տնտեսության ռեգիոնալ կառավարումը կատարելագործելու, տնտհաշվարկը ներդնելու շրջանակներում:

Անցկացված վերլուծությունը որոշակի հետաքրքրություն է ներկայացնում նաև այս կամ այն արտադրությունը կրճատելու կամ ընդլայնելու նպատակով ճյուղերի միջև միջոցների ռացիոնալ վերաբաշխման տեսանկյունից:

Առավել արդյունավետը (երկարաժամկետ հեռանկարի համար) սկզբունքորեն նոր կառուցվածքի ստեղծումն է: Այստեղ հնարավոր են մի քանի մոտեցումներ: Բնական հարուստ ռեսուրսներ ունեցող երկրները ժողովրդական տնտեսության կառուցվածքի հիմքում դրել են ավարտուն արտադրությունների զարգացման գաղափարը, այն է՝ հումքի հանույթից մինչև նրա վերջնական օգտագործումը, սրա հետ մեկտեղ՝ հումքային ռեսուրսներ մշակող ճյուղերի զարգացումը և դրանց մասնակի օգտագործումը: Մինչդեռ կյանքը ցույց է տվել, որ այդ ստրատեգիան ճիշտ չէ, ո-

րովհետև այն չի կարող լուծել տնտեսական հզոր պոտենցիալի ստեղծման և հանրապետության տնտեսական անկախության ապահովման խնդիրները: Իր հերթին, բնական ռեսուրսների սղությունը՝ հումքի գների աճի միտումների զուգակցությամբ, ստեղծում է արտադրության կառուցվածքի զարգացման այլ միտում: Գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում առավել լավագույնը այն կառուցվածքն է, որտեղ գերակշռում են գիտատար արտադրությունները: Կոնկրետ ուղղությունները, համամասնությունները, միջոցների բաշխումը հատուկ վերլուծության կարիք ունեն:

Ստեղծված և առաջարկվող կառուցվածքը գնահատելիս պետք է նկատի ունենալ, որ նրա օպտիմալության ավանդական չափանիշները (զբաղվածություն, կապիտալ ներդրումներ, բնական ռեսուրսներ) միշտ չէ, որ բավականին հուսալի են: Այդ չափանիշները կարող են օգտագործվել ստեղծված փոխադարձ կապերը ռացիոնալացնելու փուլում: Իսկ առաջադիմական կառուցվածք ստեղծելիս նպատակահարմար է ելնել հետևյալից. ա) ցանկացած կառուցվածքի հիմքում պետք է դրվի նրա հիմնական տարրը, իսկ մնացածները պիտի նրանից ածանցյալ լինեն. բ) որպես օպտիմալության չափանիշներ կարող են օգտագործվել դրանց տարբեր զուգակցություններ. գ) կառուցվածքը պետք է հիմնված լինի սկզբունքորեն նոր տնտեսական գաղափարի վրա:

Բնական հարուստ ռեսուրսների առկայությունը ամենևին էլ չի ենթադրում դրանց բոլորի պարտադիր հանույթը (առավել ևս, եթե դա ստրատեգիական հումք է): Կարելի է զարգացնել ներմուծվող կիսաֆաբրիկատների օգտագործման ու վերջնական մշակման արդյունաբերությունը: Կառուցվածքի արդյունավետության չափանիշների ոչ միանշանակ լինելը դրսևորվում է նաև զբաղվածության պրոբլեմը գնահատելիս: Դիցուք ծագել է այնպիսի իրավիճակ, երբ մենք չենք կարող զբաղվածությամբ ապահովել հանրապետության բնակչության 50 տոկոսը: Անգամ այդ դեպքում չի կարող լինել աշխատատար արտադրությունների զարգացման միանշանակ լուծում, քանի որ, որպես կանոն, առանց աշխատանքի է մնում ցածր որակավորում ունեցող աշխատուժը: Բացառված չէ, որ անհամեմատ ավելի շահավետ կլինի բնակչության այդ 50 տոկոսին աշխատավարձի երաշխավորված նվազաչափով նպաստ տալը: Քանի որ ցածր որակավորում ունեցող կադրերի նկատմամբ հասարակական պահանջմունք չկա, անհրաժեշտ է որակավորման բարձրացման համակարգի միջոցով նրանց վերապրոֆիլավորել:

Մեր ռեգիոնի էկոնոմիկայի չափազանց բաց լինելը հանգեցրել է այն բանին, որ նրա արդյունաբերական պոտենցիալի մեծ մասը վերջնական սպառում է գտնում հանրապետության սահմաններից դուրս: Դա գործնականում վերաբերում է ամբողջ մեքենաշինական համալիրին, քիմիական արդյունաբերությանը, թեթև արդյունաբերության զգալի մասին: Նման վիճակը տնտեսական աճի վերլուծության և կանխագուշակման նկատմամբ ավանդական մոտեցման հետևանք է: Էկոնոմիկայի վերակառուցումը ենթադրում է արմատական կառուցվածքային վերափոխումների անհրաժեշտություն և, ամենից առաջ, արդյունաբերության մեջ: Ընդ որում, երկարաժամկետ հեռանկարի համար ռեգիոնի տնտեսական և սոցիալական զարգացման մոդելավորումը պետք է հիմնված լինի տեխնոլոգիապես ինքնապարփակ արտադրությունների ստեղծման վրա՝ կողմնորոշված դեպի հանրապետությունում կամ անդրկովկասյան ռեգիոնում վերջնական սպառմանը: Այն պետք է դառնա որոշակի կառուցվածք ստեղծող հիմնական տարրը՝ ամրապնդված կոոպերացված դինամիկ կապերի համալիրով. միջճյուղային փոխազդեցություններ, ենթակառուցվածքներ, որոնք ընդգրկում են ամենից առաջ սեփական բարձր որակավորում ունեցող կադրերի պատրաստումն ու օգտագործումը, արտադրության թափոնները, կոոպերացված մատակարարումները՝ պարփակված առավելապես ռեգիոնում, վերջնական սպառումը: Արդյունաբերության ռացիոնալ կառուցվածքի չափանիշները պետք է դառնան՝ հանրապետության հասարակական պահանջմունքների արագ բավարարումը և նրա էկոլոգիական պաշտպանվածության պատշաճ ապահովումը: Այս դեպքում արդյունաբերության կառուցվածքը ռեգիոնալ կառավարման համապատասխանող մեխանիզմի պայմաններում ոչ միայն ճկունորեն կարձագանքի գիտատեխնիկական առաջադիմությանը, այլև ինքը կդառնա տեխնիկատեխնոլոգիական նորամուծությունների կրող:

Կառուցվածքային քաղաքականության կատարելագործումը կարող է ելնել նաև այնպիսի գործոնից, ինչպիսին ռեգիոնի էկոնոմիկայի առողջացման համար ֆի-



նանսական ամուր բազայի ստեղծման անհրաժեշտությունն է: Ֆինանսական ռեսուրսների կազմի տարասեռությունը հարուցում է տարբեր միտումներ՝ դրանց առանձին տարրերի դինամիկայում:

1980—1988 թվականների տվյալների վերլուծությունը ցույց է տալիս բնակչության կողմից ներգրաված միջոցների (հարկեր, ավանդներ խնայդրամարկղներում) առավել ինտենսիվ աճ (2,2 անգամ) և կուտակումների (շահույթներ, հարկ շրջանառությունից և այլն) նվազ, ինտենսիվ աճ (1,4 անգամ): Սա վկայում է արտադրության արդյունավետության իջեցման, էկոնոմիկայի զարգացման մեջ առկա անբարենպաստ միտումների հետևանքով ֆինանսական ռեսուրսների կառուցվածքի վատթարացման մասին:

Ֆինանսական ռեսուրսների ծավալի աճի հետ մեկտեղ մեծ նշանակություն ունի դրանց արդյունավետ օգտագործման գործոնը: Դա կանխորոշում է ֆինանսական ռեսուրսների կառուցվածքի և գործոնների համակարգի խոր իմացության վրա հիմնված բաշխման այնպիսի քաղաքականության իրականացումը, որը ներգործում է նրանց աճի, կապիտալ ներդրումների ռացիոնալ ճյուղային և տարածքային բաշխման, նյութական ու աշխատանքային ռեսուրսների վրա: Դրա հիմնական նպատակը, մի կողմից, ռեսուրսները գերազանցապես առավել առաջադիմական այն ճյուղերի զարգացմանն ուղղելն է, որոնք ապահովում են ժողտնտեսության և բնակչության պահանջմունքների բավարարումը, մյուս կողմից՝ անհրաժեշտ նախադրյալներ ստեղծում ընդլայնված վերարտադրության ֆինանսական պոտենցիալի հզորացման համար: Այս կապակցությամբ մոտակա հեռանկարում հանրապետությունում պետք է բարձրացնել արտադրանքի այն տեսակների արտադրության գերազանցությունը, որոնք հասարակական պահանջմունքների բավարարումից զատ, թույլ կտային ապահովել ժողովրդական տնտեսության և պետբյուջեի կողմից երաշխավորված եկամտի ստացումը:

Իհարկե, խոսքն այն մասին չէ, որ շահութաբերության և շահույթի առավել նորմայի հասնելը՝ արտադրության բնաիրային համամասնությունները պլանավորելիս, եղել է գլխավոր կողմնորոշիչը, որովհետև դա միշտ չէ, որ նպատակահարմար է: Արտադրությունների որոշ ճյուղեր ու տեսակներ (էներգետիկա, գյուղատնտեսություն և այլն) ունեն բարձր ժողովրդատնտեսական արդյունավետություն, բայց դրանց ճյուղային շահութաբերությունը ցածր է միջին մակարդակից: Ուստի այդ ճյուղերի զարգացման համար միջոցներ հատկացնելիս չի կարելի ելնել շահութաբերության իրենց ցուցանիշներից: Առավել ևս չի կարելի թերագնահատել շահույթի և շահութաբերության ցուցանիշների նշանակությունը կապիտալ ներդրումները բաշխելիս: Հաշվի առնելով, որ լայն սպառման առարկաներ արտադրող ճյուղերը ժողովրդական տնտեսությանը տալիս են 8—10 անգամ ավելի շատ շահույթ, շրջանառության հարկ և ֆինանսական ռեսուրսների այլ տարրեր, քան միջոցներ են ստանում արտադրության ընդլայնման համար, նպատակահարմար է մոտ ապագայում հանրապետության կառուցվածքային քաղաքականությունը կողմնորոշել դեպի թեթև ու սննդի արդյունաբերության ինտենսիվ զարգացումը, որի համար մեզ մոտ առկա են բոլոր նախադրյալները:

Ֆինանսական ռեսուրսների ծավալի մեծացմամբ աճում են ձեռնարկությունների, արտադրամիավորումների իրավունքները սեփական դրամական միջոցների օգտագործման հարցում: Սակայն բաշխման քաղաքականության մեջ ավելի շատ է պահանջվում նկատի ունենալ ծախսումների արդյունավետության գործոնը, որից ելնելով ֆինանսական ռեսուրսների մոբիլիզացման ու օգտագործման կենտրոնացված և ապակենտրոնացված մեթոդների հարաբերակցության հարցը պետք է լուծվի ամբողջությամբ վերցրած արտադրության արդյունավետության և ինտենսիվացման վրա այդ պրոցեսների ազդեցությունը հաշվի առնելով: Ձեռնարկությունների, արտադրամիավորումների տրամադրության տակ մնացող ֆինանսական ռեսուրսների բաժնի մեծացման միտումը տնտեսապես նպատակահարմար է և արդարացված այն դեպքում, եթե դա խթանում է աշխատանքի արդյունավետության և որակի աճը:

Չի կարելի ֆինանսական քաղաքականության արդյունավետ ու հեռանկարային ուղղություն համարել նաև կենտրոնացված ֆինանսական ռեսուրսների բաժնի չհիմնավորված մեծացումը: Այդ քաղաքականությունը կարող է արդարացվել միայն այն դեպքում, երբ համապատասխան միջոցները կենտրոնացվեն կարևորագույն ժողովրդատնտեսական պրոբլեմների լուծմանը, ինչպես նաև գիտատեխնիկական

բազայի ստեղծմանն ու ժողովրդական տնտեսության կառուցվածքի կատարելագործմանը:

Տնտհաշվարկի անցնելը ենթադրում է հանրապետական և տեղական բյուջեների դերի բարձրացում, քանի որ միայն ակտիվ ու ճկուն բյուջետային քաղաքականության միջոցով կարող են ձեռք բերվել էկոնոմիկայի դինամիկ և հավասարակշռված զարգացումը, ժողտնտեսության ճյուղային կառուցվածքի լավագույն տարբերակը: Այս բնագավառում կոնկրետ քայլ է միութենական հանրապետությունում էկոնոմիկայի և սոցիալական ոլորտի ղեկավարման վերակառուցման սկզբունքների վերը նշված նախագիծը, որն ուղղված է պետական բյուջեի եկամուտների ու ծախսերի ամբողջ համակարգի ձևավորման արմատական վերակառուցմանը: Այն նախատեսում է հանրապետության բյուջե մուտք գործող ինչպես եկամուտների, այնպես էլ ծախսերի հստակ սահմանազատում, որ իրականացվում է բյուջետային համակարգի յուրաքանչյուր օղակում, ամենից առաջ բյուջեի այն եկամտաբեր աղբյուրների ամրապնդում, որոնք անմիջականորեն կախված են ստորադաս տնտեսությունների արդյունավետ աշխատանքից:

Արտադրական և ֆինանսական ծրագրերի մշակման և իրականացման գործում ձեռնարկությունների իրավունքների ընդլայնման կապակցությամբ բյուջեի եկամուտների ձևավորումը ստանում է հստակ արտահայտված կանխագուշակող բնույթ: Ասենք, որ ուշադրությունը պետք է բևեռվի տնտեսական լծակների ու խթանների համակարգի առավել լրիվ օգտագործման վրա, որոնք ապահովում են պետության, հանրապետության և մյուս ռեգիոնների կենտրոնացված պահաջմունքների օրգանական զուգակցումը տնտհաշվարկային գործունեության շահերի հետ:

Անցումը ռեգիոնալ տնտհաշվարկի ենթադրում է հրաժարում միութենական և հանրապետական բյուջեների միջև բարդ վերաբաշխողական հարաբերություններից, բյուջետային կառուցվածքի հետագա դեմոկրատացմանն ուղղված լրացուցիչ միջոցների գործադրում, բյուջեների ինքնուրույնության սկզբունքի հետևողական պահպանում: Վերանայման կարիք ունի բյուջետային պլանավորման սկզբունքը. պահանջվում է հրաժարում ծախսումնային սկզբունքից, որը ելնում է ոչ թե եկամուտներից, այլ ծախսերից: Միայն այն դեպքում, երբ ռեգիոնալ մարմիններն իրենք տնօրինեն սեփական միջոցները (դրանք ծախսելով ստացված եկամուտների սահմաններում), նրանք շահագրգռված կլինեն լրացուցիչ միջոցների ներգրավման, առավել արդյունավետ տնտեսական գործունեության, արտադրողական ուժերի ռացիոնալ տերիտորիալ տեղաբաշխման և արտադրության կառուցվածքի կատարելագործման հարցերում:

Հանրապետության տնտեսական ինքնուրույնության՝ նշված միջոցառումների իրացումը կնպաստի ճգնաժամային վիճակից դուրս գալուն և հեռանկարում կապահովի ժողովրդական տնտեսության հուսալի և դինամիկ զարգացումը:

---

# ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՍՊԱՍԱՐԿՈՒՄ. ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ

**Ա. ԶԱՏԻԿՅԱՆ**

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ սոցիալական և տնտեսական առաջադիմության ստրատեգիական մայրուղին կյանքի բոլոր բնագավառների արմատական վերակառուցումն է, մարդկանց համար աշխատանքի, կենցաղի, հանգստի լավագույն պայմանների ստեղծումը:

Չի կարելի հաշտվել խորհրդային մարդկանց կոմունալ-կենցաղային սպասարկման հետամնացության, տրանսպորտի, կապի, տուրիզմի, ֆիզկուլտուրայի և սպորտի բնագավառներում տիրող անմխիթար իրավիճակի հետ: Քաղաքում և գյուղում լուրջ պրոբլեմ են դարձել բնակարանի նորոգումը, հագուստ կամ կոշիկ կարել տալը: Պատահական չէ, որ այս ոլորտում առաջացել է յուրատեսակ «ստվերային էկոնոմիկա»: Խորհելու առիթ է հետևյալ թիվը. տնտեսագետների հաշվարկներով, ծառայությունների մատուցման դիմաց մասնավոր անձինք տարեկան վաստակում են մոտ 1,5 միլիարդ ռուբլի:

Բնակչության կենցաղային սպասարկման զարգացումը պայմանավորված է սոցիալ-տնտեսական, ժողովրդագրական, բնակլիմայական գործոնների ազդեցությամբ: Դրանք փոփոխում են ծառայությունների առանձին տեսակների հարաբերակցությունը կենցաղային սպասարկումների կառուցվածքում և ընդհանուր ծավալում: Առանձին վերցրած յուրաքանչյուր գործոնի ազդեցությունն այս կամ այն չափով պայմանական է, քանի որ դրանք կարող են ներգործել նաև միաժամանակ: Այս կապակցությամբ անհրաժեշտ է բացահայտել հիմնական գործոնները և որոշել կենցաղային ծառայությունների զարգացման վրա նրանց ազդեցության աստիճանը:

Քննարկենք այս գործոններից մի քանիսի ազդեցությունը սպասարկումների կառուցվածքի և ծավալի վրա՝ գնահատման գլխավոր չափանիշ ունենալով բնակչության պահանջմունքների առավել լրիվ բավարարումը: Մեր հանրապետությունում կենցաղային սպասարկման ոլորտում նշված գործոնների հաշվառումը թույլ կտա ելակետ ընդունել բնակչության ազգային առանձնահատկությունները՝ կապված ավանդույթների, նիստ ու կացի, աշխատանքի և անձնական օժանդակ տնտեսության վարման բնույթի հետ, բարենպաստ պայմաններ ստեղծել փոքր և կենտրոնից հեռու գտնվող բնակավայրերում ապրողների կարիքները հոգալու համար:

Կենցաղային սպասարկման ոլորտի զարգացումը առաջնակարգ նշանակություն ունի բնակչության դրամական եկամուտների և նրա վճարունակ պահանջարկի բավարարման հնարավորությունների միջև լավագույն համամասնություն հաստատելու գործում: Այսպիսով, ծառայությունների մատուցման ձևերի կատարելագործումը ազգային եկամտի վերաբաշխման տնտեսական կարևոր լծակներից է: Բնակչության դրամական եկամուտների և ծախսերի հաշվեկշռի միջոցով որոշվում է համամասնությունը, մի կողմից, աշխատավորների եկամուտների, մյուս կողմից՝ մանրածախ ապրանքաշրջանառության ու վճարովի ծառայությունների ծավալի միջև:

Վերջին երկու տասնամյակում հանրապետությունում մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտների 1,7 անգամ, դրամական միջին աշխատավարձի 1,6 և

ԶԱՏԻԿՅԱՆ ԱԼՎԱՐԴ ԹԵՎՈՍԻ— Տնտեսագիտության թեկնածու, ՀԽՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի կրտսեր գիտաշխատող:

կոլտնտեսականների վարձատրության 1,7 անգամ աճի պայմաններում բնակչությանը մատուցվող կենցաղային ծառայությունների ծավալը զգալիորեն ավելի արագ էր աճում (4,1 անգամ), քան պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը (2,3)։

Հանրապետությունում արագ տեմպերով են աճում բնակչության դրամական եկամուտներն ու ծախսերը։ Փոխվել է հարաբերակցությունը տարբեր ծախսերի միջև. ապրանքների գնման համար կատարվող ծախսերի տեսակարար կշիռը 1965 թ. 78,1 տոկոսից 1987 թ. նվազել է մինչև 71,4 տոկոս։ Ավելացել են ծախսերը կենցաղային սպասարկումների դիմաց. 1965 թ. 0,42 տոկոսից հասնելով 0,8 տոկոսի։ Հարկ է նշել, որ վճարունակ պահանջարկի բավարարման աճի համեմատ տարեցտարի փոքրանում է բնակչության չծախսվող եկամուտների բաժինը։ Ի դեպ, դրանց բացարձակ գումարը դեռևս մեծ է և, 1987 թ. տվյալներով, ծախսերի նկատմամբ եկամուտների աճը բնակչության բոլոր դրամական եկամուտների հաշվով կազմում է 101,5 տոկոս։ Այս կացությունը կենցաղային սպասարկման զարգացման լրացուցիչ հնարավորություններ է ընձեռում։ Հանրապետությունում բնակչության դրամական եկամուտների և նրա վճարունակ պահանջարկի բավարարման հնարավորությունների միջև առավել ճիշտ հարաբերակցության հաստատման նպատակով անհրաժեշտ է մանրածախ ապրանքաշրջանառության աճի խթանման հետ մեկտեղ զգալիորեն ընդլայնել մատուցվող կենցաղային ծառայությունները։

Բնակչության ռեալ եկամուտների աճը նպաստում է կենցաղային այնպիսի ծառայությունների տարածմանը, ինչպես կոշիկի, հագուստի, մորթե և կաշվե իրերի, գլխարկների, տեքստիլ և տրիկոտաժե գործվածքեղենի պատրաստումն ըստ անհատական պատվերների, լվացքատների և քիմմաքրման սպասարկումները և այլն։

Բնակչության ռեալ եկամուտները կենցաղային ծառայություններից օգտվելու ընդհանուր ծավալի կազմավորման հիմնական աղբյուր են։ Նման հետևության հիմք է տալիս դրամական ծախսերի կառուցվածքի վերլուծությունը՝ ըստ բնակչության սոցիալական խմբերի։

Բանվորների և ծառայողների ընտանիքներում վճարովի սպասարկումների դիմաց ծախսերի տեսակարար կշիռը 1970—1987 թթ. ընթացքում 12 տոկոսից նվազել է մինչև 11,5 տոկոս, իսկ կոլտնտեսականների ընտանիքներում, չնայած որոշ աճին (4,2-ից՝ 4,6 տոկոս). առաջինների համեմատությամբ այն զգալիորեն ցածր է։

Նույնպես աճի միտում են դրսևորում ծառայությունների տարբեր տեսակների դիմաց կատարվող վճարումները։

Հասարակության զարգացման մակարդակը պայմանավորում է նաև ապրանքների և ծառայությունների նկատմամբ բնակչության սպառողական պահանջարկը։ Բնականաբար, ավելի բարձր եկամուտ ունեցող ընտանիքներում վճարովի ծառայությունների համար կատարվող ծախսերի բաժինը մեծ է, քան ավելի ցածր եկամուտ ունեցող ընտանիքներում։ Պատճառն այն է, որ նյութական ապահովության բարձրացման հետ նվազում է սննդի համար կատարվող ծախսերի տեսակարար կշիռը, թեև սննդամթերքի բացարձակ ծախսերն աճում են։ Այսպիսով, սպառման կառուցվածքում փոփոխության գլխավոր միտումները հետևյալն են. սնվելու համար ընտանիքների ծախսերի կրճատում և սրան հակառակ, կտորեղենի, հագուստի, կոշկի, երկարաժամկետ գործածության առարկաների ձեռքբերման, կուլտուրական ծառայությունների և կուտակման նպատակով նրանց կատարած ծախսերի մակարդակի աճ։

Բնակչության դրամական եկամուտների և մատուցվող կենցաղային ծառայությունների մասին ունենալով տվյալներ, կարելի է որոշել եկամտի մեկ ռուբլու հաշվով սպասարկումների իրացման ծավալի ցուցանիշը։ Քանի որ բնակչության հիմնական դրամական եկամուտն աշխատավարձն է, ապա այս ցուցանիշը որոշվում է կենցաղային ծառայությունների իրացման ծավալի և բանվորների ու ծառայողների տարեկան աշխատավարձի հարաբերակցությամբ։

Հաշվարկները ցույց են տալիս, որ 1975—1987 թթ. ընթացքում բանվորների և ծառայողների աշխատավարձի մեկ ռուբլու հաշվով կենցաղային ծառայությունների իրացման ծավալը ԽՍՀՄ-ում աճել է 39 տոկոսով, իսկ Հա-



յաստանում՝ 78 տոկոսով։ 1987 թ. ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների ամսական 202 ռուբլի միջին աշխատավարձի պայմաններում կենցաղային սպասարկումների դիմաց վճարումներին բաժին է ընկել դրա 4,29 տոկոսը։ Նույն թվականին մեր հանրապետությունում այդ թվերը եղել են համապատասխանաբար 191 ռուբլի և 4,58 տոկոս։ Այս տվյալները վկայում են, որ աշխատավարձի մեկ ռուբլու հաշվով ծառայությունների իրացման ծավալի ցուցանիշը նպատակահարմար է կիրառել ըստ տնտեսական շրջանների բնակչության կենցաղային սպասարկման զարգացման պլանները մշակելիս։

Կենցաղային ծառայությունները պլանավորելիս կարևոր նշանակություն ունի քաղաքային և գյուղական բնակչության հարաբերակցության հաշվառումը։ Սա պայմանավորված է բանվոր-ծառայողների աշխատավարձի և կոլտնտեսականների վարձատրության մակարդակների միջև առկա որոշակի տարբերություններով, ծառայությունների նկատմամբ պահանջարկի կառուցվածքով, բնակչության սոցիալական ոչ միատեսակ կազմով, աշխատանքային գործունեության որոշ առանձնահատկություններով և քաղաքում ու գյուղում կենցաղային սպասարկման կազմակերպման մակարդակների զանազանությամբ։

Բնակչության տարբեր սոցիալական խմբերում կենցաղային ծառայությունների որոշ տեսակներից օգտվելու վերաբերյալ կատարված ուսումնասիրությունները վկայում են, որ արդյունաբերական բանվորների ընտանիքների համեմատ կոլտնտեսականների և խորհտնտեսային բանվորների ընտանիքները սպասարկումներից օգտվելու առավել ցածր մակարդակ ունեն։ Իրոք, հագուստ կարելու և նորոգելու համար արդյունաբերական բանվորների կատարած ծախսերը 3,7 անգամ գերազանցում են կոլտնտեսականների ծախսերին, կուլտապրանքների նորոգման համար՝ 1,7, էլեկտրասարքերի՝ 2,3, վարսավիրանոցներից, լվացքատներից և բաղնիքներից օգտվելու ծախսերը՝ 10 անգամ։ Ծառայությունների միայն մեկ տեսակի՝ բնակարանների նորոգման և կառուցման դիմաց կոլտնտեսականների ծախսերը 4,1 անգամ գերազանցում են բանվորների համապատասխան ցուցանիշը, ինչը բացատրվում է գյուղական վայրերում անհատական շինարարության լայն տարածմամբ։

Կենցաղային ծառայություններին դիմելու հաճախականության վրա որոշակիորեն ազդում է բնակավայրերի մեծությունը։ Այսպես, մարդկանց կոմպլեքսային սպասարկման վիճակն առավել բարվոք է խոշոր բնակավայրերում՝ պայմանավորված աշխատանքի ժամանակակից եղանակների ներդրմամբ։ Ավանների նոր կամ միջին բնակեցման և շրջանային ու տեղական կենտրոններից դրանց հեռու գտնվելու դեպքում կենցաղային ծառայությունների մատուցման հնարավորությունը փոքրանում է, ըստ բնակության վայրի կատարվում են հիմնականում առաջին անհրաժեշտության ծառայությունների պատվերները, ինչը բացասաբար է ազդում գյուղական վայրերում սպասարկումների որոշ տեսակների զարգացման վրա։

Սպասարկումների այնպիսի տեսակների կազմակերպումը, ինչպես կենցաղային տեխնիկայի և ռադիոհեռուստատեսային սարքերի նորոգումը, հագուստի քիմիական մաքրումը, սպիտակեղենի լվացումը և այլն, բարդանում է նաև պահանջարկի տարածքային ապակենտրոնացմամբ։ Պատճառը բնակության վայրերից կենցաղային ծառայությունների մշտական օբյեկտների հեռավորությունն է և ավտոտրանսպորտային միջոցներով ձեռնարկությունների անբավարար ապահովվածությունը։ Կենցաղսպասարկման զարգացման կարևորագույն նախապայմաններ են ձեռնարկությունների լայն ցանցի նպատակահարմար տեղաբաշխումը և սպասարկումների ժամանակակից, առաջադիմական ձևերի ներդրումը։

Մեր հանրապետությունը բնորոշվում է բնակչության մեծ խտությամբ, սակայն առանձին շրջանների միջև այն տարբեր է։ Այսպես, հարթավայրերում բնակչության խտությունը 1 քառ. կմ-ի վրա հասնում է 140 մարդու, այն դեպքում, երբ լեռնային տարածքներում այն 10 անգամ պակաս է։ Առանձին վայրերում գերակշռում են մանր բնակատեղիները։ Գյուղական շրջաններում տարաբնակեցման ձևավորված բնույթը որոշակիորեն դժվարացնում է կենցաղային սպասարկման կոմպլեքսային և որակով կազմակերպումը։ Հետևաբար, հանրապետության կենցաղային ծառայության գլխավոր խնդիրներից

մեկը ճկուն, շարժական սպասարկումների կազմակերպմամբ առանձին շրջանների միջև առկա տարբերությունների կրճատումն է։

Բացի այդ, կան գործոններ, որոնք բնորոշ են միայն տվյալ տարածքին կամ պայմանավորված են ազգային առանձնահատկություններով։ Այսպես, առողջարանային գոտիներում կենցաղային ծառայությունների նկատմամբ պահանջարկն այլ է, քան երկրի մյուս շրջաններում։ Մարդկանց ժամանակավոր բնակությունը հանգեցնում է սպասարկումների այնպիսի ուրույն տեսակներից օգտվելու հաճախականության աճի, ինչպիսիք են լուսանկարահանումն ու ֆոտոկինոլաբորատորիաները, անձնական օգտագործման ավտոմեքենաների տեխսպասարկումն ու նորոգումը, վարձույթի կետերի ծառայությունները և այլն։ Միաժամանակ բնակչության նշված խմբի պահանջմունքների կառուցվածքում նկատվում է սպասարկումների ընդհանուր ծավալի մեջ հագուստի կարման և նորոգման, բնակարանների վերանորոգման, տների կառուցման ծառայությունների տեսակարար կշռի նվազում։ Սրանք պահանջարկ են վայելում միայն տեղական բնակչության շրջանում, իսկ ծառայությունների միայն առողջարանային տեսակներից օգտվելու հաճախականության աճը հանգեցնում է մեկ բնակչի հաշվով սպասարկումների ընդհանուր ծավալի մեջ առաջինների բաժնի հարաբերական անկման։ Ուստի կարիք է զգացվում կատարելագործելու առողջարանային գոտիների մշտական բնակչության սպասարկման մակարդակի գնահատման մեթոդները։

Վիճակագրությունը կենցաղային ծառայությունների ծավալը հաշվառում է ըստ դրանց իրացման տեղի և այն ամբողջությամբ վերագրում այս կամ այն շրջանի մշտական բնակչությանը։ Արդյունքում անհնար է որոշել բնակչության մեկ շնչի սպասարկումներից օգտվելու համապատասխանության աստիճանը, ինչպես նաև այն համադրել երկրի այլ շրջաններում ձեռքբերված մակարդակի հետ։ Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է եղանակներ մշակել պահանջարկի այն մասի որոշման համար, որն իրացրել են առողջարանային գոտիներում ժամանակավորապես բնակվող անձինք։

Սպասարկումների ազգային տարատեսակների զարգացման նպատակով հարկավոր է ընդլայնել ազգային հագուստի և կոշիկի մոդելավորման աշխատանքները, բարձրացնել ձեռնարկությունների մասնագետների և նման գործունեության մեջ ներգրավված տնայնագործների նյութական շահագրգռությունը։ Հանրապետությունում սուր պրոբլեմ են ծիսական ծառայությունների մատուցման աշխատանքների բարելավումը, ազգային ավանդույթները հաշվի առնելով կենցաղային սպասարկումների նոր ձևերի կազմակերպումը։

Անհրաժեշտ է նկատի առնել նաև այն գործոնները, որոնք ծառայությունների մի տեսակի զարգացման վրա որոշակի դրական ներգործությամբ հանդերձ բացասականորեն են ազդում մյուսների վրա։ Բնակչության կենցաղսպասարկման բնագավառում գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների ներդրումը հանգեցնում է կենցաղային տեխնիկայի համակողմանի մեծացման և դրա նորոգման ծառայությունների ընդլայնման, սպասարկումների առանձին տեսակների նկատմամբ պահանջարկի նվազման։ Այսպես, էլեկտրաածելիների տարածումը բավական նկատելիորեն նվազեցրեց վարսավիրանոցների ծառայություններից օգտվողների թիվը, բարեկարգ բնակարանների շահագործումը կրճատեց բաղնիքներ հաճախելը, լվացքի մեքենաների կենցաղ մուտք գործելը պայմանավորեց լվացքատների սպասարկումների նկատմամբ պահանջարկի անկումը։ Կենցաղի տեխնիկական հագեցվածության բարձրացումը հանգեցնում է տնային տեխնիկայի և սպասարկող ձեռնարկությունների մրցակցության, անդրադառնում է ծառայությունների որոշ տեսակներից օգտվելու աստիճանի վրա։

Պահանջարկի ընդհանուր ծավալի և կառուցվածքի վրա զգալիորեն ներազդում են նաև ժողովրդագրական գործոնները՝ մարդկանց տարիքը, ընտանիքի մեծությունն ու կազմը։ Պարզված է, որ կենցաղային ծառայություններից ակտիվ օգտվողներ են 18-ից 54 տարեկան անձինք, որոնք ավելի հաճախ են այցելում վարսավիրանոցներ, հագուստի անհատական պատվերների արհեստանոցներ, լվացքատներ, քիմմաքրման, վարձույթի կետեր։ Մինչդեռ 17-ից ցածր և 55-ից բարձր տարիքի անձինք շատ ավելի հազվադեպ են օգտվում կենցաղսպասարկման ձեռնարկությունների ծառայություններից։



Ինչ վերաբերում է ծառայություններից օգտվելու աստիճանին և կառուցվածքին՝ պայմանավորված ընտանիքի մեծությամբ ու կազմով, ապա ասենք, որ տարբեր տարիքի երեք անձից բաղկացած (մի ընտանիքում երկու մեծահասակներ են և մեկ երեխա, մյուսում՝ երկու երեխա և մեկ մեծահասակ) եկամտի միատեսակ մակարդակ ունեցող ընտանիքներում կենցաղային ծառայությունների բոլոր տեսակների համար կատարված տարեկան ծախսերը մեկ հոգու հաշվով 32 տոկոսով բարձր են այն ընտանիքներում, ուր շատ են մեծահասակները։ Նման ընտանիքներում այլ է նաև ծառայությունների բոլոր տեսակների դիմաց կատարված ընդհանուր ծախսերի կառուցվածքը։ Այսպես, հագուստ կարելու համար դրանցում կատարված ծախսերը մոտ 3,6 անգամ, կենցաղային մեքենաների և սարքերի նորոգման համար՝ 2, լվացքատների՝ 2,4, քիմմաքրման և վարսավիրանոցների սպասարկումներից օգտվելու դիմաց՝ 1,4 անգամ գերազանցում են ավելի շատ երեխաներ ունեցող ընտանիքների ծախսերին։ Ուրեմն ընտանիքում երեխաների թվի ավելացումը հանգեցնում է կենցաղային ծառայություններից օգտվելու հարաբերական կրճատման։ Այս օբյեկտիվ պրոցեսը պայմանավորված է մանկական հագուստի, կոշիկի, տրիկոտաժե իրերի արագ նորացմամբ, որոնք հիմնականում ձեռք են բերվում մանրածախ առևտրի խանութներում։

Կենցաղային ծառայությունների նկատմամբ պահանջարկի փոփոխման վրա ներգործում են նաև բնակլիմայական պայմանները։ Այսպես, տաք կլիմայի գոտիներում միջին հաշվով մեկ կնոջն ընկնող ձմեռային զգեստների քանակն ավելի փոքր է, քան եղանակային ցուրտ գոտիներում։ Ամառային շրջազգեստներն ընդհակառակը, ավելի մեծ պահանջարկ են վայելում տաք շրջաններում։ Տարբերություն կա նաև կոշիկի առանձին տեսակներ կրելու մակարդակներում։ Բնակլիմայական պայմանները ներազդում են իրերի գործածության ինտենսիվության, հագուստի և կոշիկի ծառայության ժամկետների վրա։ Այս գործոնները փոփոխում են բնակչության պահանջարկը իրերի պատրաստման և նորոգման նկատմամբ։

Հայաստանի աշխարհագրական, կլիմայական պայմանները, ինչպես նաև սեզոնայնությունը բարդացնում են բնակչության կենցաղսպասարկման կազմակերպումը։ Հանրապետության տարածքի մոտ 90 տոկոսը ծովի մակերևույթից բարձր է 1.000 մետրով։ Փորձը ցույց է տալիս, որ լեռնային շրջաններում աշխատանքները նպատակահարմար է իրականացնել արտագնա եղանակով՝ օգտագործելով բարձր անցունակության մեքենաներ, իսկ առանձին բնակավայրերում կառուցել ընդունման կետեր, որոնք տեղում կարող են բնակչությանը կոմպլեքսային ծառայություններ մատուցել։

Մի շարք ծառայությունների նկատմամբ պահանջարկը պայմանավորված է նաև սեզոնայնությամբ։ Այս գործոնի ազդեցությանն առավելապես ենթակա են ծառայությունների այնպիսի տեսակներ, ինչպես կոշիկի նորոգումը, ավտոտրանսպորտային միջոցների տեխնիկական սպասարկումը, տան նորոգումը և կառուցումը, գյուղատնտեսական արտադրանքի վերամշակումը և այլն։ Կլիմայական տաք գոտիներում սպասարկումների նշված տեսակներից շատերի պահանջարկի նկատմամբ սեզոնայնության ազդեցությունը նվազում է։

Բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման բարելավմանը, մարդկանց կենսամակարդակի բարձրացմանը մեծապես կնպաստի ԽՍՀՄ-ում ծավալված անհատական աշխատանքային գործունեությունը, որը հնարավոր դարձավ հատուկ օրենքի ընդունումից հետո։ Այն, առաջին հերթին, նպատակամղված է հանրօգուտ գործունեության մեջ աշխատանքային ռեսուրսների առավել լրիվ ներգրավմանը, մարդկանց ձեռներեցության զարգացմանն ու շահագրգռության բարձրացմանը, լայն սպառման ապրանքներով և ծառայություններով բնակչության լավագույնս ապահովմանը։ Կենցաղսպասարկման բնագավառում անհատական աշխատանքային գործունեությունը հանգում է բնակչությանը վճարովի ծառայություններ մատուցելուն, ավանդական այնպիսի արհեստների պահպանմանը, ինչպիսիք են դերձակությունը, կոշկակարությունը, ձեռագործ ասեղնագործությունը, գորգագործությունը, կահույքագործությունը, բրուտագործությունը և այլն։ Սակայն անհատական աշխատանքային գործունեության ձևերը սահմանափակված չեն և կարող են լրացվել տվյալ շրջանում զբաղմունքի առավել տարածված տեսակներով և կենցաղային ավանդույթներով։ Այցեգործական ընկերությունների նկատմամբ բնակչության հարաճուն պահանջարկի հաշվառմամբ լայն տարածում են գտել

կացարանների, այգետնակների կառուցումը, դրանց նորոգումը, կահավորումը և բարեկարգումը։ Կենցաղային ծառայությունների ցանցի մեջ են մտցվել ավտոմեքենաների և տրանսպորտային այլ միջոցների նորոգումն ու տեխնիկական սպասարկումը, անձնական ավտոմեքենաներով քաղաքացիների տեղափոխումն ու սպասարկումը։ Գործունեության ձևերից է նաև խնամքը զառամյալների և անաշխատունակ քաղաքացիների նկատմամբ։

Անհատական աշխատանքը կարող է ծանրակշիռ հավելում դառնալ հասարակական արտադրությանը։ Այն հնարավորություն կտա հասնելու ապրանքների առատության, կհարստացնի տեսականին։ Անհատական աշխատանքային գործունեության զարգացումը կբարձրացնի բնակչության զբաղվածությունը։ Հիմնական աշխատանքից ազատ ժամանակ դրանով կարող են զբաղվել չափահաս քաղաքացիները, ինչպես նաև տնային տնտեսուհիները, հաշմանդամները, թոշակառուները, ուսանողներն ու աշակերտները։ Այս տեսակետից հանրապետությունը բավական ռեզերվներ ունի։ Թոշակառուների թիվը հասնում է 436 հազարի, բուհերի և տեխնիկումների ցերեկային բաժինների ուսանողներինը՝ մոտ 100 հազարի։

Հանրապետությունում լայն հնարավորություններ են ստեղծվում անհատական աշխատանքում մարդկանց ներգրավման համար։ Զարգանում են գործունեության ճկուն ձևերը, հատկապես տնայնագործությունը, որը կնպաստի բնակչության շրջանում արհեստների և ծառայությունների ազգային տեսակների, մասնավորապես կարպետների, խսիրների, ջեջիմների պատրաստման ավանդույթների վերականգնմանը։ Այս իմաստով հարկ է առանձնացնել բրուտագործությունը, որը վերջին ժամանակներս լայնորեն տարածվել է հանրապետությունում։

Բնակչության կենցաղային սպասարկման մեծ հնարավորություններ ունեն կոոպերատիվները, որոնք ի հավելումն կենցաղային սպասարկումների ձեռնարկությունների գործող պետական ցանցի, կարող են մատուցել մեծ պահանջարկ վայելող ծառայություններ, ճկունորեն արձագանքել պահանջմունքների փոփոխությանը։ Հանրապետությունում արտադրական և սպասարկումների ոլորտների կոոպերատիվները մասնագիտանում են, առաջին հերթին, ժողովրդական սպառման ապրանքների պատրաստման և իրացման, բազմատեսակ վճարովի ծառայությունների մատուցման, ինչպես նաև արտադրատեխնիկական արտադրանքի թողարկման և վաճառքի, բնակչության, ձեռնարկությունների ու կազմակերպությունների համար աշխատանքների կատարման մեջ։ Նրանց առաջարկած ծառայությունների շրջանակը, ի թիվս այլոց, ներառում է այգեգործական-բանջարաբուծական և տնամերձ հողամասերի բարեկարգում, անձնական օգտագործման տրանսպորտային միջոցների տեխնիկական սպասարկում, անհատական պատվերներով մետաղյա իրերի և կահույքի պատրաստում ու նորոգում, զառամյալների և հիվանդների խնամք, ինչպես նաև միջնորդական և այլ բնույթի գործունեություն։

Կոոպերատիվ շարժումը կոչված է բացահայտելու ստեղծագործական աշխատանքի հսկայական պոտենցիալ հնարավորությունները, դրա աճող դերը երկրի սոցիալ-տնտեսական զարգացման գործում, արագացնել տնտեսական կյանքի դեմոկրատացման պրոցեսը, նոր ազդակ հաղորդել կոլտնտեսային հարաբերություններին, պայմաններ ստեղծել կոոպերատիվներում բնակչության լայն խավերի ներգրավման համար։ Կոոպերատիվ գործունեությունն ուղղված է սննդամթերքի, ժողովրդական սպառման ապրանքների, արտադրատեխնիկական բազմազան արտադրությունների, աշխատանքների և ծառայությունների նկատմամբ բնակչության ու ժողտնտեսության հարաճուն պահանջմունքների ամենալայն բավարարմանը։

1988 թվականի դեկտեմբերյան երկրաշարժի հետևանքով, Լենինականում, Կիրովականում, Սպիտակում, Ստեփանավանում, էպիկենտրոնին հարող մյուս շրջաններում ավերվեցին ոչ միայն զգալի թվով բնակելի, հասարակական, արտադրական շենքեր և կառույցներ, այլև բնակչության կենցաղային սպասարկման օբյեկտներ։ Տարերային աղետը տասնյակ հազարավոր մարդկանց կյանք խլեց։

Երկրաշարժի հետևանքների վերացման նպատակով մոբիլիզացվել են բոլոր միջոցները։ Ամբողջ երկրից աղետի գոտի են եկել շինարարական ջո-



կատներ, բերվել մեքենաներ, շինարարական մեխանիզմներ, հավաքովի տնակներ, ժամանակավոր վագոն-կացարաններ, շինանյութեր, տարբեր սարքավորումներ։ Դեռևս դանդաղ են իրականացվում կենցաղսպասարկման օբյեկտների վերականգնման աշխատանքները, քանի որ աղետի պատճառած վնասն այնքան մեծ է, որ հիմնական ուժերն առաջին հերթին ուղղվում են բնակարանների շինարարությանը։ Չէ՞ որ տուժած շրջաններում անօթևան է մնացել ավելի քան 500 հազար մարդ։

Բնակչության կենցաղային սպասարկման բարելավմանն է ուղղված տնտեսավարման նոր եղանակների ներդրումը ճյուղում։ Ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության, բարձր որակի և լայն տեսականու ծառայությունների նկատմամբ պահանջարկն առավել լրիվ բարելավելու գործում նրանց պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով վերակառուցվում է գործունեության ամբողջ մեխանիզմը։ Տնտեսավարման նոր պայմանները էականորեն մեծացնում են ձեռնարկությունների շահագրգռությունը աշխատանքի վերջնական արդյունքների հարցում։ Դրանք պետք է ձեռք բերվեն պլանավորվող ցուցանիշների նկատելի կրճատման, նորմատիվային կայուն հիմքի վրա գործունեության մի շարք առաջատար ուղղությունների ձևավորման, վաստակած միջոցների զարգացման և աշխատանքի խթանման համար օգտագործելու նպատակով կոլեկտիվներին լայն իրավունքներ տրամադրելու ճանապարհով։

Մարդկանց շահագրգռության ու պատասխանատվության բարձրացմանն ուղղված միջոցառումների իրականացումը հնարավորություն կտա բարելավելու աշխատանքների որակը, խստորեն պահպանելու պատվերների կատարման ժամկետները, ընդլայնելու մեծ պահանջարկ վայելող ծառայությունների ծավալը, առանձնապես գյուղական վայրերում արագորեն զարգացնելու կենցաղսպասարկման ձեռնարկությունները։ Ամենուրեք կոմպլեքսային սպասարկման կազմակերպումը, աշխատանքի կուլտուրայի ձեռքբերումը, գործունեության առաջադիմական ձևերի ներդրումը, տնտեսավարման նոր եղանակների կիրառումը նկատելիորեն կընդլայնեն կենցաղսպասարկման սոցիալական ֆունկցիան, կամրապնդեն նրա դերը ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում։

---

# ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱՐՁԱԿՆԵՐԸ

**Վ. ՇԱՀԻՆՅԱՆ**

**ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ,** պարենային պրոբլեմի լուծման ճանապարհին բոլոր կողմերով իր առավելություններն է դրսևորում վարձակալական կապալը: Նույնիսկ նրանք, ովքեր գյուղատնտեսության հետ որևէ առնչություն չունեն, այսօր սիրով կապվել են գյուղաշխարհի կյանքին ու իրենց մասնակցությունն են բերել մարդու և հողի դաշինքը ամրապնդելու, մթերքների արտադրությունն ավելացնելու գործում:

Հոկտեմբերյանի կուսշրջկոմում գովեստով խոսեցին բազմաթիվ վարձակալների մասին և ասացին, որ նրանցից երկուսը՝ ինժեներ Արշավիր Աղաջանյանը և մանկավարժ Անդրանիկ Ծահբազյանը, համարձակ ձեռնարկումների շնորհիվ հասել են գոհացնող արդյունքների:

...ԱՐԳԱՎԱՆԴԻ հեկտարներն այնքան էլ արգավանդ չեն: Մարդիկ՝ հանձնոտ ու աղակալած տարածքները քրտնաջան աշխատանքով մի կերպ մելիորացրել և օգտագործելի են դարձրել: Մարտյան պլենումից անմիջապես հետո, երբ կոլտնտեսության կոմունիստները քննարկում էին իրենց անելիքները, խոսք խնդրեց երիտասարդ կոմունիստ Արշավիր Աղաջանյանը.

— Կարծում եմ, նայելով մեր տնամերձներին, ապա կոլտնտեսության այգիներին ու դաշտերին, հասկանալի կդառնա, թե ինչու նույն հողն ու ջուրը տարբեր արդյունքներ են տալիս: Պարզ է՝ նյութական ցածր շահագրգռության հետևանքով հանրային հեկտարները չեն մշակվում ինչպես հարկն է, հատույցն էլ լինում է ոչ բավարար:

— Ի՞նչ ես առաջարկում,— ձայն տվեցին ժողովականներից ոմանք:— Թե որ հող մշակող լինեիր, այդպես չէիր խոսի:

— Ճիշտ է, մասնագիտությամբ ես ինժեներ եմ, բայց դա չի նշանակում, թե հող չեմ սիրում: Ընդհակառակը, վնռել եմ հող վարձակալել և, շատ չի անցնի, կհամոզվեք, որ այն մշակելու համար պարտադիր չէ հողագործ լինել...

Շատ չանցած Արշավիրը կոլտնտեսության հետ պայմանագիր կնքեց և 50 տարով ստանձնեց 6,3 հեկտար հողի մշակությունը:

Սկզբում, ինչպես միշտ է լինում, դժվարությունները շատ էին: Տարիներ շարունակ անմըշակ, մոռացված տարածքներն արդեն «վայրենացել էին»: Հզգատար ձեռքեր, համառություն և համբերություն էին պետք: Իսկ նման հատկանիշներով Արշավիրն, իրոք, օժտված է: Խորհրդակցեց մյուս վարձակալների՝ Մկրտիչի, Էդիկի, Խաչիկի հետ և համատեղ գտան, որ նախ անհրաժեշտ է հողը փրկել «ոտարացումից»: Հարկ եղավ աշխատել մինչև կեսգիշեր, հաճախ էլ՝ լուսարձակների լույսով: Կարճ ժամանակում այդ տարածքներից հավաքվեցին մշակությանը խանգարող քարերը, կրկնավարից հետո այստեղ փոխադրվեց 35—40 տոննա գոմաղբ և սկսվեց հարթեցման ու տեղագծման աշխատանքը: Արշավիրի հողակտորը այսօր դարձել է ծաղկած այգեստան: Դժվար է հավատալ, որ այսքան կարճ ժամանակամիջոցում կարելի է ստեղծել կանաչին տվող մի վիթխարի տարածք: Մարդկային կամքի և աշխատասիրության շնորհիվ ինչե՞ր ասես, որ չի կարելի անել: Ահա խորդենու փարթամորեն աճող թփերը: Նրանց բույնքը տարածվել է շրջակայքում: Շարքերը մաքուր են, խնամքով ոռոգված, բուկլից արած: Իսկույն երևում է, որ հոգատար ձեռք է կպել նրանց, ժամանակին քաղհանվել ու ջրվել, պարարտացվել է, մոլախոտերը հեռացվել: Համագյուղացիները կշտամբանքով՝ կես լուրջ, կես կատակ դիմում են Արշավիրին.

—Այ տղա, մի մարդավարի բան չկար, որ ցանեիր, բռնեցիր ու խորդենի դրիր:

— Էս տնաշենը էնենց բան ա ցանել, որ, ոչ ուտել կլինի, ոչ գողանալ...

Կատակն այսպես թե այնպես իր մեջ բավականին ճշմարտություն է պարունակում: Պարզվում է, որ ինժեներ Արշավիր Աղաջանյանը հենց այնպես, քմահաճույքի համար չէ, որ վարձակալած զգալի տարածության վրա խորդենի է անեցնում: «Նոր յուրացրած հողը խորդենի անեցնելու համար միանգամայն նպատակահարմար է: Բանն այն է, որ այս կուլտուրան խիստ զգայուն է օրգանական և հանքային նյութերի նկատմամբ, իսկ պարապ մնացած հողում դրանց քանակը զգալիորեն շատ է: Եվ երկրորդ, յուրաքանչյուր վարձակալ առաջին հերթին պետք է տնտեսությունից գլուխ հանի, կարողանա իր օգուտն ու վնասը վաղօրոք տեսնել, չէ՞ որ մինչև այս հեկտարները դարձրի մշակելի, բավականին ծախսեր կատարեցի: Իսկ դրանք կարելի է փոխհատուցել միայն հողը արդյունավետ օգտագործելով: Խորդենին բավականին թանկարժեք կուլտուրա է, այն ժողովրդական տնտեսությանը խիստ անհրաժեշտ է, հետևաբար գտնում եմ, որ ճիշտ եմ վարվել,— հայացքը կանաչ դաշտին հառած պատմում է Արշավիրը: Բայց վերձակալական կապալը չպետք է հասկանալ միայն օգուտի և վնասի միջոց: Կուսակցության ագրարային քաղաքականության, իրականացվող միջոցառումների միակ նպատակը երկրում պարենամթերքի և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման պրոբլեմների լուծումն է: Ահա թե ինչու ինչ էլ ցանելու կամ անեցնելու լինենք, առաջին հերթին պարտավոր ենք հոգալ, որ մարդկանց սեղանների տեսականին բազմազան լինի»—իր դատողություններն է անում վարձակալը:

Շրջում ենք Արշավիր Աղաջանյանի մշակած հեկտարներում, ծանոթանում նրա արած-դրածին: Ամեն շարքում կարգ ու կանոն, աչք շոյող առողջ թփեր, մայրացած բույսեր: Ձմերուկի, պոմիդորի, վարունգի և բանջարաբոստանային մյուս բույսերի հեկտարների եզրերին խնամքով շարված արկղներ կան: Վարձակալը նախապատրաստվում է իր աշնանային քննաշրջանին, որը նրան առատություն է խոստանում...

Դեպի մեզ է գալիս արևկեզ դեմքով միջին տարիքի մի կին: Իսկույն ճանաչում եմ նրան. ՀԽՍՀ Գերագույն խորհրդի դեպուտատ Գոհարիկ Հովհաննիսյանն է, արգավանդցիների սիրելին: Պարզվում է, որ Գոհարիկը աշխատանքից հետո եկել է իրենց վարձակալած հողը, որտեղ նրան սպասում է ամուսինը՝ Արշավիրը: Պոմիդորի շարքերում թփերից մի քանիսը թեքվել էին ակոսների մեջ, ջանասիրությամբ և արագ սկսում է դրանք ուղղել, իսկ Արշավիրը զննում է՝ իր սեփական տրակտորը և այդ ընթացքում էլ շարունակում դատողությունները. «Պատրաստի, պարարտ հողում ինչ էլ ցանես, մի բան կստանաս: Կարևորն այն է, որ հազարամյակներ ձեռք չտվածը մտնի շրջանառության մեջ: Տնտեսությունում աշխատուժի կարիք կա, կարող էի վարձել այգիներից մի տասը-տասնըհինգ հեկտար, պտղատուներ, արգավանդ հող, բայց չգնացի այդ հեշտ ճանապարհով: Որոշեցի ապացուցել, որ անմշակ հող չկա, բոլոր հողերն էլ մշակելի են, միայն անհրաժեշտ է գործիմացություն և արտացավ աշխատանք, հոգածություն, նախաձեռնություն»:

Շրջխորհրդի գործկոմի նախագահ Մեխակ Մխիթարյանի, ՇԱԱՄԻ-ի նախագահ Գավրոշ Հովհաննիսյանի հետ զրուցելիս համոզվեցի, որ Արշավիրի նման հող վարձակալողները շատ են: Պարզապես նրանցից ոմանք ուղղակի վախենում են, որ կանցնի ևս մեկ-երկու տարի, և այս որոշումը ևս կխեղաթյուրեն, կտեղայնացնեն, ու մարդիկ կընկնեն բյուրոկրատների ձեռքը: Բանն այն է, որ երբ իսկական հողագործները քրտնաջան և հետևողական աշխատանքով մըթերքներ են արտադրում, որոշակի եկամուտ ըստանում, ոմանց թվում է, թե կուլակությունը վերականգնվում է: Մինչդեռ սխալ տնտեսական քաղաքականության հետևանքով որքա՜ն անմըշակ հող մատնվել ու մատնվում է անուշադրության: Ահա թե ինչու, երբ կուսժողովը մարտյան պլենումի որոշումների լույսով քննարկում էր արգավանդցի կոմունիստների խնդիրներն ու անելիքները, շատերի թվում ձայն խնդրեց նաև Արշավիր Աղաջանյանը. «Տնտեսական մեխանիզմը գործել ու գործում է այնտեղ,—ասում է կոմունիստը,— ուր աշխատանքի նկատմամբ ցուցաբերում են խելացի մոտեցում: Վերջապես պետք է հասկանալ, որ ինչպիսի իրավիճակներում էլ որ ապրելու լինենք, մեզ մթերքներ են անհրաժեշտ, բայց ոչ ցանկացած գնով: Կուսակցության ագրարային քաղաքականության նպատակն այն է, որ առատությամբ փակվի աճող գների ճանապարհը, իսկ այդ ճանապարհը վարձակալական կապալն է»:

Այս ճշմարիտ և հիմնավոր կարծիքը կիսեցին շատերը, բայց ոչ բոլորի խոսքն ու գործն են միասնական: Արշավիրի խոսքի ու գործի միասնության համար է, որ նրան ներգրավում են կուսակցական-հասարակական աշխատանքում, շատ բան վստահում: Այսպես, ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեն նրան հաճախ է հանձնարարություններ տալիս, խընդրում ուսումնասիրել այս կամ այն հարցը: Եվ, որպես կանոն, երիտասարդ ինժեները իրեն հատուկ բարեխղճությամբ կատարում է ամեն մի հանձնարարություն: Ընթացիկ տարվա լավագույն գործերից մեկն այն է, որ ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման անցնելու կապակցությամբ ուսումնասիրվեց որոշ կոլեկտիվ և պետական տնտեսությունների մեքենատրակտորային հավաքակայանների պատրաստականության վիճակը: Հարցը, ինչ խոսք, կարևոր էր: Խմբում ընդգրկելով ինժեներ-մեխանիկ Արշավիր Աղաջանյանի նման գործիմաց և օբյեկտիվ մարդու՝ վերահսկողության շրջկոմը ուսումնասիրությունններն ավարտեց ժամանակին, պարզեց, որ դեռ ոչ բոլոր տեղերում է կանաչ ճանապարհ հարթվել նոր աշխատաեղանակի համար:

...Ես նայում եմ արևկեզ դեմքով ու եռանդով լեցուն առաջին համարձակներից մեկին՝ Արշավիր Աղաջանյանին, և հավատում, որ նրա արդար քրտինքը կկաղեցնի անգամ ամենակարծր հողերը: Նայում եմ, թե նա ինչպիսի սիրով

---

ՇԱՀԻՆՅԱՆ ՎԱՂԱՐՇԱԿ ՂԱԶԱՐԻ— ԽՍՀՄ ժուռնալիստների միության անդամ։

է վերաբերվում մայր հողին, ինչ բարությամբ է ոռոգում պապակ հեկտարները և ինչպես է ամրանում նրա դաշինքը դարավոր խաղողի հետ: Ու մտովի հաշվում եմ՝ ինչպիսի այգեստան կդառնան այս վայրերը 10—20 տարի հետո: Վերջում հարցնում եմ.

—Արշավի՛ր, 50 տարով հող վարձակալելը ճի՞շտ է:

—Իհարկե, ճիշտ է: Իմ երեխաները պետք է իմանան, որ այստեղ ես քրտինք եմ թափել, այս հողի վրա պիտի աշխատել սովորեն և մշակեն ինչպես հարկն է: Այդ ամենի համար 50 տարին ինչ է որ...

***

Շրջխորհրդի գործկոմում ավելի երկար, ավելի մանրամասնորեն պատմում են մյուս վարձակալի՝ մանկավարժ Անդրանիկ Շահբազյանի մասին: Մեկնում ենք Արաքս: Կուսկազմակերպության քարտուղար Ջիվան Ղուկասյանը ցույց է տալիս Սարդարապատի հուշահամալիրի հյուսիս- արևմտյան հատվածի վերջնագիծը և ասում.

—Միրանանոցից և խաղողի այգիներից հետո սկսվում են վարձակալած տարածքները:

Մենք ուղղություն ենք վերցնում դեպի հյուսիս և քիչ անց, դեռ տեղ չհասած, դաշտամիջյան ճանապարհին հանդիպում առաջին բեռնատարին: Սկզբում կարծում էի տնտեսության մեքենաներից կլինի, բայց պարզվում է, որ ղեկի մոտ նստածը վարձակալն է, և բեռնատարն էլ՝ իր անձնականը: Ի տարբերություն Արշավիրի, Անդրանիկը հողը վարձակալել է 15 տարով: Այստեղ գերակշռող մասը դեղձի երիտասարդ այգիներ են՝ շուրջ 14 հեկտար, երկու հեկտար խաղող և նույնքան էլ անմշակ հող, որտեղ մշակում է բոստանային կուլտուրաներ: Այս տարածքներն ինձ ծանոթ են վաղուց: Երբեմնի ամայի այս վայրերում մի քանի տարի առաջ խմելու ջուր անգամ չէր ճարվում: Մարդկային կամքի ու լավատեսության շնորհիվ այս եզերքում շատ բան է փոխվել: Փորվել են ջրհորներ, խորքային պաշարները մղիչ պոմպերով վեր են հանվում, և անապատը աստիճանաբար նահանջում է: ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թ. մարտյան պլենումից հետո տնտեսական մտածողություն հանդես բերեցին շատերը, բայց ոչ ոք չէր սպասում, որ վարձակալական հարաբերությունները կընդգրկեն լայն ոլորտներ, ընդհուպ մանկավարժների: Տնտեսության դիրեկտոր Գեղամ Փոքրաչյանը կապալայիններին մեջ բարձր է գնահատում Ա. Շահբազյանի գործունեությունը, քանի որ ինչպես ասում է նա, «մանկավարժը հիմնարար, կապիտալ գործ է անում»: Այն, որ դեղձի այգիները գտել են իրենց իսկական տիրոջը և եղեգներից ու մոլախոտերից բերևացած շունչ են քաշում մենք համոզվեցինք, երբ շրջում էինք մաքուր շարքերում: 14 հեկտար, հեշտ է ասել: Կանցնի ևս ոչ շատ ժամանակ, և այս աչքի սահման ծածկող ծառաստանը այնքա՜ն դեղձ կտա, որ լիուլի կբավարարի ինչպես պայմանագրով նախատեսվածը, այնպես էլ վարձակալների պահանջները: Կփոխհատուցվեն այն ծախսերը, որոնք կատարվել են այստեղ: Աշոտ Իսկանդարյանի, Յուրիկ Տոնոյանի, Հովհաննես Շահինյանի, Սերյոժա Մկրտչյանի ընտանիքները, որոնք վարձակալական առաջին ձեռնարկներն են այս եզերքում, աշխատում և արարում են հավատի այն հաստատ գիտակցումով, որ նորմայի, որակի, շատի և քչի գաղափարները համամասնաբար միաձուլվել են: «Այս գործը դու պիտի անես, այս գործը իմ սրտով չէ» սկզբունքը չկարողացավ մուտք գործել վարձակալների մեջ: Նրանք աշխատում էին մայիսյան տոն օրերին, շաբաթ, կիրակի, աշխատանքային օրվանից ավելի երկար, քանզի նրանցից յուրաքանչյուրը քաջ գիտակցում է, որ լավ ապրելու, ուրիշի ձեռքը չնայելու միակ գաղտնիքը քրտնաջան աշխատանքի և առատության մեջ է: Իհարկե, այս ամենին տոն տվողը և գործերի կազմակերպիչը գլխավոր վարձակալն է՝ Անդրանիկը: «Անդրանիկ»,—նշանակում է, թե առաջնեկ: Դե նա էլ որոշել է առաջինը լինել»—կատակում են ընկերները:

Ասում են, թե մարդու մասին պետք է դատել նրա արած-դրածով, նրա գործերով: Բազմիցս ստուգված այս ճշմարտությունը խիստ բնորոշ, տիպական է վարձակալների կոլեկտիվի, հատկապես կոմունիստ Ա. Շահբազյանի համար: Այնտեղ, ուր այսօր վարունգի, ձմերուկի, պոմիդորի փարթամ թփեր են, այդ տարածքները տեսնողը առնվազն անմտություն կհամարեր, թե այստեղ կարելի է ինչ-որ բան ցանել, ինչ-որ բան ստանալ: Ժողովրդական առածը հուշում է, որ «Լավ է մեկ անգամ տեսնել, քան հարյուր անգամ լսել»: Ահա թե ինչու ավելի լավ է մեկ անգամ լինել այս վայրում՝ համոզվելու համար, թե ինչպիսի համառ ջանքերով են մարդիկ բերք ու բարիք արարում: Այս եզերքը այցելուին դարձնելը մեկ ուրիշ խորհուրդ էլ ունի: Սա յուրահատուկ այգի է, հիշատակի հավերժացում բոլոր նրանց, ովքեր չհասցրին տեսնել սարդարապատյան արշալույսը...

Տարիներ, աշխատանք, նվաճումներ: Ինքը՝ վարձակալը, հայրենադարձ է, 1947-ին Իրանից այստեղ է եկել նաև Շահբազյանների ընտանիքը: Մանկության տարիները ուրախ չեն եղել: Մայրը խնամում էր երեխաներին, դժվարությունները շատ էին, հետպատերազմյան տարիների հոգսերը՝ նույնպես: Ժամանակն անցավ աննկատ, կյանքում շատ բան փոխվեց: Անդրանիկն ընտրեց մանկավարժի մասնագիտությունը, աշխատեց հարազատ ավանի դպրոցում՝ այնտեղ, ուր տարիներ շարունակ սովորել էր ինքը: Մանկավարժությունը և սերը դեպի աշխատանքը նոր հեռանկարներ բացեցին երիտասարդի առջև: Լինելով կոլեկտիվի ղեկավար՝ նա բոլորից պահանջում էր գիտելիքների հարուստ պաշար տալ աշակերտներին, և այս ամենը այն հաշվով, որ պատանիներն ու աղջիկները կարողանան կյանքում ճիշտ կողմնորոշվել: Թե կյանքն ում ուր կտանի, և թե ով ինչ մասնագիտություն կընտրի, սա հարցի մի կողմն է: Ա. Շահբազյանը գտնում է, որ կարևորն այն է, որ նրանք լավ մարդ դառնան, ունենան սեփական համոզմունքներ, կարողանան գնահատել աշխատանքն ու աշխատավոր մարդուն: Իսկ այս ամենի նախասիրությունների ու հմտությունների, դաստիարակման լավագույն ձևերից, միջոցներից մեկը հանրօգուտ աշխատանքն է: Երբ աշակերտը խուսափում է դպրոցամերձ հողամասում, արհեստանոցում աշխատելուց, արտադրական ջոկատում ընդգրկվելուց, ապա նրա մեջ ձևավորվում է ուրիշի հաշվին ապրելու, ծուլանալու հատկություն, նա հասարակության և իր համար դառնում է պատիժ, ձևավորվում է ապագա պորտաբույծը, հանցագործը: Ահա, թե ինչու կոմունիստ մանկավարժի աշխատանքային բոլոր տարիների նպատակն է եղել հասարակության, ժողովրդի համար դաստիարակել արժանի, աշխատասեր մարդիկ: Քիչ չեն եղել դեպքերը, երբ ծնողը եկել է դպրոց, «միջնորդել», որ երեխային ազատեն աշակերտական բրիգադում աշխատելուց:

—Մի անգամ,—հիշում է Ա. Շահբազյանը,— ինձ մոտ եկավ ավանի բնակիչներից մեկը և ասաց. «Մենք մեր որդուն տանը չենք թողնում, որ մի բաժակ վերցնի ու մեկ ուրիշ տեղ դնի, դուք նրան աշխատեցնում եք, ի՞նչ իրավունքով» և բարկացած ավելացրեց, որ մեզ՝ մանկավարժներիս, դատի կտա: Մենք հարգեցինք նրա խնդրանքը, որդուն ազատեցինք ջոկատում աշխատելուց: Հաջորդ օրը պատանին եկավ դպրոց, ներողություն խնդրեց հոր համար և աշակերտական բրիգադի հետ մեկնեց այգի: Հիմա տղան մեր ավանի ամենահարգված մարդկանցից է, ճանաչված աշխատող:

Այո՛, դաստիարակությունը եղել ու մնում է այն կարևոր միջոցը, որը բոլոր հանգամանքներում պետք է ճիշտ կազմակերպել, աչքաթող չանել ոչինչ, քանզի այս գործում մանրուքներ չկան: Եվ բոլորովին էլ պատահական չէ, որ մանկավարժի ընտանիքը օրինակելիներից մեկն է Արաքսում:

Վարձակալական պայմանագիրը կնքելիս ոմանք հարցրին Ա. Շահբազյանին, թե՝ դպրոցն ու՞ր, հող մշակելը՝ ուր: Այն, որ մանկավարժությունը և գյուղատնտեսությունը տարբեր բնագավառներ են, դա ճիշտ է: Բայց ճշմարտություն է նաև այն, որ մանկավարժի այս քայլն ավելի խոր իմաստ ունի: Երկրում կատարվող իրադարձությունների կողքով ոչ ոք իրավունք չունի անտարբեր անցնել: Վարձակալական գործունեության շնորհիվ այսօր մենք ձգտում ենք արմատական բեկում մտցնել գյուղատնտեսական արտադրության մեջ: «Սա համաժողովրդական գործ է, մանավանդ գյուղաբնակների համար,— ասում է վարձակալը,—այսօր մեր խանութներում, մեր սեղաններից պակասել են կենսականորեն անհրաժեշտ մթերքներից շատերը: Ո՞վ է մեղավոր, եթե ոչ մենք »:

Հետաքրքրական խորհրդածություններ է անում վարձակալ Ա. Շահբազյանը: «Անգնահատելի է հողի՝ հարստության այդ հրաշալի աղբյուրի դերը մարդկության գոյատևման համար, — ասում է նա և պարզում միտքը:— Երկիր մոլորակի վրա երբ ձևավորվեց կյանքը, նախամարդն իր ձեռքը վերցրեց առաջին ինքնաշեն գործիքները և սկսեց աշխատել հողի վրա, ապրուստի միջոց հայթայթել: Հազարամյակների ընթացքում հողը եղավ ու մնաց մարդու անդավաճան, անփոխարինելի բարեկամը: Իսկ մա՞րդը: Մարդն այդ բարեկամի հետ բարեկամաբար չվարվեց, չպահպանեց նրան... Հետևանքը եղավ այն, որ գիտատեխնիկական առաջընթացի զարգացման բոլոր ժամանակներում մեծացավ գրոհը հողի վրա, մեծ քիմիան՝ թունաքիմիկատների բոլոր տեսակները, էրոզիան, հողատարման երևույթները, արդյունաբերական թափոններն ու կեղտաջրերը հողից խլեցին հողի ուժը, ամլացրին, դարձրին սակավ պտղաբեր: Պակասեց հողի երկունքը, դրա համար էլ ոչ մի մրգից ու մթերքից, հացից անգամ հացի համ չենք առնում: Հող վարձակալելը ամոթ չէ, ամոթ է, երբ հող ունես ու սոված ես»:

Իսկապես, կոմունիստը այլ կերպ դատելու իրավունք չունի: Մարդու դիրքորոշումով, հասարակական, քաղաքական ակտիվությամբ է պայմանավորված նրա տեղն ու դերը հասարակության մեջ: Կուսկազմակերպության ակտիվիստներից է Ա. Շահբազյանը: Ինչ հանձնարարություն էլ ստանում է, կատարում է բարեխղճորեն, բազմակողմանի ուսումնասիրում բոլոր տարբերակները: Իսկ երբ նա հաշվետվությամբ հանդես է գալիս, բոլորը համոզվում են, որ նրա աչքից ոչինչ չի վրիպել: «Կարևորն այն է,— ասում է նա,— որ հարցը նախապատրաստելիս շտապողականություն հանդես չբերվի, այն ուսումնասիրվի լիարժեք կերպով: Սակայն սա չի նշանակում, թե՝ «հանձնարարություն է, երբ ուզենամ, այն ժամանակ էլ կկատարեմ»:

Ո՛չ, գլխավորը պետք է [illegible]մոռանալ, որ բոլոր նամակների, [illegible]ագումների, զեկույցների հետևում կանգնած է մարդը: Իսկ մարդուց թանկ մեզ համար ոչինչ չկա: Հաջողության առաջին նախապայմանն այն է, որ կարողանաս մարդուն ուշադիր լսել, եթե նրա ասածները վերամբարձ են կամ քիչ հավաստի, չպիտի արհամարհել: Ուշադիր վերաբերմունքը միշտ էլ մղում է անկեղծ երկխոսության, պարզվում է իսկական ճշմարտությունը»:

Բազմաթիվ փաստերից ահա մեկը: Կուսկազմակերպությունը հանձնարարել էր նրան ինֆորմացիա պատրաստել այն մասին, թե ինչպիսին կուզենային տեսնել բնակիչներն իրենց ավանը 1990 թվականին: Առաջին հայացքից, թվում է, թե հարցը պարզից էլ պարզ է, որովհետև այն նախապատրաստող խմբի բոլոր անդամներն էլ նույն ավանից էին: Շահբազյանը խմբի անդամներին խնդրեց, որ յուրաքանչյուրը վերցնի մեկերկու փողոց և համապատասխան հարցաթերթիկ բաժանի բնակիչներին: Երկու օր անց բոլոր հարցումների արդյունքները ուսումնասիրելուց հետո պարզվեց, որ բնակչությունը պահանջում է գազիֆիկացնել այն բնակարանները, որոնք մինչև այժմ բնական գազ չունեն, ասֆալտապատել ավանի փողոցները, անցկացնել կոյուղի: Կոմունիստները գոհունակորեն ընդունեցին այս մասին Ա. Շահբազյանի հաշվետվությունը: Պետտնտեսության դիրեկտոր Գ. Փոթրաջյանի օգնությամբ արդեն լուծվել են այդ հարցերից մի քանիսը, իսկ այժմ ավանում բուկրվել է կոյուղու շինարարությունը: «Ա. Շահբազյանի ձեռներեցության, նրա ակտիվության և նախաձեռնության շնորհիվ մեր կազմակերպությունը շատ է շահում: Մեզ անհրաժեշտ են հենց այդպիսի մարդիկ՝ հայրենի բնակավայրի առօրյայով, մարդկանց հոգսերով ու պահանջմունքներով ապրող և ծագած հարցերը մինչև վերջ լուծող կոմունիստներ»,— ասում է կուսկազմակերպության քարտուղար Ջիվան Դոլխասյանը:

* * *

Ձմեռնամուտին կրկին հանդիպեցինք առաջին համարձակներին՝ կոմունիստ վարձակալներին: Պարզվեց, որ Արշավիր Աղաջանյանը 6,3 հեկտարից ստացել է այնքան եկամուտ, որքան տնտեսությունը 10-ի հեկտարից: Վարձակալի ձեռք բերած ցուցանիշները պերճախոս են: Խորդենու բերքատվությունը տնտեսության հետ համեմատած հեկտարից ավելի է եղել 20 ցենտներով, ծմերուկինը՝ 80, պոմիդորինը՝ 105, վարունգինը՝ 62:

Հաջողությունն ուղեկից է եղել նաև մյուս վարձակալին՝ Անդրանիկ Շահբազյանին, որը «Արաքս»-ի անմշակ տարածքներից ապահովել է 610 ցենտներ ծմերուկ, 110 ցենտներ պոմիդոր և բոստանային այլ կուլտուրաներ: Այս ցուցանիշները անհամեմատ բարձր են պետտնտեսության բոլոր բրիգադներում աշխատողների ձեռք բերածից, որոնք դեռևս փախենում են վարձակալությանը ընդառաջ գնալու: Այժմ վարձակալները խնամքով նախապատրաստվում են հնգամյակի եզրափակիչ տարվա գարնանը:



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ՆՐԱ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Հ. ԹԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ, ըստ Վլադիմիր Վերնադսկու դիպուկ արտահայտության, չնայած իրականացվում է գիտակից էակի՝ մարդու կողմից բնության վերափոխման ճանապարհով, սակայն ոչ միշտ է ծառայում նրա շահերին: Անհամակարգ և չպլանավորված միջամտությունը կենսոլորտում հանգեցնում է նրա դեգրադացիայի, բուսատեսակների ու կենդանիների ցեղերի, նույնիսկ նրանց առանձին համակեցությունների ոչնչացմանը: Մյուս կողմից, երկրի ընդերքի բնական հարստությունները, որոնք կուտակվել են միլիոնավոր տարիների ընթացքում, ենթարկվում են անվերադարձ շահագործման: Աղտոտվում են ջրային ռեսուրսներն ու մթնոլորտը, բուսական աշխարհը՝ սպառնալիքի տակ դնելով հասարակության հետագա գոյությունը: Այդ պատճառով մեր օրերում բնության պահպանության, նրա հետագա բարելավման ու հարստացման պրոբլեմը դարձել է մարդկության կարևորագույն հոգսերից մեկը:

Հանրապետությունում ներկայիս էկոլոգիական ծանր վիճակը ստեղծվել է տասնյակ տարիների ընթացքում՝ էկոլոգիական հարցերին բացարձակ ուշադրություն չդարձնելու, կամայականության և վարչարարության հետևանքով: Անբարենպաստ կացության ստեղծումը մեծապես պայմանավորված է նաև Հայաստանի արդյունաբերության համալիրին ոչ բնորոշ առանձին տեսակների զարգացման, մի շարք քաղաքներում ու բնակավայրերում էկոլոգիապես ոչ մաքուր ձեռնարկությունների տեղադրմամբ, բնական ռեսուրսների անհեռատես ու ոչ խնայողաբար օգտագործմամբ և նմանատիպ այլ գործոններով: Ոչ հեռու անցյալում հանրապետության քաղաքների շրջակայքում տեղադրված քիմիական արդյունաբերության օբյեկտները ներկայումս հայտնվել են քաղաքների համարյա կենտրոններում: Անցյալում թույլ տրված կոպիտ ու աններելի սխալներն այժմ ցանկանում են շտկել նոր սանիտարական գոտիների ստեղծմամբ, թույլատրելի արտանետումների չափի վերանայմամբ և էլի ինչ-որ այլ արդյունավետ միջոցառումներով, որոնք պահանջում են հսկայական անշահավետ կապիտալ ներդրումներ: Ինչո՞ւ ենք ուզում չտեսնելու տալ այդ ռեալ ճշմարտությունը, որը աղետալի վթարային վիճակ է ստեղծել հենց վերջին տասնամյակներում ինչպես ԽՍՀՄ-ում, այնպես էլ աշխարհի բոլոր մասերում, հատկապես արտադրության այնպիսի ճյուղերում, որոնք բնորոշ են նաև մեր հանրապետությանը: Չէ որ նման ճգնաժամային երևույթները ժամանակին ծանր հետևանքներ են ունեցել մարդկության համար:

Փոքր տարածք, զարգացած արդյունաբերություն ունեցող խիտ բնակեցված մեր հանրապետության համար կենսական խնդիր է բնության և մարդու փոխհարաբերությունների կանոնավորումը: Տեխնիկապես հզորացող և ազգաբնակչությամբ աճող Հայաստանում պետք է ժամանակի ու տարածության մեջ վերաբաշխել բնական ռեսուրսները, կարգավորել վերարտադրությունը:

---

*ԹԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ ՀԵՆՐԻԿ ՎԱՐԴԱՆԻ— ՀԽՍՀ բնության պահպանության պետական կոմիտեի նախագահ:*

Հանրապետության էկոլոգիական օրհասական կացությունը մեծ շարժում առաջացրեց ազգաբնակչության բոլոր խավերի շրջանում: Բացախոսության և հրապարակայնության պայմաններում հնարավոր դարձավ ազգաբնակչությանը տեղյակ պահել կատարվող դեպքերին: Չեռնոբիլյան վթարից և հանրապետության հյուսիսային շրջաններում տեղի ունեցած երկրաշարժից հետո ավելի ակնառու դարձան մեզ սպասվող վտանգի անչափելի սահմանները: Հաշվի առնելով ստեղծված վիճակի ահավորությունը, ՀԿԿ Կենտկոմը և կառավարությունը ձեռնամուխ եղան ազգաբնակչության վաղուց փայփայած երազանքի իրականացմանը: Մեկը մյուսի հետևից փակվեցին Հայկական ատոմակայանը և Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատը: Մինչ այդ փակվել էին Կիրովականի քիմկոմբինատի 6 արտադրամասերը, որը վերջնականապես վերապրոֆիլավորվեց:

Հաշվի առնելով «Նաիրիտ» ԳԱ միավորման արտադրության խիստ վտանգավորությունը մայրաքաղաքի համար, ՀԽՍՀ Գերագույն խորհրդի նստաշրջանը որոշեց 1990 թ. հունվարի 1-ից դադարեցնել միավորման գործունեությունը և այն դուրս բերել հանրապետության սահմաններից: Մինչ այդ կոմիտեն որոշում էր ընդունել միավորման առավել վտանգավոր արտադրությունները դադարեցնելու մասին:

Տարեկան հանրապետության բաց ջրավազաններն է թափվում 783 մլն խոր. մետր ջուր, որից մաքրման է ենթարկվում 313 մլն խոր. մետրը: Դրության բարելավման համար միութենական և հանրապետական կառավարությունները վերջին տարիներին ընդունել են մի շարք կարևոր որոշումներ, որոնց կատարման ընթացքը մշտապես հսկվում է ՀԽՍՀ բնության պահպանության պետական կոմիտեի կողմից: Այդ որոշումները հիմնականում վերաբերում են ջրապահպան օբյեկտների կառուցմանը և շահագործմանը, ինչպես նաև Սևանա լճի պրոբլեմների լուծմանը:

Ցավով պետք է նշել, որ ընդունված որոշումները կատարվում են չափազանց վատ և դրա հետևանքով մի քանի անգամ փոփոխվում են ջրապահպան օբյեկտների շահագործման հանձնելու ժամկետները: Բավական է ասել, որ Կիրովականի, Դիլիջանի, Էջմիածնի, Մասիսի, Ապարանի քաղաքային մաքրման կայանների շինարարությունը ձգձգվում է արդեն տասը տարուց ավելի: Երևանի աերացիայի կայանի շինարարությունը ֆինանսավորվում է խիստ անբավարար և նման տեմպերով շարունակվելու դեպքում այն կտևի տասնյակ տարիներ, մինչդեռ կառավարության որոշումով օբյեկտը պետք է շահագործման հանձնվի 1990 թվականին: Տասներեքերորդ հնգամյակում և մինչև 2005 թվականը ընկած ժամանակաշրջանում նախատեսվում է կառուցել մի շարք մաքրման կայաններ:

Մեր կոմիտեի ստեղծման օրից ջրային ռեսուրսների օգտագործման ֆունկցիաները համատեղ դրված են կոմիտեի և ջրային տնտեսության մինիստրության վրա: Ֆունկցիաների ոչ հստակ բաժանումը միայն վնաս է հասցնում Հայաստանի ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը: Եթե հաշվի առնենք աղբյուրներից փաստացի ջրառման քանակը, ապա հանրապետության բնակչությունը հիմնականում ապահովված է խմելու և տնտեսական նպատակների համար անհրաժեշտ ջրով: Սակայն իրականում այդ նույն քանակի ջուր բնակչությանը չի հասնում: Պատճառը ջրամատակարարման ցանցերի տեխնիկական անբավարար վիճակն է և օրվա կարգավորիչ ջրավազանների ծավալների փոքրությունը: Ոռոգման ջրի ռացիոնալ օգտագործման համար չկան անհրաժեշտ տեխնիկական պայմաններ: Ոռոգումը կատարվում է առուների միջոցով, հետևաբար ջրի կորուստները շատ մեծ են լինում:

Ինչպես նշվեց, հանրապետությունում մաքրվում է կեղտաջրերի մոտ 50 տոկոսը: Կառավարության որոշումների համաձայն, պետք է կառուցվեն կեղտաջրերի կենսաբանական և նախնական մաքրման կայաններ: Դա շատ ձեռնարկությունների հնարավորություն կտա անցնելու ջրօգտագործման շրջանառու համակարգի՝ բացառելով կեղտաջրերի թափվելը բաց ջրավազաններ: Անհրաժեշտ է բոլոր գետերի ավազանների համար ստեղծել կառավարման ավտոմատ, ինչպես նաև լաբորատոր հսկողության համակարգեր: Այս բոլորը մեծ պրոբլեմներ են, դրանք անհրաժեշտ է լուծել, թեև կպահանջվեն զգալի ֆինանսական ծախսեր:

Չնայած վերջին տարիներին ձեռնարկած միջոցներին, դեռ չի նկատվում Սևանա լճի էկոլոգիական վիճակի բարելավում: Մինիստրությունների և գերատեսչությունների կողմից ծայրահեղ անբավարար է կատարվում լճի ավազանում ջրապահպան օբյեկտների շինարարությունը: Օրինակ, «Հայգլխջրշինը» Որոտան գետի հունի մի մասի տեղափոխման կառույցի շինարարությունը պետք է ավարտեր 1985 թվա-



կանին, սակայն կավարտի միայն 1991 թ.: Նույն «Հայգլխջրշինը» դեռևս 1984 թվականին պետք է ավարտեր նաև Հերհերի, Հոկտեմբերյանի և մյուս ջրամբարների շինարարությունը: ՀԽՍՀ բնակարանային-կոմունալ տնտեսության մինիստրությունը 1985 թ. պետք է շահագործման հանձներ Ծովագյուղ—Ճորժա—Վարդենիս—Մարտունի—Կամո—Սևան կոյուղու կոլեկտորը, սակայն 1988 թ. սկսվել է միայն Կամո—Սևան հատվածի շինարարությունը, իսկ մյուս հատվածները դեռ նախագծվում են: Ծահագործման չեն հանձնված Ջերմուկ, Կամո քաղաքների կենսաբանական մաքրման կայանները:

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի 1989 թ. սեպտեմբերյան նստաշրջանի որոշման համաձայն ստեղծվել է հատուկ հանձնաժողով, որը զբաղվելու է Սևանի պրոբլեմներով: Կառավարության հանձնարարությամբ մենք ուսումնասիրել ենք Սևանի բոլոր էկոլոգիական խնդիրները, որոշվել են դրանց լուծման ուղիները: Այդ ծավալուն աշխատանքը կառավարության կողմից քննարկվելուց հետո նախատեսվում է մտցնել ընդհանուր համազգային էկոլոգիական ծրագրի մեջ:

Առանձնակի ուշադրություն է պահանջում Արարատյան դաշտի ստորերկրյա ջրերի պահպանման հարցը, որտեղ փորված հորատանցքերի ջրերը օգտագործվում են տարերայնորեն և ոչ արդյունավետ: Ընդերկրյա ջրերը անհրաժեշտ է օգտագործել ոռոգման ցանցերի միջոցով, ինչը կբացառի անտեղի կորուստները և կնպաստի Սևանա լճից ջրի բացթողումների կրճատմանը:

Հանրապետության ջրային ռեսուրսների հաշվեկշռում մեծ տեղ են զբաղեցնում ջրամբարները: Տասնչորս խոշոր ջրամբարների ընդհանուր ծավալը կազմում է 929,1 մլն խոր. մետր: Ջրամբարների տեխնիկական վիճակն անբավարար է, դեռևս ցածր է ոռոգման համակարգերի օգտակար գործողության գործակիցը: Ընդհանրապես ոռոգման համակարգերի հագեցումը նոր տեխնիկական սարքերով, շահագործման առաջավոր մեթոդների ներդրումը թույլ կտան տնտեսել զգալի քանակությամբ ջուր:

Վերջին տարիներին մեր հանրապետությունում մեծ աշխատանքներ են կատարվել արդյունաբերական զարգացած քաղաքների օդային ավազանի առողջացման նպատակով: Փակվել են մի շարք վտանգավոր արտադրություններ: Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատում և Հրազդանի ցեմենտի գործարանում արտադրական հանգույցներից արտանետվող փոշու կորզման համար տեղադրվել են մի քանի էլեկտրական զտիչներ: Երևանի, Կիրովականի ՋԷԿ-երում և Հրազդանի ՊՇԷԿ-ում վերակառուցվել են մի շարք կաթսայաագրեգատներ, որոնց շնորհիվ դրանցից ազոտի օքսիդների արտանետումները պակասել են մոտ 20 տոկոսով: Օդային ավազանի պահպանման միջոցառումները իրականացվել են նաև այլ ձեռնարկություններում: Դրանց շնորհիվ նվազել են վնասակար նյութերի արտանետումները մթնոլորտ, և որոշ չափով բարելավվել է էկոլոգիական ընդհանուր իրավիճակը:

Աղտոտվածության հիմնական պատճառը արդյունաբերական ձեռնարկություններում հնացած, ոչ կատարյալ տեխնոլոգիական պրոցեսների առկայությունն է, որոնց ընթացքում մթնոլորտ են արտանետվում մեծ քանակությամբ վնասակար նյութեր: Դրանց քանակը հաճախ ավելանում է տեխնոլոգիական պրոցեսների նորմալ ռեժիմների խախտումներից: Բացի դրանից, մթնոլորտի աղտոտվածությունը մեծ չափով պայմանավորված է գոյություն ունեցող գազամաքրիչ և փոշեկլանիչ կայանքների ոչ արդյունավետ օգտագործմամբ, ինչպես նաև չկարգավորված արտանետումներ ունեցող տրանսպորտային միջոցների շահագործմամբ:

Քաղաքների օդային ավազանի աղտոտվածության մակարդակը կարող է ցածր լինել, եթե մինիստրություններն ու գերատեսչությունները, ձեռնարկությունները կատարեին օդապահպան այն միջոցառումները, որոնք նախատեսված են հանրապետության ղեկավար մարմինների որոշումներով: Մինչև այժմ չի կատարվել ՀԽՍՀ Մինիստրների խորհրդի որոշումը, որի համաձայն մեքենաներից արտանետված գազերի ստուգման և կարգավորման համար ՀԽՍՀ պետմատը հանրապետության ավտոտնտեսությունները պետք է ապահովեր անհրաժեշտ սարքերով ու պահեստամասերով:

Լուրջ անհանգստություն են պատճառում ավտոտրանսպորտային արտանետումները, որոնց բաժինը դրանց ընդհանուր ծավալում կազմում է 60—70 տոկոս, իսկ տոքսիկայնության տեսակետից՝ շուրջ 15 տոկոս: Մեքենաների արընթաց անող

քանակը պահանջում է անհետաձգելի գործնական միջոցառումների իրականացում: Հանրապետության կառավարության հանձնարարության համաձայն, մեր կոմիտեն շահագրգռված մինիստրությունների, գերատեսչությունների ու գիտական կազմակերպությունների մասնակցությամբ մշակել և ՀԽՍՀ Մինիստրների խորհուրդ է ներկայացրել մինչև 1995 թվականը ավտոտրանսպորտային արտանետումների քանակն իջեցնելու կոնկրետ ծրագիր, որը հնարավորություն կընձեռի ավտոմեքենաների թունավոր արտանետումները նվազեցնել շուրջ 30 տոկոսով:

Ավտոմոբիլային տրանսպորտի կողմից մթնոլորտի աղտոտվածության պակասեցման համար անհրաժեշտ է կատարելագործել ներքին այրման շարժիչները, մեքենաներն ապահովել անհրաժեշտ վառելանյութով, պահեստամասերով և լավագույն ձևով կազմակերպել նրանց տեխնիկական սպասարկումը: Այդ նպատակով կոմիտեի նախաձեռնությամբ մինիստրությունների, գերատեսչությունների և գիտահետազոտական ինստիտուտների հետ համատեղ, մշակել և կառավարությանն ենք ներկայացրել ավտոտրանսպորտային միջոցներից մթնոլորտ արտանետվող թունավոր նյութերից Երևանի օդային ավազանը զերծ պահելու միջոցառումների լայն ծրագիր:

Խիստ անհրաժեշտ է մշակել ու ներդնել անթափոն տեխնոլոգիական պրոցեսներ, աղտոտվածության ուսումնասիրման և հսկողության ավտոմատ սարքեր, ինչպես նաև արդիականացնել ու ավտոմատացնել գոյություն ունեցող մեթոդները: Այս խնդիրների իրականացման համար մինիստրությունները, գերատեսչությունները, միավորումները և այլ կազմակերպություններ պետք է ցուցաբերեն պատշաճ պատասխանատվություն:

Բուսական և կենդանական աշխարհի պահպանության գործի օրենսդրական պահանջների կատարման հարցում կան որոշակի թերություններ և չլուծված հարցեր: Ստեղծված ծանր վիճակը կարգավորելու հանգամանքն է ստիպել հանրապետության կառավարությանը՝ դիմելու այնպիսի ծայրահեղ միջոցի, ինչպիսին որսի արգելումն է Հայաստանում: Դեռևս չեն սկսվել կենդանիների պետական հաշվառման, ինչպես նաև կենդանական աշխարհի պետական կադաստրի կազմելու աշխատանքները, որոնք նախատեսված էին հանրապետության կառավարության համապատասխան որոշումով:

Համաձայն հանրապետության շրջակա միջավայրի պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պետական ծրագրի, նախատեսված է ստեղծել արգելավայրերի լայն ցանց, երկու արգելոց և մեկ ազգային պարկ, գյուղատնտեսական արտադրության համար ոչ պիտանի հողերում անտառատնկումներ կազմակերպել, վերանորոգել ձկնաբուծական հին գործարանները և կառուցել նորերը, ինչպես նաև մի շարք այլ միջոցառումներ, որոնք հնարավորություն կընձեռեն նշանակալիորեն բարելավելու կենսաբանական ռեսուրսների վիճակը:

Հայաստանի բնությանը էական վնաս հասցնող գործոններից է հողի ջրային էրոզիան, որը հետզհետե մեծ չափեր է ընդունում: Էրոզիայի հետևանքով ամեն տարի վարելահողերի զգալի տարածություններ դուրս են գալիս օգտագործման ոլորտից, լավագույն դեպքում ընկնում է հողի բերրիությունը, ոչ պիտանի են դառնում մարգագետիններ, խոտհարքներ, անտառային տարածություններ: Բացի այդ հանրապետության տարածքի մակերևույթից ամեն տարի լվացվում է 500 հազար տոննա օրգանական նյութ, 200 հազար տոննա ազոտ, ֆոսֆոր և կալիում: Այսինքն, ավելի շատ սննդանյութեր, քան մենք ամեն տարի հողը սնուցում ենք պարարտանյութերով:

Էրոզիոն պրոցեսներին զուգընթաց, մանավանդ ակտիվ սեյսմիկ գոտիներում, ուժեղ կերպով գործում են էկզոգեն-երկրաբանական պրոցեսները՝ հատկապես սահքերը և փլուզումները: Ներկայումս հանրապետության 121 բնակավայրեր գտնվում են սահքային մարմինների գործունեության սահմաններում: Հեղեղավտանգ գոտիներում հաշվվում են շուրջ 60 բնակավայր և քաղաք, որոնց թվում՝ Ղափանը, Քաջարանը, Դիլիջանը, Ալավերդին:

Վերջին ժամանակաշրջանում հանրապետությունում նկատելի գործ է կատարվել հողային ռեսուրսների բարելավման, ընդերքի ռացիոնալ օգտագործման համար: Այդ աշխատանքը զգալիորեն ակտիվացել է Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի կողմից հողային և ընդերքի վերաբերյալ օրենսգրքերի ընդունումից հետո: Կարևոր նշանակություն ունեցավ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1985 թ. հուլիսի 8-ի որոշումը «Բնության պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման օրենսդրության պահանջների մասին», ինչպես նաև ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդի 1989 թվականի փետրվարին ընդունած որոշումը, որը նպատակաուղղված է հանրապետության բնական ռեսուրսների պահպանմանն ու շրջակա միջավայրի բարելավմանը:



Մեր հողային ռեսուրսների բարելավման, ընդերքի հարստությունների պահպանության և ռացիոնալ օգտագործման նպատակով սահմանված տարեկան պլանային առաջադրանքների կատարումն ապահովելու, տեղերում անհրաժեշտ մասնագիտական օգնություն ցույց տալու համար ՀԽՍՀ բնության պահպանության պետական կոմիտեի կենտրոնական ապարատի և շրջանային տեսչությունների միջոցով հանրապետության հողօգտագործող և հանքերը շահագործող կազմակերպություններում սահմանվել է պետական համապատասխան հսկողություն: Դրա դերը ակնառու է հատկապես հակաէրոզիոն ագրոտեխնիկական կոմպլեքսային միջոցառումների ներդրման, էրոզացված բնական խոտհարքներում կուլտուր-տեխնիկական միջոցառումների արմատավորման, գյուղատնտեսական հողատեսքերի բարելավման, նոր հողերի յուրացման և մելիորացման խնդրում: Այն միաժամանակ կարևորվում է հիդրոտեխնիկական, հակահեղեղային և հակասողանքային ինժեներական կառույցների շինարարության, աղուտ-ալկալի հողերի քիմիական մելիորացման, ոչ գյուղատնտեսական նպատակների համար հատկացվող տարածքների մանրամասն ուսումնասիրման, Ղափանի, Քաջարանի, Ագարակի, Ալավերդու մետալուրգիական կոմբինատների թափոնակուտակիչների կենսաբանական վերակուլտիվացման և բազմաթիվ այլ միջոցառումների կատարման գործում:

ՀԽՍՀ տնտեսական և սոցիալական զարգացման 1991—2005 թվականների հիմնական ուղղություններով նախատեսված է էրոզացված վարելահողերում ևս հողապաշտպան ագրոտեխնիկական կոմպլեքսային միջոցառումների իրականացում: Մեծ ուշադրություն է դարձվելու հողապաշտպան անտառամելիորատիվ աշխատանքների կատարմանը, հողերի ռեկուլտիվացմանը, ինչպես նաև աղտոտված հողերի սանիտարական նորմաների վերականգնմանը: Ընդհանուր ծախսերը կկազմեն 1 մլրդ 455 մլն ռուբլի:

Հանրապետության էկոլոգիական վիճակի բարելավման նպատակով վերջին երեք տարիներին կոմիտեին տրված իրավունքների սահմաններում մեր տեսչական ծառայությունների կողմից տրվել են 2858 պարտադիր հանձնարարականներ, որոնք ժամկետին չկատարելու համար 1429 պաշտոնատար անձիք ենթարկվել են տուգանքի, իսկ 88 ձեռնարկությունների ինժեներատեխնիկական աշխատողներ զրկվել են պարգևատրման գումարներից: Սիստեմատիկ խախտումների համար դադարեցվել է 42 արտադրամասերի գործունեությունը, որոնցից 39-ին թերությունները վերացնելուց հետո թույլատրվել է շարունակել աշխատանքը:

Մինչև օրս կոմիտեի կողմից էկոլոգիական փորձաքննության են ենթարկվել 215 նոր կառուցվող օբյեկտների նախագծեր, որոնցից 106-ը հետ է վերադարձվել բնապահպան նորմաներին չբավարարելու պատճառով, 23-ը լիովին խոտանվել և այլն: Կոմիտեի տեսչական մարմինները ստուգումների ընթացքում բացահայտում են օբյեկտներ, որոնք չեն ենթարկվել էկոլոգիական փորձաքննության: Այսպես, շարունակելով հին ավանդույթները, հատկապես Աբովյան քաղաքում, դարձյալ կառուցվում էին արդյունաբերական օբյեկտներ՝ առանց էկոլոգիական փորձաքննության: Նման երևույթը կանխելու նպատակով, մասնավորապես Աբովյանում դադարեցվել է կենսաքիմիական գործարանի և գազակուտակման պահեստարանի շինարարությունը:

Հայտնի է, որ գյուղատնտեսության համար պիտանի հողերի 14,9 տոկոսը գրտնըվում է Արարատյան դաշտում, որին բաժին է ընկնում հանրապետությունում արտադրվող գյուղատնտեսական մթերքների 1/3-ը: Սակայն այստեղ նոր օբյեկտների շարունակվող պլանավորման և շինարարության հետևանքով, բերրի հողահանդակները հաճախ մնում են արդյունաբերական օբյեկտների տակ: Այդ հանգամանքը ստիպում է օրենքի ուժ տալ Արարատյան դաշտում նոր օբյեկտներ տեղադրելու և կառուցելու կարգին, որի մասին մեր կոմիտեն բազմիցս դիմել է հանրապետության ղեկավար մարմիններին: Հարկ է նշել, որ արդեն երկու տարի է, ինչ մենք արգելում ենք Արարատյան դաշտում արդյունաբերական օբյեկտների կառուցումը:

Ճշմարտությունը պահանջում է ասել, որ այսօրվա էկոլոգիական ծանր վիճակը արդյունք է նաև այն բանի, որ մինչև այժմ օբյեկտների կառուցումը կատարվել է առանց նախագծերի նախնական էկոլոգիական մասնագիտական փորձաքննության:

Նախագծերի էկոլոգիական փորձաքննության կատարման մեջ վերապահված իրավունքը հնարավորություն է ընձեռել այսուհետև հանրապետության տարածքում չտեղադրել շրջակա միջավայրը աղտոտող արտադրական ձեռնարկություններ:

Մեր օրերում հրամայական պահանջ է դարձել ազգաբնակչության էկոլոգիական դաստիարակության կազմակերպումը: Այս ասպարեզում բնության պահպանության կոմիտեն իր ստեղծման առաջին իսկ օրից հանրապետությունում ծավալել է լայն ու համակողմանի գործունեություն: Անցած երեք տարիներին մեծ աշխատանքներ են կատարվել բնակչության համար բուսական և կենդանական աշխարհի ցուցադրման կենտրոններ, բնության գրկում համապատասխան հագեցվածությամբ ակտիվ հանգստի գոտիներ ստեղծելու, ինչպես նաև մի շարք այլ կոմպլեքսային միջոցառումներ իրականացնելու նպատակով: Ջրվեժի անտառպուրակում հիմնվել է բուսակենդանական այգի: Այստեղ առկա 100-ից ավելի ծառաթփատեսակները ներկայացված են ըստ առանձին խմբերի: Կազմակերպված է Հայաստանի վայրի ծաղիկների հավաքատեղի: Պուրակում տեղադրված վանդակներում և ազատավանդակներում (վոլյեր) բնակեցվել են թռչնաշխարհի 10 տեսակներ, իսկ արհեստական լճակներում ջրային թռչունների և ձկնաշխարհի տարբեր ներկայացուցիչներ: Անտառախիտ հատվածները բնակեցվել են եղնիկներով: Շատ դպրոցներ և բուհերի մասնագիտական ֆակուլտետներ իրենց բուսաբանության ու կենդանաբանության դասերն անցկացնում են այստեղ: Նախատեսվում է առաջիկայում կազմակերպել բնության թանգարանի մասնաճյուղ:

Շրջակա բնական միջավայրն անաղարտ պահելու օրախնդիր պահանջը ստիպել է «Սևան» ազգային զբոսավայրում կազմակերպելու հանգստի լողափ՝ իր բոլոր հարմարություններով: «Փիրուզե լողափը» այն եզակի անկյուններից է, որն ակտիվ հանգստի հետ սովորեցնում է բնության հանդեպ ճիշտ վարվեցողություն: Այստեղ ոչինչ չի աղտոտվում, չի թափվում ու չի վնասվում: Զբոսավայրի տարածքում ավարտվում են բնաազգագրական թանգարանի՝ կազմակերպման աշխատանքները: Անհատի էկոլոգիական մտածելակերպի ձևավորմանը կնպաստեն գործող կամ առաջիկայում ստեղծվող որսորդական հյուրանոց-տնակը, զբոսաշրջային հատուկ երթուղիները, ձիազբոսանքները, նավակներով ջրային զբոսանքները և այլն: Անհրաժեշտ պայմաններ են ստեղծված նաև Սևանի ափամերձ տնտեսությունում (հանգստի գոտիներ, լողափեր և այլն):

1988 թվականի սեպտեմբերի 15-ից, տասներկու տարվա ընդմիջումից հետո, իր դռները հյուրընկալորեն բացեց Հայաստանի բնության պետթանգարանը, որի դերը անփոխարինելի է մատաղ սերնդի էկոլոգիական դաստիարակության գործում: Շատ դպրոցներ բնագիտական առարկաների իրենց պարապմունքերն անցկացնում են այստեղ: Ցուցադրանյութերի բազմազանությունն ու հարուստ տեսականին, մասնագիտական բացատրությունները նշանակալիորեն նպաստում են դասանյութի յուրացմանը: Առաջիկայում Ղուկասավանում կբացվեն թանգարանի նոր մասնաճյուղը և բաց ցուցադրահատվածները:

Բնակչության էկոլոգիական դաստիարակությունը ավելի նպատակասլաց և արդյունավետ դարձնելուն մեծապես նպաստում են հեռուստառադիոպետկոմի հետ կազմակերպվող «Շրջակա միջավայր» և «Էկոլոգիական դասեր» հաղորդաշարերը, կոմիտեի մասնագետների մասնակցությամբ ռադիոյով և հեռուստատեսությամբ տըրվող հաղորդումներն ու հարցազրույցները, ինչպես նաև մամուլում տպագրվող հոդվածներն ու նյութերը:

Հայկական գիտատեխնիկական ինֆորմացիայի ինստիտուտի, «Գիտելիք» և բնության պահպանության ընկերությունների, ինչպես նաև շահագրգիռ այլ հաստատությունների ու կազմակերպությունների հետ անցկացվել են սեմինար-խորհըրդակցություններ, առաջավոր փորձի դպրոցների պարապմունքներ, գիտաժողովներ և կոնֆերանսներ, որոնք տեղեկատվական լայն հրապարակայնություն ապահովելու հետ մեկտեղ նպաստել են էկոլոգիական կադրերի որակավորման բարձրացմանը:

Անցած տարվա սեպտեմբերին կոմիտեն և Երքաղխորհրդի գործկոմը Քեմբրիջ-Երևան բարեկամացած քաղաքների համատեղ միջոցառումների շրջանակներում Երևանում անցկացրեցին «Շրջակա միջավայրի պահպանության ընդհանուր հիմնահարցերը» թեմայով գիտագործնական կոնֆերանս, որին ամերիկյան կողմից մասնակցում էին մասնագետներ և էկոլոգիական շարժման հասարակական ակտիվիստներ:



1989 թ. նոյեմբերին մեր հյուրը եղավ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության Հեսսենի երկրամասի 6 փորձագետներից կազմված պատվիրակությունը, որը ծանոթացավ հանրապետությունում շրջակա միջավայրի պահպանության բնագավառում տարվող աշխատանքներին: Փոխադարձ համաձայնություն ձեռք բերվեց այդ առթիվ ԳՖՀ-ում կազմակերպել գիտաժողով ու կոնֆերանս՝ նվիրված շրջակա միջավայրի պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման խնդրին: Կոմիտեի կողմից նախապատրաստական աշխատանքներ են տարվել հանրապետությունում բնապահպան խնդիրների «ինֆորմացիայի բանկ» ստեղծելու համար: Շահագրգիռ կազմակերպությունների հետ հրավիրվել է համատեղ խորհրդակցություն, քննարկվել են բանկի նախնական կառուցվածքի վերաբերյալ առաջարկությունները:

Համաձայն ԽՍՀՄ բնության պահպանության պետկոմի, ԽՍՀՄ ջրօդերևութաբանության պետկոմի և ԽՍՀՄ առողջապահության մինիստրության 1989 թ. մարտի 15-ի համատեղ հրահանգի, կոմիտեն հանրապետությունում առողջապահության մինիստրության և ջրօդերևութաբանության հայկական վարչության հետ մշակում է այն հարցերի կոնկրետ ցանկը, որոնց վերաբերյալ, այդ թվում՝ շրջակա միջավայրի աղտոտվածության վիճակի, դրա ծնող պատճառների վերացման ուղղությամբ ձեռնարկված միջոցառումների կատարման ընթացքի մասին մասսայական լրատվության միջոցներով ազգաբնակչությանը կտրվի օպերատիվ, պարբերական և ընդհանրացված ինֆորմացիա:

Ներկայումս խիստ հասունացել է համազգային էկոլոգիատնտեսական զարգացման ծրագրի ստեղծումը, որը սահմանելով հանրապետության տնտեսական առաջընթացի հիմնական ուղղությունները և ելնելով հիմնավորված տնտեսական չափանիշներից, կլուծի տասնյակ տարիների ընթացքում կուտակված էկոլոգիական պրոբլեմները: Այդ կապակցությամբ մեզ հանձնարարված է պետպլանի, մինիստրությունների ու գերատեսչությունների հետ մշակել և կառավարության հաստատմանը ներկայացնել էկոլոգիայի բարելավման կոնցեպցիաները, որոնց նախապատրաստական աշխատանքներն արդեն սկսված են:

Հանրապետության էկոլոգիայի բարելավման առաջնային խնդիրներից մեծապես կախված է ինչպես մեր, այնպես էլ գալիք սերունդների ճակատագիրը: Ուրեմն բնության պահպանությունը համաժողովրդական գործ է, հասարակության բոլոր անդամների հայրենասիրական ու քաղաքացիական պարտքը:

---

մակ հենասյուներից մեկի վրա թողեց իր ստորագրությունը։ Այժմ նրա ընտանեկան արխիվում պահպանվում են բազմաթիվ մարտական փաստաթղթեր, ճակատային թերթեր, թռուցիկներ, նամակներ ու այլ վավերագրեր, որոնք պարզորոշ վկայում են, թե որտեղից ուր է հասել մեր հայրենակիցը, ինչպիսի դժվարին մարտերի մասնակցել և ինչ սխրանքներ գործել։

Կերչ—Կիև—Վարշավա—Պրագա։ Դնեպր—Վիսլա—Օդեր։ Ահա ցամաքային ու ջրային այն երթուղիները, որոնց հաղթահարմանը մասնակցել է անձամբ, բազմիցս նայել մահվան աչքերին։ Նրան վիճակվել է նաև մասնակցել համակենտրոնացման մի շարք ճամբարների, այդ թվում՝ հանրահռչակ Մայդանեկի դռների բացմանն ու ավելի քան տասը հազար տարբեր ազգերի ռազմագերիների ազատ արձակմանը։

— Այնուամենայնիվ, բազում մարտական գործողություններից ո՞րն է առավել տպավորիչն ու հիշարժանը ձեր կյանքում,— հարցնում ենք վետերանին։

Նա մի պահ խորասուզվում է մտքերի մեջ, մռայլվում ու ասում.

— Դե, իհարկե, Սանդոմիրյանը։

... Դա 1944-ի վերջերին էր։ Դիվիզիան մարտական առաջադրանք էր ստացել՝ ճեղքել Սանդոմիրի մարտահենադաշտը և լեհաստանի հարավ-արևմտյան մասով անցնել հակահարձակման։ Այն մարտկոցը, որի կազմում էին նաև Ասատուր Սարգսյանի հաշվարկի տղաները, ծանր կացության մեջ ընկավ։ Թշնամու ավտոմատավորները, գնդացրորդներն ու ականանետները սկսեցին գնդակների հեղեղ թափել մերոնց դիրքերի վրա։ Մեկը մյուսի հետևից զոհվում են Սարգսյանի հաշվարկի երեք մարտիկները։ Կենդանի մնացած մյուս երեք հոգին մարտնչում են անհավասար ուժերի դեմ։ Դրությունը գնալով դառնում էր օրհասական։ Խփվում են նաև 76 մմ հակատանկային հրանոթը քաշող չորս ձիերից երեքը։ Հանկարծ այդ պահին անտառի եզրին երևում է հակառակորդի «վագր» մակնիշի տանկը, որը մի մեծ խումբ հետևակով սկսում է առաջանալ դեպի Սարգսյանի կիսակործան մարտկոցը։ Երկար մտածելու ժամանակ չկար։ Նա իր մյուս երկու ընկերների՝ վրացի Պատրիկայայի և ռուս Կորալովի հետ լծվում են հրանոթին, ուժերի գերլարումով այն դուրս բերում բաց մարտադիրք և լիցքավորում զրահահար արկով։ Հրանոթի փողն ուղղում են առաջ սողացող մետաղե «հրեշի» վրա ու կրակում։ Առաջին արկը անցնում է քիչ հեռու, սակայն երկրորդը հասնում է նպատակին։ «Վագրը» բռնկվում է անմիջապես՝ ծխի սև քուլաներ արձակելով։ Հրկիզված տանկից ոչ հեռու հայտնվում է մեկ ուրիշը և կատաղի արագությամբ սկսում մոտենալ։ Սարգսյանին հաջողվում է այն շարքից հանել առաջին իսկ արկով։ Հետո սկսում են բեկորային արկերով կրակ տեղալ թշնամու հետևակի վրա։ Քիչ հետո մարտկոցի տղաներին օգնության են հասնում մեր հայրենակցի՝ սերժանտ Սուրեն Մուշեղյանի ավտոմատավորները և գետնին գամում հակառակորդի հետևակին։ Վերջապես թշնամին տեղի է տալիս ու նահանջում։ Սանդոմիրի մարտահենադաշտի ճեղքումը շատ կարևոր էր մեր հետագա առաջընթացի համար։ Եվ պատահական չէ, որ այդ ահեղ ճակատամարտի մասին մեծ հիացմունքով է արտահայտվել մարշալ Ժուկովը իր «Խոհեր և մտորումներ» գրքում։

Ի դեպ, այդ մասին ժամանակին գրվել է նաև ռազմաճակատային թերթերից մեկում, ուր մասնավորապես ասված է.

«Բ» գյուղի համար մղվող մարտում թշնամին խոշոր ուժերով, հետևակով ու տանկերով փորձում էր ճեղքել հարձակման անցած մեր հետևակի շարքերը։ Հրանոթի հմուտ նշանառու, բազմափորձ Ասատուր Սարգսյանը իր հրանոթը դուրս բերեց բաց մարտադիրք և փոթորկալից կրակ տեղաց թշնամու գլխին։ Հիտլերականները հետ նահանջեցին։ Դա հնարավորություն տվեց մերոնց շարժվել առաջ, տիրել գյուղին, որը գտնվում էր խճուղային ճանապարհների կարևոր հանգույցում և ստրատեգիական մեծ նշանակություն ունեցավ հետագայում։ Այդ մարտում Սարգսյանը ոչնչացրեց ֆաշիստական 2 տանկ, մեկ զրահամեքենա, մեկ բեռնատար ավտոմեքենա և 18 զինվոր ու սպա»։ Ասենք նաև, որ այդ սխրանքի համար նա արժանացել է Հայրենական պատերազմի առաջին աստիճանի շքանշանի։

Ոչ պակաս ուշագրավ է նաև վետերանի արխիվում պահվող մարտական բնութագրերից մեկը, ուր գրված է. «Այնտեղ, որտեղ ավագ սերժանտ Սարգսյանն էր, այնտեղ անհաղթահարելի ամրոց էր թշնամու համար»։

Պատերազմից հետո նրան տրված մի տեղեկանքում նշված է հետևյալը. «Գվարդիայի սերժանտ Ասատուր Խաչատուրի Սարգսյանը 1944—45 թթ. ոչնչացրել է թշնամու 8 տանկ, մեկ զրահամեքենա, 12 գնդացիր, բեռներով ու զինամթերքով լի 4 ավտոմեքենա և ֆաշիստական բանակի ավելի քան 70 զինվոր ու սպա»։

Մեր ուշադրությունը գրավում է հատկապես ԽՍՀՄ պաշտպանության մինիստրության Պոդոլսկ քաղաքի արխիվից ստացված այն գրությունը, որը Սարգսյանին է ուղարկվել 1966 թ. ապրիլի 7-ին, 21.533 թվակիր համարով։ Այնտեղ ասված է հետևյալը.

«Հարգելի ընկ. Սարգսյան, Դուք 117-րդ գվարդիական հրաձգային դիվիզիայի հրամանատարի կողմից 1945-ին ներկայացված եք եղել Խորհրդային Միության Հերոսի կոչման»։ Ապա հանգամանորեն հիշատակված են այն գործերի համարներն ու հիմքերը, որոնք հավաստում են գրության իսկությունը։



Մի հանգամանք ևս, որը, տարօրինակ լինելուց բացի, նաև խիստ զայրացուցիչ է։ Բանն այն է, որ երբ Ասատուր Սարգսյանը այդ կապակցությամբ անձամբ լինում է պաշտպանության մինիստրության պարգևատրումներով զբաղվող բաժնի պատասխանատու աշխատակիցների մոտ, նրանք առանց գործերի մեջ խորանալու և դույզն ինչ հետաքրքրվելու, սառն ու անտարբեր պատասխանում են. «Ձեր ճակատային արժանիքները գնահատվել են ըստ արժանվույն։ Պարգևատրվել եք Հայրենական պատերազմի, Կարմիր աստղի, Փառքի երրորդ աստիճանի շքանշաններով ու բազմաթիվ մեդալներով, ուրիշ ի՞նչ եք ուզում...»։

Ահա և բոլորը, որոնք մեկնաբանությունների կարիք չեն զգում։

* * *

Այս առումով ավելի բնութագրական է հատկապես Ալեքսանդր Ստեփանյանի օրինակը։ Այս հայ քաջորդին յոթ անգամ վիրավորվել է, երկու անգամ կոնտուզիա ստացել, յոթ անգամ հրկիզվել իր տանկով, մի կերպ փրկվել և կրկին վերադարձել շարք։ Բայց մեր ուշադրությունը գրավում է հատկապես նրա պարգևատրման թերթիկում եղած նշումների այն հատվածը, ուր մասնավորապես ասված է. «Բեռլինի մատույցներում հակառակորդի ամրացված բնագծերը հմտորեն հաղթահարելու, մեծ արիություն և խիզախություն ցուցաբերելու համար 48-րդ գվարդիական Վապնյարսկո-Վարշավյան կարմրադրոշ, Կուտուզովի շքանշանակիր բրիգադի առաջին գվարդիական գումարտակի դասակի հրամանատար, գվարդիայի լեյտենանտ Ալեքսանդր Դավթի Ստեփանյանը ներկայացվել է Խորհրդային Միության Հերոսի կոչման»։

1945-ի մայիսի 7-ին թվագրված այս փաստաթղթի տակ ստորագրել է վերոհիշյալ տանկային գնդի հրամանատար, գվարդիայի գնդապետ Ժարովը։ Զեկուցագիրը պաշտպանել և իր ստորագրությամբ վավերացրել է 12-րդ գվարդիական տանկային, Ումանսկյան կարմրադրոշ, Լենինի և Սուվորովի շքանշանակիր կորպուսի հրամանատար, տանկային զորքերի գեներալ-մայոր Սալմինովը։

Պարզվում է, որ այդ հարցը քննարկվել է նաև երկրորդ տանկային բանակի ռազմական խորհրդում և տրվել հետևյալ վերջնական եզրակացությունը՝ «Արժանի է Խորհրդային Միության Հերոսի կոչման»։ Ռազմական խորհրդի այս եզրակացության տակ ստորագրել են 2-րդ գվարդիական տանկային բանակի հրամանատար, Խորհրդային Միության կրկնակի Հերոս, գեներալ-գնդապետ Ս. Բոգդանովը և ռազմական խորհրդի անդամ, գեներալ-մայոր Պ. Լատիշևը։

Կոնկրետ ո՞ր սխրանքի համար է մեր հայրենակիցը արժանացել այդ բարձր պատվին, ինչպե՞ս է դասավորվել նրա ճակատագիրն ընդհանուր առմամբ։ Այդ ամենին մոտիկից հաղորդակցվելու նպատակով էլ հեռախոսազանգով պայմանավորվում ենք վետերանի հետ և հաջորդ օրը, երեկոյան, այցելում նրան։ Մեզ դիմավորում է հերոսի կինը՝ տիկին Սիման և, կռահելով մեր այցելության նպատակը, ժպտալով ասում.

— Դուք, երևի, Ալեքսանդրի՞ն եք ուզում, համեցեք, խնդրեմ։ Նա պատշգամբում է, իր «արվեստանոցում»։ Վերջերս սկսել է ավելի հաճախակի նստել ներկապնակի առջև։

Մեզ համար սա արդեն նորություն էր։ Ո՞վ մտքով կանցներ, որ այդ հասակի մարդը կտարվի նոր հրապույրներով։ Բայց երբ 70-ամյա վետերանին հանդիպեցինք վրձինը ձեռքին, խորասուզված գործի մեջ, նոր միայն հասկացանք, որ դա բոլորովին էլ ոչ «հոբբի» է, ոչ էլ ժամանակավոր հրապուրանք։ Պատերին փակցված մի շարք յուղաներկ կտավներ կային՝ խոսուն ու գերող։ Եվ ահա ծերունազարդ «նկարիչը» իր վերջին վրձնահարվածներն էր կատարում ծաղկահանդես Արագած սարը պատկերող մի գարնանային բնանկարի վրա։ Մեր տարակուսանքն ու հիացմունքը նկատելով՝ Ալեքսանդր Ստեփանյանը վրձինը դնում է ցած, հանգիստ ու անշտապ մատները մաքրում լաթի կտորով ու դառնում մեզ.

— Զարմանալի ոչինչ չկա, սա իմ վաղեմի երազանքն էր, դեռ մանկուց եմ հրապուրվել գեղանկարչությամբ...

Ապա պատմում է, թե ինչպես է 8-րդն ավարտելուց հետո ընդունվել իր հայրենի Լենինական քաղաքի եռամյա նկարչական դպրոցը և, միաժամանակ ուսումը համատեղելով պրակտիկ գործի հետ, սկսել աշխատել տեքստիլ ֆաբրիկայում։

— Ամեն ինչ կարծես թե վատ չէր ստացվում, նույնիսկ գովատում էին սկսնակ նկարչիս առաջին քայլերը,— ասում է նա ու խոսքն ավելի համոզիչ դարձնելու նպատակով թղթապանակից հանում դեռևս 1938-ին իրեն տրված մի խունացած գովասանագիր, ուր կարդում ենք. «Տրվում է Լենինականի եռամյա նկարչական դպրոցի 3-րդ դասարանի աշակերտ Ալեքսանդր Ստեփանյանին գերազանց առաջադիմության և օրինակելի վարքի համար»։

... Դրանք այն ոչ երանելի տարիներն էին, երբ մոլեգնում էր ստալինյան վայրագ քաղաքականությունը։ Ամեն մի փոքր զանցանքի, կասկածամտության ու «անխոհեմ» քայլի համար մարդիկ հատուցում էին ողջ կյանքով։ Պարզվում է, որ նման թյուրիմացության զոհ է

դարձել նաև պատանի նկարչի հայրը՝ Մնացական Ստեփանյանը, որին օրերից մի օր տարել են ընդմիշտ։ Նրա մանկահասակ բոլոր չորս զավակների ու ողջ գերդաստանի ապրուստի հոգսը ընկել է կնոջ՝ Հերիքնազի և ավագ որդու՝ 17-ամյա Ալեքսանդրի ուսերին։ Բայց ամենացավալին այն է, որ նրանց սկսել էին արդեն ամենուր նայել «խորթ» աչքով։ Դպրոցում Ալեքսանդրին ևս հաճախ էին հանդիմանում որպես «ժողովրդի թշնամու» որդու։ Ոչ մի լավ բան չէր խոստանում ապագան։ Զգալով, որ հոր պատճառով հանգիստ չեն տալու շնորհաշատ պատանուն, նրա մոտիկ հարազատներից մեկը՝ Դավիթը, որոշում է որդեգրել Ալեքսանդրին։ Այսպիսով, փաստորեն փոխվում է նրա հայրանունը։ Եվ չնայած 1956-ին, հետմահու արդարացվում է Մնացական Ստեփանյանը, սակայն քանի որ բոլոր փաստաթղթերում Ալեքսանդրի հայրանունը նշվում էր Դավթի, այդպես էլ թողնվում է անփոփոխ։ Սա էլ յուրօրինակ ողբերգություն է, որին տեղյակ չեն շատերը։

Զրուցում ենք երկար։ Եվ հետզհետե մեր հայացքի առջև ավելի ու ավելի հստակորեն են ընդգծվում նրա ոչ դյուրին կյանքի լուսավոր ու մութ էջերը։ 1939-ին նոր էր բոլորել Ալեքսանդրի 19 տարին, երբ Լենինականի քաղաքային զինկոմիսարիատի կողմից զորակոչվում է բանակ, հերթական ծառայության։ Նա հայտնվում է Լենինգրադի զինվորական օկրուգի տանկային զորամասերից մեկում որպես «Տ—20» մակնիշի տանկի աշտարակի հրաձիգ-հրամանատար։ Այդ պաշտոնում էլ մասնակցում է ֆիննական պատերազմին և ստանում մարտական առաջին մկրտությունը։ Ապա վրա է հասնում մեծ Հայրենականը, որի դժոխային առաջին օրը՝ հունիսի 22-ը, նա դիմավորում է Լիտվայում, «ԿՎ» («Կլիմենտ Վորոշիլով») ծանր տանկի մեխանիկ-վարորդի դերում։

Գերմանական ֆաշիստները, կայծակնային պատերազմի մոլուցքով տարված, շտապում էին իրագործել իրենց պլանները և ժամ առաջ գրավել Մոսկվան։ Ստեփանյանը տեղափոխվում է այնտեղ և համալրում մայրաքաղաքի պաշտպանների շարքերը։ Մոտենում էր նոյեմբերյան տոնը։ Նա ակամայից զարմացավ ու մի տեսակ ձգվեց, երբ նախօրեին իմացավ, որ ինքն էլ իր տանկով նոյեմբերի 7-ին Կարմիր հրապարակում պետք է մասնակցի Հոկտեմբերյան հեղափոխության 24-րդ տարեդարձի զորահանդեսին։ Սկզբում նույնիսկ չհավատաց լսածին, բայց հետո համոզվեց, որ այդ օրերին ոչ ոք կատակ անելու ժամանակ չուներ։ Եվ ահա եկավ հիշարժան օրը։ Զորահանդեսին մասնակցելու եկած շուրջ 200 տանկերի առաջին շարքում հանդալով առաջ էր շարժվում ավագ մեխանիկ-վարորդ Ստեփանյանի «ԿՎ» ծանր տանկը, որի հավաքմանը Չելյաբինսկում մասնակցել էր անձամբ և ինքն էլ այն բերել հասցրել մարտադաշտ։

Զորահանդեսը մի տեսակ լիցքավորեց մայրաքաղաքի պաշտպաններին և հավատ ներշնչեց հետագա հաջողությունների ու հաղթանակի նկատմամբ։ Քսանմեկամյա հայ քաջորդին Կարմիր հրապարակից անմիջապես մեկնեց ռազմադաշտ, առաջին տանկային բրիգադի կազմում դիրքեր գրավեց Վոլոկոլամսկի ուղղությամբ։ Բրիգադի մարտիկները, սերտորեն համագործակցելով Պանֆիլովյան գվարդիական 8-րդ հրաձգային դիվիզիայի հետ, հերոսաբար կանխում էին թշնամու առաջխաղացումը։ Դեկտեմբերի 6-ին խորհրդային զորքերը անցան հակահարձակման։ Ֆաշիստական զավթիչները հանկարծակիի եկան։ Նրանք չէին սպասում դրան։ Ստեփանյանի տանկը իր թրթուրներով և հրանոթային հուժկու կրակոցներով տակնուվրա էր անում թշնամու ամրությունները, ճանապարհ հարթում գրոհող հետևակի համար։ Հիտլերյան ֆաշիստները, որոնք ծրագրել էին նոյեմբերի 7-ին Կարմիր հրապարակում անցկացնել զորահանդես, Մոսկվայի պատերի տակից հետ շպրտվեցին 100, 200, իսկ առանձին ուղղություններում նույնիսկ 400 կիլոմետր։ Երկրորդ համաշխարհային պատերազմում դա նրանց առաջին լուրջ պարտությունն էր։ Մոսկվայի տակ տարած փայլուն հաղթանակը ոգևորեց խորհրդային բոլոր մարդկանց։ Ֆաշիստական Գերմանիան Մոսկվայի ճակատամարտում կորցրեց ավելի քան կես միլիոն մարդ, 1.300 տանկ, 2.500 հրանոթ, 15 հազար ավտոմեքենա։

Այդ հաղթանակում իր արժանի ավանդը ներդրեց նաև Ալեքսանդր Ստեփանյանը, որի կրծքին շողշողաց Խիզախության համար առաջին մեդալը։ Այնուհետև նա սկսեց մարտնչել Հարավային ռազմաճակատի 2-րդ տանկային բանակի կազմում։ Ապա մասնակցեց Դոնբասի ազատագրմանը, Կովկասի պաշտպանությանը։ Օրջոնիկիձե քաղաքի ազատագրման համար մղված մարտերում ցուցաբերած արիության ու խիզախության համար պարգևատրվեց Կարմիր աստղի շքանշանով։ Հրամանատարությունը, տեսնելով Ստեփանյանի մարտավարման ձիրքն ու ընդունակությունները, 1943-ի սկզբներին նրան ուղարկում է Խարկովի տանկային հրամանատարների զինվորական ուսումնարան։ 1944 թվականին ավարտելով ուսումնարանը՝ նա ստանում է կրտսեր լեյտենանտի կոչում և նշանակվում տանկային դասակի հրամանատար։ Սկսում է մարտնչել 2-րդ տանկային բանակի կազմում։ Կորսուն-Շևչենկոյի և Յասի-Քիշնևյան օպերացիաներին մասնակցելու ժամանակ ցուցաբերած արիության ու խիզախության համար պարգևատրվում է երկրորդ Կարմիր աստղի շքանշանով։ Նա իր որոշակի խոսքն է ասել



նաև Բելոռուսիայի և Լեհաստանի համար մղված մարտերում։

Վետերանի ընտանեկան արխիվում պահպանվում է գերմանական բանակի մի մեծ տակտիկատեղագրական քարտեզ, որը նա վերցրել էր գերի ընկած ֆաշիստական հրամանատարից։ Այդ քարտեզի վրա ճակատային տանկիստը կարմիր մատիտով նշել է իր անցած ճանապարհը, այն քաղաքներն ու բնակավայրերը, որոնց ազատագրմանը մասնակցել է անձամբ։ Կյուստրին-Խոլմ—Վարշավա—Սոխաչև-Սկեռնևիցե… Ո՞ր մեկը թվես։

Ստեփանյանի տանկային դասակը առանձնապես աչքի ընկավ Վարշավայի ազատագրման մարտերի ժամանակ, որի համար նա պարգևատրվեց Հայրենական պատերազմի երկրորդ աստիճանի շքանշանով։ 1945 թվականի սկզբներին 2-րդ գվարդիական տանկային բանակի տանկիստները մտան Գերմանիա։ Այդ նույն թվականի փետրվարի 2-ին Ստեփանյանն իր քարտեզի վրա գրեց՝ «Մինչև Բեռլին մնացել է 60 կիլոմետր»։

Ապրիլի 19-ին այն գումարտակը, որի կազմում մարտնչում էր Ստեփանյանի տանկային դասակը, մարտեր էր մղում ֆաշիստական Ռայխեներբերգ բնակավայրի շրջանում։ Հանկարծ Ստեփանյանին հայտնեցին, որ հարևան տանկային վաշտի սպայական կազմը, վաշտի հրամանատարի հետ միասին, զոհվել է։ Նա իր դասակի հրամանատարությունը հանձնում է օգնականին, ինքը ստանձնում հարևան տանկային վաշտի հրամանատարի պարտականությունները և այդ մասին անմիջապես զեկուցում գումարտակի հրամանատարին։ Վերջինս հիացմունքով դրվատում է լեյտենանտի խիզախ արարքը։ Արհամարհելով մի օր առաջ ստացած վերքի ցավը՝ Ստեփանյանը համախմբեց վաշտը, սերժանտներից նշանակեց դասակի հրամանատարներ և գրոհի տարավ յուրայիններին։ Նա կարողացավ կոտրել թշնամու համառ դիմադրությունը և գրավել Ռայխեներբերգ, Իլով, Գրունով բնակավայրերը։ Այդ մարտի ժամանակ ոչնչացվեցին թշնամու մեկ տանկ, մեկ ինքնաթիռ, 4 հրանոթ, 8 գնդացիր և ավելի քան 100 ֆաշիստական զինվոր ու սպա։ Մինչև Բեռլին մնացել էր 50 կիլոմետր։ Գումարտակի շտաբից ռադիոկապով հայտնեցին, որ լեյտենանտ Ստեփանյանը պետք է շտապ ներկայանա տանկային գնդի շտաբ՝ գեներալ-գնդապետ Բոգդանովին։ Գեներալը նրան ընդունում է հայրական գորովանքով, թփթփացնում ուսին և ասում.

— Հեռադիտակով ես հաճախ եմ հետևել ձեր մարտական գործողություններին ու հիացել։ Ապրես, հմտորեն ես ղեկավարում մարտը։ Խիզախ հրամանատար ես, իսկական կովկասցի։ Շնորհավորում եմ մարտական Կարմիր դրոշի շքանշանով պարգևատրվելու կապակցությամբ։ Գեներալը Ստեփանյանի կրծքին ամրացրեց Կարմիր դրոշի շքանշանը, ամուր սեղմեց հայ քաջորդու ձեռքն ու կրկին շնորհավորեց։

Շուտով նա նոր մարտական առաջադրանք ստացավ, որի նպատակն էր գիշերով երթ կատարել, հասնել Ալտ-Լասբերգ քաղաքի հյուսիսարևելյան մասը և անսպասելի գրոհել քաղաքի վրա։ Ստեփանյանը պատվով կատարեց նաև այս դժվարին մարտական առաջադրանքը և իր քարտեզի վրա ապրիլի 20-ին գրեց. «Մինչև Բեռլին՝ 18 կմ»։

Տանկային վաշտը լեյտենանտ Ստեփանյանի հրամանատարությամբ 1945 թվականի ապրիլի 19—25-ը, այսինքն՝ ընդամենը հինգ օրվա ընթացքում, մի ամբողջ շարք սխրանքներ գործեց։ Գրավվեցին 9 բնակավայր, 3 քաղաք, կարևոր նշանակության 3 գործարան, ոչնչացվեցին թշնամու 3 տանկ, մեկ ինքնաթիռ, 15 հրանոթ, 8 գնդացիր, ավելի քան 300 զինվոր ու սպա։

Ապրիլի 25-ին նա առաջինը ներխուժեց Բեռլինի կենտրոն՝ ցանկանալով հաղթանակի դրոշը ամրացնել Ռայխստագի վրա։ Գյումրեցի քաջորդին Ռայխստագի սպիտակ հենասյուներից մեկի վրա մրով գրեց. «Լենինականից Բեռլին— Ալեքսանդր Ստեփանյան»։ Հենց դրանից հետո էր, որ 48-րդ գվարդիական տանկային Վապնյարսկո-Վարշավյան կարմրադրոշ, Կուտուզովի շքանշանակիր բրիգադի հրամանատար, գվարդիայի գնդապետ Ժարովը, հանրագումարի բերելով այդ հինգ օրերի սխրանքները, Ստեփանյանին ներկայացրեց Խորհրդային Միության հերոսի կոչման, որն այդպես էլ նրան չտրվեց։



Այս հոդվածով մենք անդրադարձանք մեր առանց աստղի հերոսներից միայն երկուսին։ Բայց դրանց թիվը շատ ավելին է։ Մեր ձեռքի տակ է «Խորհրդային Հայաստան» հանդեսի 1986 թ. մայիսի 5-ի համարը, ուր պաշտոնաթող գնդապետ, զինվորական լրագրող Հ. Հայրապետյանը մասնավորապես գրում է. «Պաշտպանության մինիստրության կենտրոնական արխիվում պահպանվել է մեծ Հայրենականի անվանի զորահրամանատար Մաթևոս Արիստակեսի Մադաթյանին Խորհրդային Միության հերոսի կոչման ներկայացնելու մասին զեկույցը։ Նա անձամբ գերի է վերցրել «լեզվին»՝ Կառլ Շենֆելդին։ Դատելով այդ կարևոր փաստաթղթից, գերմանացին հույժ բանիմաց սպա է եղել և բացահայտել է ռազմաճակատի տվյալ տեղամասի վերաբերյալ հիտլերյան հրամանատարության ծրագրերը»։

Ի դեպ, դա պատերազմի երկրորդ տարում էր, երբ Մադաթյանը դեռ մայորի կոչումով ղե-

կավարում էր հրաձգային գունդը։ Նրա սպայական անձնական գործից պարզվում է, որ Մադաթյանը դրանից հետո էլ հերոսական շատ սխրանքներ է կատարել, շարքային զինվորից հասել գնդապետի աստիճանի, դասակի հրամանատարից մինչև դիվիզիայի հրամանատարի պաշտոնի։ Նա զոհվել[1] է մարտական պոստում, 1956-ին։

Հանրապետական թերթերում բազմիցս գրվել է գվարդիայի պաշտոնաթող գնդապետ (այժմ կենսաթոշակառու) Սերգեյ Արշակի Մկրտչյանի սխրալից դրվագներով լի մարտական ուղու մասին։ Ուշագրավ է հատկապես այն, որ նա իր գումարտակով 1944 թ. հուլիսի 11-ին բելոռուսական հողում մարտնչելիս փրկել է շրջափակման մեջ հայտնված երեք բարձրաստիճան սպաների՝ գեներալներ Սանդալովին, Կորոտկովին և Գերասիմովին։ Սակայն այդ փաստն այն ժամանակ «հմտորեն» քողարկվել է հիշյալ գեներալներին չվարկաբեկելու նպատակով։ Միայն հաղթանակից շատ տարիներ հետո է այդ մասին հիշատակվում գեներալ Սանդալովի ճակատային հուշերի գրքում...

Հայկական 89-րդ եռակի շքանշանակիր Թամանյան դիվիզիան ազգային զորամիավորումներից միակն էր, որ Կովկասյան նախալեռներից մարտերով հասավ Բեռլին և իր լուրջ ավանդը ներդրեց հաղթանակի կոփման գործում։ Որքան էլ տարօրինակ է, դիվիզիայի լեգենդար հրամանատար, գեներալ-մայոր Նվեր Գևորգի Սաֆարյանը չներկայացվեց հերոսի կոչման։ Բայց գաղտնիք չէ, որ նա ինչպես իր ենթակաների ու բոլոր ժամանակակիցների, այնպես էլ ողջ հայ ժողովրդի սրտում եղել և մնում է որպես իսկական հերոս...

Ասել, թե իր հրամանատարական ու մարտավարական տաղանդի և գործած սխրանքների համար լիարյուն կերպով է վարձատրվել Խորհրդային Միության կրկնակի հերոս, Խորհրդային Միության մարշալ Հովհաննես Քրիստափորի Բաղրամյանը, այնքան էլ ճիշտ չէր լինի։ Նա այդպես էլ չպարգևատրվեց Հաղթանակի շքանշանով, թեև դրան ավելի շատ էր արժանի, քան այդ պարգևին արժանացածներից ոմանք...

Հայորդի առանց աստղի հերոսները շատ են, ո՞ր մեկին թվես... Սակայն արժե, որ սերունդները լավ իմանան նրանց սխրանքների մասին։

# ԱՐՑՈՒՆՈՎ ԳՐՎԱԾ ՆԱՄԱԿՆԵՐ

## Ա. ՆՈՒՐԻՋԱՆՅԱՆ

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆ ԱՊՐՈՒՄ է մեզանից յուրաքանչյուրի մեջ։ Մենք չենք կարող մոռանալ այն...

Ավելի քան չորս տասնամյակի պատմություն է դարձել մեծ Հայրենականի ավարտը, բայց վերքերը դեռ չեն սպիացել։ Հիմա էլ ամեն մի այրի ու որբ, որդեկորույս մայր ու դողդոջուն ծերունի սուրբ մասունքի պես է պահում տուն չդարձած որդու կամ հոր, սիրածի, եղբոր կամ ամուսնու նամակները։ Ժամանակից խունացել ու դեղնել են, բայց իրենց սրտառուչ անկեղծությամբ, մարդկային մեծ զգացմունքներով, անհուն սիրով ու երազներով ցողված այդ նամակները հիմա էլ շարունակում են հուզել մարդկանց։

1941 թվական, 21-ը հունիսի։ Այդ օրը բերկրալի օր էր Գևորգ Քոլոզյանի համար։ Սևանի շրջանային թերթում տպագրվել էր նրա բանաստեղծություններից մեկը։ Պատերազմից բառացիորեն մի քանի ժամ առաջ 24-ամյա երիտասարդը գրել էր.

... Եթե հարկ լինի, իմ հայրենիք,
Քեզ կնվիրեմ կյանքս ջահել...

Քոլոզյանի բանաստեղծությունը տպագրվելու հաջորդ օրը՝ հունիսի 22-ի լուսածագին ռադիոն ազդարարեց՝ ֆաշիստական Գերմանիան ներխուժել է մեր երկրի սահմանները։ Այդ նույն օրն էլ Գևորգը ներկայացավ զինվորական կոմիսարիատ...

Ընդամենը 25 օրվա ամուսնական երջանկություն վայելած երիտասարդը ամենադժվարին օրերին էլ չդավաճանեց շրջանային թերթում տված իր յուրօրինակ երդմանը։ Շատերի հետ նա նույնպես անմահացավ Ադրիատիկի ափերին՝ իր համաքաղաքացի Մկրտիչ Դաշտոյանի և ռուս Իվան Պոլետաևի նման արժանանալով Իտալիայի ազգային հերոսի կոչմանը։ Այսօր էլ Իտալիայում մարդիկ լեգենդներ են պատմում իրենց ջահել կյանքը մարդկությանը զոհաբերած այդ հերոսների սխրանքների մասին։

Գևորգը պատմությանն ու ժողովրդին թողել է մի բարի անուն և ռազմաճակատային եռանկյունի նամակների մի կապոց, որ անհնար է առանց հուզվելու թերթել։ Համարյա ամեն օր նա նամակ է գրել կնոջը, ծնողներին, ընկերներին։ «Գեղեցիկ, սիրելիս, շուտով կսկսվի մարտը։ Գիտեմ, հաղթանակը շուտ չի գա, բայց մեկ է՝ գալու է։ Ծանր տառապանքից է այն ծնվում։ Իսկ եթե ներքևից ասեն, որ ես զոհվել եմ՝ չհավատաս։ Ես չեմ ուզում մեռնել։ Ապրել եմ ուզում և հաղթել»։

Իսկ ինչպե՜ս էր սիրում մորը... «Մայրիկ, հարազատս, դու ես մեծացրել ինձ և եղել իմ առաջին ընկերը։ Թե զոհվեմ, շատ ծանր կլինի քեզ համար։ Մխիթարվիր նրանով, որ որդիդ ընկել է մեծ գործի համար։ Բայց ինչու՞ խոսենք մեռնելու մասին. ես դեռ պետք է պարեմ Գառնիկ եղբորս հարսանիքին... Կյանքը շատ թանկ է, մայրիկ։ Բայց հիմա դողալ նրա համար՝ ամոթ է»։

Հերոսացման ուղին բռնած մարդու յուրօրինակ կյանքի պատմությունն է հառնում սևքարցի Մամբրե Անտոնյանի նամակների պարզ, միաժամանակ և մարդկային խոր հույզերով տոգորված տողերում։

«28-ը դեկտեմբերի, 1942 թվական։

Մայրիկ ջան, նախ և առաջ ընդունիր կարոտալի բարևներս։ Դեռ ողջ, առողջ եմ, ինձ համար չմտածես։ Ես կռվում եմ ֆաշիստների դեմ, որպեսզի ջախջախենք ու դուրս շպրտենք նրանց մեր սրբազան հողից և ազատագրենք մեր սիրելի հայրենիքը։ Քո որդին պատվով դուրս կգա։ Մայրիկ ջան, կներես, որ այդքան վատ եմ գրում. ի՞նչ արած, քարի և հողի վրա եմ գրում, ձեռքերս տաքացնում եմ բերանումս, այնքան ցուրտ է, հիմա մեզ վերադարձնում են թիկունքային մաս. ճակատից մեկ կիլոմետր հեռու։ Բարևում եմ հարազատներին և ձեր գործարանի աշխատողներին։ Համբույր քեզ։ Քո որդի Մամբրե»։

«8-ը մարտի 1944 թվական։

Նախ և առաջ ընդունիր իմ կողմից ֆրոնտային բարևներս քեզ, մեր հարազատներին, գործարանի դիրեկտորին, բոլոր աշխատողներին։

Մայրիկ ջան, ստացել եմ լեյտենանտի կոչում, արդեն երկու աստղ եմ կպցնում։ Սիրելի մայրիկ, ձեր եռանդուն աշխատանքի արդյունքները մենք ստանում ենք ռազմաճակատում։ Ինչքան դուք լավ աշխատեք, այնքան մենք ավելի շատ թշնամու կսպանենք։ Մայ-

ՆՈՒՐԻՋԱՆՅԱՆ ԱՆՈՒՇԱՎԱՆ ՇԱՄԽԱԼԻ— «Ոզնի» հանդեսի գլխավոր խմբագրի տեղակալ։

րիկս, ով երբևէ չարությամբ է թեքել դեպի մեր հողը, մեր հայրենիքը, նա կենդանի չի վերադառնա և երբեք թեքած հողը կգնա...»:

Կարմիր բանակի զորամասերը 1944 թվականի օգոստոսին մեկը մյուսի հետևից ազատագրում էին Ուկրաինայի քաղաքներն ու գյուղերը: Ահեղ մարտեր էին մղվում Լվովից ոչ հեռու գտնվող Սամբոր քաղաքի մատույցներում: Մի խումբ հետախույզների, Մամբրե Անտոնյանի ղեկավարությամբ, մարտական առաջադրանք է տրվում՝ մինչև գրոհի սկսվելը ոչնչացնել Սամբորի գերմանական շտաբը: Եվ գրոհից առաջ Մամբրեն ժամանակ է գտնում մորը գրելու իր հերթական ու վերջին նամակը:

«Նորից ռազմաճակատի առաջավոր գծում եմ, սիրելի մայրիկ: Չմտածես և չտխրես: Իմ պարտքն է հայրենիքը պաշտպանել: Ես պիտի կռվեմ, որ դուք խաղաղ ապրեք...»:

Քաղաքից քիչ հեռու գտնվող կամուրջը միակ ճանապարհն էր, որով նրանք պետք է անցնեին: Անտոնյանը, առաջնորդելով իր ջոկատի մարտիկներին, հանկարծակիի է բերում հակառակորդին: Մինչ գերմանացիները ուշքի կգային, հետախույզներն անցել էին կամուրջը, բայց առանց իրենց հրամանատարի: 21-ամյա երիտասարդը ընկած էր կամրջի վրա՝ ավտոմատը ձեռքում սեղմած:

1945-ի մայիսի 9-ին մեր երկիրն իր վերջին հաղթական քայլերն արեց Մոսկվա—Բեռլին ճանապարհին: 1417 ահեղ, արյունալի ու տանջալից օրերի տարեգրությունն ավարտվեց: Խորհրդային ռազմիկի անցած այդ երկար ճանապարհը լի է հաղթանակներով ու սխրանքներով, հաջողություններով ու նահանջով: Այդ ճանապարհը նա անցել է թշնամու դիակների, ջախջախված տեխնիկայի ու տապալված փառքի վրայով: Այդ ճանապարհին նա թողել է նաև յուրայինների, անհայտ հերոսների բազում գերեզմաններ:

Այդ ճանապարհը մեզ հիշեցնում է նաև բազում անարցունք մնացած գերեզմաններ, առանց գերեզմանի թափված արցունքներ, կիսատ մնացած հույսեր, դժվարին այդ օրերին հավատով գրված նամակներ:

«... Որ անիծված Հիտլերին և նրա բանդային շուտով վերջ է լինելու, ես բոլորովին չեմ կասկածում: Արդեն երկու ամիս է, ինչ սկսվել է պատերազմը, իսկ թվում է, թե նոր ենք մտել կռվի մեջ...»: 1941 թվականի օգոստոսի 16-ի թվակիր այս նամակի հեղինակը զումարտակի կոմիսար, Խորհրդային Միության հերոս Լազար Չափչախյանն է: Նույն թվականի սեպտեմբերի 5-ին հարազատներին ուղղված նամակում նա գրում է. «... Անիծված Հիտլերը մեր վզին փաթաթեց պատերազմը և արդեն շնչահեղձ է լինում այս մենամարտում: Այն, որ նա գրավել է մեր մի շարք քաղաքներ, դեռ ոչինչ չի նշանակում: Հեռու չի հատուցման ժամը: Այն ժամանակ մենք վրեժ կլուծենք մեր քույրերի, եղբայրների, հայրերի, մայրերի և, ամենակարևորը, մեր երեխաների համար, որոնք բոլորից շատ են տանջվում...»:

Խորհրդային ժողովրդի, հայրենիքի ու նրա զինված ուժերի անպարտելիության մասին անհուն հավատով է տոգորված վաշտի հրամանատար, կապիտան Կորյուն Եզեկյանի նամակը, որ նա գրել է կնոջը, 1941 թվականի նոյեմբերի 7-ին:

«... Ոգուհի ջան, տոնելով 24-րդ տարեդարձը, ես հիշեցի, թե ինչպես խաղաղ պայմաններում մենք Երևանում տոնում էինք այդ օրերը, բայց ոչինչ, ջանիկս, կգա ժամանակը, որ այդ օրերն էլի կտեսնենք, գլխավորն է՝ առողջ լինենք և հաղթանակով վերադառնանք տուն: Ես իմ հույսը չեմ կորցնում, համոզված եմ մեր կարմիր բանակի հզոր ուժին, մեր երկրի հարստությանը և ռազմական ուժին: Պատմության մեջ չի եղել, որ ռուս ժողովուրդը պարտվի: Մեր գործն արդար է, հաղթանակը մերը կլինի...»:

Խորհրդային Միության հերոս, ավագ լեյտենանտ, օդաչու Պատրիկ Գազազյանը հատուկ օրագիր էր պահում, որի մեջ գրանցում էր իր և իր մարտական ընկերների կյանքի կարևոր իրադարձությունները: Զոհվելուց մի քանի օր առաջ նա իր օրագրում գրել է. «Այժմ, պատրաստվելով նոր թռիչքների, ես մտածում եմ մեր հաղթանակի և իմ որդու մասին: Ոչ մի բան մարդուն այնքան երջանկություն չի բերում, ինչպես հաղթանակի հպարտ զգացումը... Ես հավատացած եմ, որ կտեսնեմ մեր վերջնական հաղթանակը ֆաշիզմի նկատմամբ: Հանուն հաղթանակի, հանուն իմ ընտանիքի հանգստության կձգտեմ ավելի եռանդով կռվել»:

Պատերազմի օրերին իր անունը անօրինակ սխրագործությամբ անմահացրեց Սոֆյա Լալայանը: Տարի օրում նա կատարեց ավելի քան 150 վիրահատություն և դա՝ ռազմաճակատային ամենածանր պայմաններում: Լենինգրադից ուղարկած իր վերջին նամակում նա քրոջը գրում է. «Բարև, իմ սիրելի Մարգուշա... Իջել է գիշերը Նևայի վրա: Գերմանական հորդաները ուզում են կործանել, իրենց սև ձեռքերի մեջ վերցնել և ընկնել մեր քաղաքը, որին ես սիրում եմ ինչպես իմ հարազատին: Ո՛չ, դա չի լինի... Նրանց չի հաջողվի պղծել Լենինգրադի վեհությունը: Սիրելի Մարգո, հիշիր Ալեքսանդր Նևսկու հայտնի խոսքերը. «Նա, ով սրով կգա մեր հողը, սրից էլ կընկնի»:

Հայաստանի հեղափոխության թանգարանի Լենինգրադի պաշտպանությանը նվիրված բաժնում ցուցադրված են Սոֆյա Լալայանի լուսանկարները և թշնամու գնդակով խոցված նրա կուսակցական տոմսը:

Շատ են Լենինգրադի հայ պաշտպանները: Նրանցից մեկը՝ Մուշեղ Բալագյոզյանը, 1942 թ. հունիսի 10-ին Երևանում բնակվող իր մորը գրել է. «Թանկագին մամա ջան... Ես ողջ և առողջ եմ, հետագայի մասին չեմ երաշխավորում... Հետագայում եթե առողջ լինեմ՝ լավ, եթե ոչ, իմացիր, որ մեծ գործի համար ընկա, փառքի և պատվի համար ընկա, և, թեկուզ այդպես, մեծահոգի եղիր և մի՛ վրդովվիր... Բալագյոզենց տղան եմ ես և թող պարծենան իմ բարեկամներն ու ծնողները, որ նրանց որդին իր ուժերը չի խնայի մեր ժողովրդի երջանկության համար...»:

Իր քաջարի մահով «Բալագյոզենց տղան» անմահացավ ոչ միայն հարազատ գերդաստանի ծեր ու մանուկ անդամների, այլև ամբողջ հայ ժողովրդի սրտում:

Քայլելով ավերված, հրի ու սրի մատնված քաղաքներով, տեսնելով մեր երկրին ու նրա խաղաղ բնակչությանը հասցված ծանր վերքերը՝ մարտնչող զինվորների սիրտը ատելությամբ էր լցվում թշնամու նկատմամբ: Այդ ատելությունը վառ ձևով դրսևորված է թիկունք ուղարկված նամակների ժլատ տողերում: Ծնողներին ուղղված նամակում ահա ինչ է գրում լեյտենանտ Սարգիս Գաբրիելյանը 1943 թվականի փետրվարի 23-ին. «Մամա և պապա ջան, այստեղ բոլորն ապրում և կռվում են միայն մի գաղափարով՝ ջարդել գազազած թշնամուն և վրեժ լուծել նրանցից մեր այրված ու ավերված շեների, հազարավոր սպանված և խոշտանգված եղբայրների ու քույրերի համար: Մենք երդվել ենք մեր նախնիների նման, մինչև թշնամուն դուրս չշպրտենք մեր երկրից՝ սուրը պատյան չենք դնի»:

Շատ ու շատ հերոսների նման լեյտենանտ Գաբրիելյանն էլ վերջնական հաղթանակը չտեսավ: Բայց ընկնելուց առաջ նա իր ստորաբաժանման գլուխն անցած ոչնչացրեց տասնյակ օկուպանտների, որով թեկուզ մեկ քայլով մոտեցրեց վերջնական հաղթանակը:

Վրեժի անհուն զգացումով է տոգորված մայոր Հայրապետ Ասլանյանի նամակը. «... Նոր տարին ինձ համար սևով անցավ, որովհետև իմ լավագույն ընկեր-տղաներից երկուսին, որոնք ինձ համար հարազատների նման էին, ֆաշիստները սպանեցին: Ոչինչ, դրա դիմաց ֆաշիստական շները տասնապատիկ կվճարեն: Վրեժ ու վրեժ: Այս է մեր կոլեկտիվի որոշումը»:

Ահեղ օրերի, անքուն գիշերների, սովի ու ցրտի պատճառած դառնությունները իրար հետ կիսել են ռուսն ու ուկրաինացին, բելոռուսն ու վրացին, հայն ու տաջիկը, ղազախն ու կիրգիզը... Միասին մարտնչող զինվորների իղձերն ու նպատակները մեկ էին՝ անկախ ազգային պատկանելիությունից: Համատեղ թափած արյունը ավելի սերտացրեց խորհրդային ժողովուրդներին: Ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության գաղափարը վառ ձևով է դրսևորված զինվորի գրած նամակի հակիրճ տողերում: Ահա մի քանի բնորոշ տողեր նամակներից...

«Իմ ընկերները տարբեր ազգերի զավակներ են: Երկուսը՝ հայ, երեքը՝ ռուս, չորսը՝ վրացի: Ապրում և պայքարում ենք մի ընտանիքի նման: Այս մարտական բարեկամությունը կապրի ընդմիշտ: Թշնամին մեր հարվածների տակ փախչում է արևմուտք, բայց նա իր հայրենիքում էլ տեղ չունի...»:

Դասակի հրամանատար Նիկոլայ Աղաջանյան, 12-ը օգոստոսի, 1943 թ.:

«Սիրելի ծնողներ,— գրում է Վարդգես Աղաջանյանը,— այստեղ՝ պատերազմի դաշտում շատ անհրաժեշտ է մեր ժողովուրդների տարբեր ազգերի սերտ համախմբվածությունը: Առանձնապես ուրախալի է, որ հայ ժողովուրդը մարտական բարեկամությամբ կապված է ռուս մեծ ժողովրդի հետ, առանց իր ուժն ու կյանքը խնայելու ջախջախում է հիտլերյան բանակը: Թանկագին մայրիկ, ես ձեզ անչափ սիրում եմ և համոզված եղիր, որ կարդարացնեմ քո հույսերը, բայց ես սիրում եմ նաև հայրենիքը և եթե հարյուր կյանք ունենայի, հարյուրն էլ կտայի հայրենիքի ազատագրմանը: Իմացեք, որ իմ արյան վերջին կաթիլը կտամ և մինչև վերջին շունչս կկռվեմ դահիճների դեմ՝ հանուն հայրենիքի, հանուն իմ ժողովրդի, իմ անգին մամայի, թանկագին հայրիկի: Մեր խորհրդային արևի համար մեռնելն անմահություն է:

Ձեր Վարդգես Աղաջանյան, 11 հոկտեմբերի, 1942 թ.»:

«Բարև, իմ սիրելի Քնարիկ:

Ես լավ եմ... Կատարում եմ իմ զինվորական պարտքը հայրենիքի հանդեպ: Իմ մարտական ընկերների՝ ուրալցի լեյտենանտ Ակիմովի, օրյոլցի կրտսեր լեյտենանտ Լևաշովի, խերսոնցի կրտսեր լեյտենանտ Բիկովի, քութայիսցի ավագ Ռուխաձեի հետ անխնա ոչնչացնում ենք զարշելի հիտլերականներին: Իմ ընկերները թռիչքում արծիվ են, կռվի մեջ՝ առյուծ: Իմ էսկադրիլիայի անձնակազմի մեծ մասը կովկասցիներ են: Նրանք դիպուկ են հարվածում ֆաշիստներին: Ընկերներիս ցած գցած ինքնաթիռների հաշիվը օրըստօրե մեծանում է: Սիրելի քույր, մինչև վերջին ֆաշիստը կոչնչացնենք և պարզ ճակատով կվերադառնանք: Բարևիր մերոնց: Համբուրում եմ: Եղբայրդ՝ Սամսոն Մկրտումյան, Խորհրդային Միության հերոս»:

«Բարև սիրելի քույր Սամար... Ինձ մոտ միայն մեկ հայ տղա կա, Լենինականից, իսկ մյուս ընկերներս ռուսներ են, բայց մեր բոլորի նպատակը մեկն է՝ ապրել ազատ, առանց գերմանական զավթիչների»:

Վահե Լևոնյան, ավագ սերժանտ, Խորհրդային Միության հերոս, 22-ը հուլիսի 1943 թ.:

Իսկ ահա երկու հերոս հաշիվ են տալիս իրենց հարազատներին. «... Իմ թանկագին, սիրելի, անմոռանալի Բալախանում ջան: Հինգ ամիս է, որ գտնվում եմ ռազմաճակատում, դեկտեմբեր ամսից վրաս կային վերքեր՝ աջ ոտքիս և մեջքիս, բայց արդեն լավանում են: Ես իմ ձեռքով, իմ մարտական հրացանով ոչնչացրել եմ 25 ֆաշիստ: Բալախանում ջան, դեռ քիչ եմ

ոչնչացրել, դեռ նպատակ ունեմ, որ վերքս լավանա, գնամ սրտիս ոխը հանեմ»:

Հունան Ավետիսյան, Խորհրդային Միության հերոս: 19-ը դեկտեմբերի, 1942 թ.:

«Բարև, թանկագին մամա: Գտնվում եմ ֆրոնտում: Այս կարճ ժամանակամիջոցում երկու անգամ վիրավորվել եմ, սակայն ոչինչ, այժմ առողջ եմ և ինձ շատ լավ եմ զգում, իմ տանկերով ջախջախում եմ լպիրշ թշնամուն, արդարացնում եմ ձեր մայրական հույսերը, կատարում իմ որդիական պարտքը...»: Գրոհներից մեկի ժամանակ այս տողերի հեղինակը, գվարդիայի ավագ լեյտենանտ Վաղինակ Զաքարյանը մարտի բռնվեց թշնամու մի քանի տանկի դեմ և հաղթանակով դուրս եկավ: Այդ խիզախության համար նա արժանացավ Խորհրդային Միության հերոսի կոչման:

Նամակնե՜ր, նամակնե՜ր... Դուք պատմում եք մարդկային սրտի բաբախյունի մասին, հայրենի հողի և ջրի քաղցրության մասին, դուք տողեր չեք միայն, դուք հողի տաք ակոս եք և ծիծեռնակի սլացք երկնակամարի կապույտ անհունններում:

Թանգարանային մասունք են դարձել քաղաքացիական կռիվների հերոս Ալեքսանդր Տոնոյանի որդու՝ հինգնագնաց հրետանու հրամանատար Վարդան Տոնոյանի նամակները: Բոբրույսկից մինչև Արևելյան Պրուսիա մարտական փառապանծ ուղի անցած Տոնոյանը իրեն պսակել է բազում սխրանքներով: Իր հրետանու անձնակազմի երեք ռուս ռազմիկներին փրկելու ժամանակ 22-ամյա Վարդանը զոհվել է հերոսաբար: Չի կարելի առանց հուզմունքի կարդալ ծնողներին, սիրած աղջկան ռազմի դաշտից գրած նրա նամակները:

«Թանկագինս,— գրել է նա հարսնացուին,— հենց նոր դուրս եկանք մարտից: Այժմ մի փոքր հանգստանում ենք՝ նստած գետնափորում: Նստած եմ, և ամբողջ մտքերս թռչում են դեպի քեզ: Ինչպե՜ս կուզենայի լինել քեզ մոտ... Արդեն շուտով, շատ շուտով մենք միասին կլինենք, մենք կտեսնենք այդ լուսապայծառ ժամը, բայց մինչ այդ պետք է վրեժ առնել մեր հայրենիքին հասցրած վերքերի համար, մարտերում ընկած ընկերների համար»:

Մի ուրիշ նամակում Վարդանը սիրած աղջկան գրում է.

«Տիհուսյա, այժմ մեզ մոտ հանգիստ է. պատրաստվում ենք վճռական մարտերի, պարապում ենք: Կարող ես ինձ շնորհավորել, այսօր ինձ ընդունեցին կուսակցության շարքերը: Մի փոքր իմ մասին. սովորում եմ ինքնուրույն կյանքին: Ճանաչում եմ նրա լավ և վատ կողմերը: Այստեղ ստուգվում են բնավորությունը, ընկերությունը, վերաբերմունքը մարդկանց նկատմամբ...»:

Իրենց հայրերի, ավագ եղբայրների պայքարում նվաճված ազատությունը պաշտպանելու պատրաստակամության վկայություններ են շատ նամակ-վավերաթղթեր: Հերոսական այդ օրերի մասին հիմա էլ սրտառուչ են պատմում ավելի քան չորս տասնամյա հնություն ունեցող եռանկյունի նամակների այն ծլատ տողերը, որոնք ասես դարերի համար են գրված:

Մեծ ու անեղ կռվից տուն չդարձած քսան միլիոնից երեքը ծնվել, մեծացել, ռազմաճակատ են մեկնել Ղափանի շրջանի Վաչագան գյուղի Շամխալ Նուրիջանյանի տնից: Ավագը՝ Բաբկենը, կիսատ թողնելով Մոսկվայի էլեկտրատեխնիկական ինստիտուտը, ծառայում էր Բրեստի լեգենդար կայազորում, միջնեկը՝ ավագ լեյտենանտ Շահենը, Երևանի պետական համալսարանի ֆիզիկամաթեմատիկական ֆակուլտետի վերջին կուրսից ռազմաճակատ մեկնեց 1942-ի մայիսին: Կրտսեր որդին՝ Շմավոնը, վերջին նամակը գրեց Լիտվայի Կաունաս քաղաքի մոտ գտնվող Կալվարիա գյուղից: Երեքից ոչ մեկը հայրենի օջախ չվերադարձավ: Երկար սպասելուց ծնողների աչքը ջուր կտրեց, ընկրկեցին: Տուն չդարձած երեք եղբայրների նամակները սրբությամբ պահում է նրանց քույրը՝ Ռիման: Այդ նամակներում միայն երեք զինվորի կյանք չի ամփոփված: Դրանք ժամանակի ու սերնդի, իրադարձությունների, հոգսերի և ապրումների, ուրախությունների ու վշտերի պատմություն են: Դրանք գրանիտե և մարմարե սալաքարերի վրա փորագրված տողերի նման հետքեր են թողել, որ պիտի անցորդները ոտնկայս կարդան: Դրանք ընդերքից պեղված հազարամյակների հնություն ունեցող սեպագիր վկայությունների նման մասունքներ են, որ սերունդները տառ-տառ պիտի վերծանեն՝ մեր ապրած ժամանակների պատմությունը ամբողջ լայնքով ու խորությամբ վերհանելու համար:

«... Սիրելի հայրիկ, մայրիկ և քույրիկ ջան,— գրում է ավագ որդին պատերազմի առաջին օրերին,— ծանր է լինելու մեր վիճակը, շատ ավելի ծանր, քան պատկերացնում ենք... Ես գիտեմ, հայրիկ, դու կաթված ես ստացել, մայրիկը ստամոքսի խոց ունի, իսկ Ռիման ընդամենը 15 տարեկան է: Բայց, միևնույն է, պետք է շատ աշխատեք, առանց դրա հնարավոր չի լինի: Երեք զինվորի ծնողները սովատանջ լինելու իրավունք չունեն... Աշխատեք և՛ կոլտնտեսությունում, և տնամերձի վրա: Որ ֆաշիզմին կհաղթենք՝ կասկած չկա, բայց դա ոչ օրերի, ոչ էլ ամիսների հարց է...»:

Նովոռոսիյսկի մատույցներից Շահենը, մարտերի կարճատև դադարի ժամանակ ծնողներին գրում է վերջին նամակը. «... Դե երեքից մեկն ու մեկը հո կենդանի կմնա՞, կտնավորվի, սերունդներ կունենա և իր ապրելով վրեժ կլուծի զոհվածների համար...»:

Բայց երեքից ոչ մեկը չվերադարձավ... Շահենի փոխարեն հարազատները ստացան մի ծլատ, ողբերգական երկտող, որ այն օրերին «սև թուղթ» էին կոչում. «... Ձեր որդին՝ ավագ լեյտենանտ Շահեն Նուրիջանյանը, հերոսաբար զոհվեց 1943 թվականի մարտի մեկին, Նովոռոսիյսկի մատույցներում»:

Մեկ տնից զոհված երեք զավակներից նամակներ են միայն մնացել, լավատես ու ոգևորիչ տողերով, ապագայի նկատմամբ հավատով տոգորված նամակները: Այդ նամակները հիմա էլ ասելիք ունեն սերունդներին, ասելիք այն մասին, թե ինչպես պետք է ապրել ու պայքարել...

«... Սիրելի Նլեհա և Նեոք, վաղը կարող է ես չլինեմ, բայց համոզված եղեք, որ ինձ համար չեք կարմրի...»: Այս տողերի հեղինակը Ղափանի շրջանի Ագարակ գյուղից ռազմաճակատ մեկնած Գեղեոն Ավագյանն է, որը նամակը հասցեագրել է հայրենի գյուղ՝ քրոջն ու փեսային: Այդ համեստ ու սակավախոս ռազմիկը մարտնչեց և զոհվեց որպես իսկական հերոս: Հիմա Բրեստում, խոլմյան դարպասի դիմաց մամռապատ մի բլուր կա՝ վրան Բերդաքարեր: Բերդի պատերի այդ հինավուրց քարերը հիմա փոխել են իրենց կոչումը, դարձել շիրմաքարեր: Ու դրանցից մեկն էլ հավերժացնում է Խորհրդային Հայաստանից Բրեստի պաշտպանությանը մասնակցած զինվորի՝ Գեղեոն Ավագյանի անունը...

Ընդամենը տասի վեց տող է Խորհրդային Միության հերոս Հարություն Ջաքոյանի՝ մորն ուղղված նամակը, բայց հատորներ արժե: Դարերին ուղղված քանդակ, որ հնչում է որպես ազատության խորհրդանիշ: «Սիրելի մայրիկ, Սապուն լեռան ազատագրման համար անեղ մարտեր են գնում: Լեռները սիրում են ազատությունը: Երակներիս մեջ հոսող պապերիս արյունը վարակել է ինձ՝ կռվել այդ սուրբ ազատության համար: Այսօր իմ դիմաց Սապուն լեռն է՝ մշուշված Արագածի պատկերով: Ուր էլ լինեն, ինչ անուն էլ կրեն, լեռները ազատություն են սիրում...»:

Նամակներ կան, որոնց հնամաշ թերթերի վրա արյան հետքեր են նշմարվում: Ահա դրանցից մեկը: Եռանկյունի մի ծրար, որի հեղինակը 409-րդ դիվիզիայի տանկիստ, Հոկտեմբերյանի շրջանի Նորապատ գյուղից Մուկուչ Գոզոյանն է: Մի անհավասար մարտի ժամանակ Մուկուչը խփեց թշնամու երեք տանկ, իսկ ինքը ձեռքից վիրավորվեց: Հաղթանակով զորամաս վերադառնալուց հետո նա հանգիստ խղճով մորը նամակ գրեց. «... Մայրիկ ջան, չտխրես, որ նամակս արյունոտ է: Կգա այն օրը, երբ մեր պարտեզում կնստենք, քեֆ կանենք և կհիշենք այդ արյունոտ նամակը...»: Մուկուչ Գոզոյանը ռազմաճակատից այդպես էլ չվերադարձավ, իսկ նամակը պահ է տրվել դարերին...

Գուրգեն Մնացականյանի անունը գրված է գրանիտե երկու հուշարձանների վրա: Դրանցից մեկը կանգնեցված է Ղափանի շրջանի Ճակատեն գյուղում, որի վրա փորագրված են մեծ Հայրենականի ռազմադաշտերում զոհված համագյուղացիների անունները և նրանց թվում՝ Գուրգենինը: Մյուս հուշարձանը հեռավոր Լիտվայում է, Կաունասյան ծովի ափին: Եղբայրական գերեզմանոց կա այնտեղ, մարմարե հուշաքարերով ու մեկի վրա գրված՝ լեյտենանտ Գուրգեն Մնացականյան:

Լիտվայի ազատագրման համար զոհված հերոսը 1944-ի ամռանը գումարտակի հրաձգային վաշտի հրամանատար էր: Ռոմշիշկես ավանի մոտ վաշտը գրոհի տանելուց առաջ Գուրգենը վերջին նամակն է գրում հարազատներին. «... Ուղարկում եմ 500 ռուբլի: Օգոստոսի 5-ին աղջկաս ծննդյան օրն է, որին դեռ չեմ տեսել: Այդ օրը նրա համար գնեցեք նվերներ: Եվ եթե բախտն ինձ չժպտա ու ես զոհվեմ, թող աղջիկս հիշի բարի անունով»:

Հուլիսի 22-ին Գուրգենը զոհվեց:

... Պատմությունն ապրում է մեզանից յուրաքանչյուրի մեջ, և մենք չենք կարող մոռանալ այն: Այդպես են հրամայում անմահները, նրանք, ովքեր չկան, ովքեր զոհվել են սուրբ գործի՝ Հայրենիքի ազատության համար: Անմահությունը զոհվածների նկատմամբ ողջերի պատասխանն է, նրանց երախտագիտությունը:



# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՐՈՍԸ

Լրացավ հայ նշանավոր զորավար, ժողովրդական հերոս ԱՆԴՐԱՆԻԿ ՕԶԱՆՅԱՆԻ ծննդյան 125-ամյակը: Այդ հիշարժան տարելիցի առթիվ ձեզ ենք ներկայացնում ՀԽՍՀ ԳԱ ակադեմիկոս ՄԿՐՏԻՉ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ հետ մեր աշխատակից ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ հարցազրույցը:

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Հարգարժան ակադեմիկոս, Դուք տարիներ շարունակ զբաղվել եք հայ ժողովրդի ազատագրական շարժման պատմության պրոբլեմներով: Եթե չենք սխալվում, դեռևս 40-ական թվականներին պաշտպանել եք դիսերտացիա, որի համար հալածվել եք: Մեր ժողովրդին այսօր առավել, քան երբևէ, հուզում ու անհանգստացնում են այդ հարցերը:**

Մ. ՆԵՐՍԻՍՅԱՆ.— Դեռևս 1946 թվականին, խիստ անբարենպաստ պայմաններում, հաջողվեց ՀԽՍՀ գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտում պաշտպանել դոկտորական դիսերտացիա «Հայ ժողովրդի ազատագրական պայքարը սուլթանական դեսպոտիզմի դեմ 1850—1870-ական թթ.» թեմայով: Սակայն ստալինյան զգոնության ուղղափառ ասպետները չհապաղեցին հանդես գալ պատմական փաստերի դեմ և առաջ քաշեցին «քաղաքական եզրակացություններ»: Շուտով դիսերտացիայի հեղինակը ամբաստանվեց նացիոնալիզմի, իսկ ավելի ուշ՝ նաև՝ «բուրժուական միասնական հոսանքի» տեսությանը տուրք տալու մեջ: Տպագրվեցին «մերկացնող» հոդվածներ: Հարցը քննարկվեց ղեկավար ատյաններում, հեղինակը ստացավ նկատողություն, «ընդունեց սխալները» և այլն: Ուսումնասիրությունը լույս տեսավ միայն ինը տարի հետո՝ 1955 թվականին Ն. Ս. Խրուշչովի ձեռնարկած բարեփոխումների շրջանում:

Այնուհետև տարբեր առիթներով հրատարակել եմ մի շարք հոդվածներ այդ նույն հարցի վերաբերյալ: Օրինակ, «Հայ ազգային-ազատագրական շարժումը օսմանյան բռնապետության դեմ և պատմության կեղծարարները», «Հայ ազատագրական շարժումը և հնչակյանները 1880—1890-ական թվականներին» և այլն:

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ինչպե՞ս եք Դուք գնահատում XIX դարի երկրորդ կեսի և XX դարի սկզբների ազատագրական շարժումները:**

Մ. ՆԵՐՍԻՍՅԱՆ— Օսմանյան բռնապետության դեմ XIX դարի երկրորդ կեսին ծավալված հայ ազգային-ազատագրական շարժումը մեր ժողովրդի բազմադարյան պատմության ամենափայլուն էջերից է: Հերոսական դրվագներով ու հայրենասիրական խիզախ ընդվզումներով լի այդ շարժումը հիմնականում ուներ ինքնապաշտպանական բնույթ: Եթե խոսենք նրա մի քանի գլխավոր առանձնահատկությունների մասին, ապա պետք է նկատել, որ այդ շարժումը ընդունեց տարբեր ձևեր ու երանգներ՝ ժողովրդական ինքնաբուխ ապստամբական ելույթներ, գաղտնի խմբակների, կազմակերպությունների ու քաղաքական կուսակցությունների գործունեություն, կամավորական շարժում, հայդուկային-ֆիդայական պայքար, ձևավորված ու հասարակական մեծ ազդեցություն ունեցող գաղափարախոսություն:

Ազատագրական պայքարի գլխավոր կենտրոններն էին Վանը, Էրզրումը (Կարին), Զեյթունը, Մուշը, Սասունը, Ուրֆան, Շապին-Գարահիսարը, և այլն:

Շարժմանը գործուն մասնակցություն ցուցաբերեցին հայ դեմոկրատական լայն շրջանները և, հատկապես, ուսանողությունը: Մինչև 1880-ական թվականների սկզբները պայքարը գլխավորում էին գաղտնի խմբակներ ու կազմակերպություններ, ապա քաղաքական կուսակցությունները՝ արմենականները, հնչակյանները և դաշնակցականները: Հատկանշական է, որ հայ ազատագրական շարժումը, ինչպես նախորդ շրջաններում, ուներ հիմնականում ռուսական կողմնորոշում:

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ի՞նչ տեղ է զբաղեցնում զորավար Անդրանիկը այդ շարժումներում և որն է նրա դերն ու գործունեության առանձնահատկությունները:**

Մ. ՆԵՐՍԻՍՅԱՆ.— Զորավար Անդրանիկ Օզանյանը (1865—1927) մեր ազգային-ազատագրական շարժման ամենափայլուն դեմքն է, այդ հերոսական պայքարի շատ դրվագներ կապված են նրա անվան հետ: Իր մարտական-հայրենասիրական փայլուն գործունեությամբ նա վաղուց արդեն պատվավոր տեղ է գրավել մեր ժողովրդի հերոսական անցյալի պատմության մեջ: Տաղանդավոր զորավարի անունը ոգեշնչել է ժողովրդի ազատասեր բոլոր խավերին: Ժամանակակիցները նրան տվել են հայկական Գարիբալդի, Լեռնային արծիվ, Անհաղթ դյուցազուն և նման այլ մականուններ: Անդրանիկի մասին հյուսվել են բազմաթիվ երգեր ու լեգենդներ, ժողովուրդն անմահացրել, հավերժացրել է նրա անձն ու սխրանքը: Զորավար Անդրանիկը միաժամանակ աչքի է ընկել իր համեստությամբ, պարզությամբ, ազնվությամբ ու մարդասիրությամբ: Այս բոլորը, անկասկած, ավելի են բարձրացրել նրա հմայքը ժողովրդական զանգվածների շրջանում: Նրան չէր կարելի չհարգել ու չսիրել: Բնորոշ են այն տողերը, որ գրել է ռուսական թերթերից մեկը Անդրանիկի մասին 1915 թվականին. «Ֆիզիկական արիությունը և իսկական զինվորական քաջությունը Անդրանիկը զուգակցել է հոգեկան խոր ազնվության և լայն սրտի բարության հետ: Լինելով մեղմ և անվերապահ մարդասեր, նա մշտապես հետ է պահել իր բարեկամներին ավելորդ դաժանությունից... Զգայուն, ուշիմ և չիմանալով, թե ինչ է անձնական կյանքը, նա չի հասկանում մարդկանց բութ եսասիրությունը: Ով գոնե մեկ անգամ հանդիպել է Անդրանիկի հետ, չի կարող չսիրել այդ կատարյալ մարդուն»:

Իր ժամանակակիցներից Ա. Ահարոնյանը նրա մասին գրել է. «Սիրում էր հայ խոնարհ, աշխատավոր ժողովուրդը և ատելով ատում էր մեր այն կծծի ունևորներին, որոնց հոգին թղթապանակում միշտ փակված մնաց մեր աշխարհն ալեկոծող ողբերգական անցքերի օրերին»:

Անդրանիկն իր գործունեությունը սկսեց 1880-ական թվականների վերջերին: Մինչև 1905 թվականը նրա գործունեությունն ընթացավ ֆիդայական շարժման հունով: Ղեկավարելով հայդուկային խմբեր, նա պայքար էր մղում իր ժողովրդին փրկելու օսմանյան դաժան վարչակարգից, հարըստահարումներից, ջարդերից, կոտորածներից: Այդ շրջանում գլխավորապես գործելով Տարոնում, Մուշում, Սասունում, մյուս նշանավոր ֆիդայիների (Աղբյուր Սերոբ, Գևորգ Չաուշ) հետ, ի հայտ բերեց սխրագործության փայլուն նմուշներ՝ ահ ու սարսափ տարածելով թուրք օսմանյան փաշաների, բեկերի, շեյխերի շրջանում: Անդրանիկն ու իր ջոկատը հատկապես աչքի ընկան 1901 թ. նոյեմբերին Մշո ս. Առաքելոց վանքի պաշտպանական կռիվներում: Բնորոշ է, որ նրա 30 հոգուց բաղկացած ջոկատը հերոսաբար դիմադրեց բազմաքանակ թուրքական զորքին: Անդրանիկի սխրագործությունների համբավը տարածվեց Հայաստանում, Կովկասում, Ռուսաստանում, Արևմտյան Եվրոպայում:

1904 թվականի գարնանը նորից ապստամբության դրոշ բարձրացրեց Սասունի հայ գյուղացիությունը: Տեղի ունեցան կատաղի մարտեր թուրքական զորքերի և ապստամբ գյուղացիների միջև: Անդրանիկն իր ջոկատով գործուն մասնակցություն ունեցավ այդ կռիվներին և բազմիցս փայլուն հաղթանակներ տարավ մի քանի ան-

գամ գերակշռող թուրքական ուժերի նկատմամբ: Ժամանակակիցներից մեկն ասում է. «Իր անհամեմատ փոքր ջոկատով քաջ պարտիզանը մի անգամ չէ, որ հաղթանակ է տանում սուլթանի զորքերի ուժեղ զորամասերի նկատմամբ: Միշտ և ամենուրեք լինելով բոլորի առջևում, անվախ Անդրանիկը հրապուրում էր զինակիցներին և նրանց վարակում մահվան նկատմամբ ունեցած իր արհամարհանքով»: «Անդրանիկի հրաշքները». այդպես էին որակվում այն ժամանակ նրա անօրինակ սխրագործությունները:

Արևմտյան Հայաստանում մի քանի այլևայլ ճակատամարտեր վարելուց հետո Անդրանիկը 1905 թ. գալիս է Կովկաս, ապա անցնում Եվրոպա, 1907 թվականին՝ Բուլղարիա: Ի տարբերություն հայ բազմաթիվ ֆիդայիների, Անդրանիկը դարձավ զինվորական նշանավոր գործիչ և հետագայում ստացավ գեներալ-մայորի կոչում:

Դեռևս Բալկանյան առաջին պատերազմի շրջանում (1912—1913 թթ.) Անդրանիկի ջոկատը, որը բաղկացած էր 273 մարդուց, մասնակցեց թուրքական զորքերի դեմ մղված կռիվներին: Մակեդոնական աշխարհազորի պետ, գեներալ-մայոր Գենը 1913 թ. օգոստոսին գրել է. «Հայկական վաշտը, հակառակ հագուստեղենի և այլ պիտույքների պակասին, իր կարգապահությամբ և հաստատակամությամբ միշտ եղել է ուժեղ և մարտերում էլ՝ չափազանց քաջ: Այս վաշտի բոլոր մասնակիցները կարող են հպարտանալ իրենց քաջերի գործունեությամբ: Իսկ Հայաստանը պետք է վստահ լինի, որ այսպիսի զավակներով, որոնք ընդունակ են նույնիսկ օտար դատի համար մեռնելու, պիտի հասնի երջանիկ ու տևական ազատության ոչ հեռավոր ապագայում»:

Հայտնի է, որ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին (1914—1916 թթ.) Անդրանիկը ռուսական կովկասյան գործող բանակի շարքում գլխավորելով հայ կամավորների առաջին զորամասը, գործուն մասնակցություն ունեցավ բազմաթիվ ճակատամարտերի, որոնց ընթացքում աչքի ընկավ իր ռազմական արվեստի փայլուն դրսևորումներով:

Խոսելով 1915 թվականի ճակատամարտերի մասին, ռուսական բանակի շտաբկապիտան Կիսելյովը գրել է. «Անդրանիկը, իր թույլ պատրաստված զորամասի գլուխն անցած, շարունակ անձամբ էր առաջնորդում մարտիկներին, հանդես բերելով ոգու բացառիկ տոկունություն և խելահեղ անվեհերություն, իր հետևից տանում էր ամբողջ զորամասը: Ես տեսնում էի, թե ինչպես մի բուռ խիզախներ, հրապուրված իրենց առաջնորդով, դեպի անխուսափելի մահ էին նետվում կարկուտի պես տեղացող շրապնելների և գնդացրային կրակի անեղ տարափի տակ... Այդ ճակատամարտում Անդրանիկը մեկն էր այն եզակի զորավարներից, որի ջանքերով հակառակորդից երեք անգամ թույլ մեր զորագունդը կարողացավ կասեցնել թուրքական լավագույն դիվիզիաներից մեկի կատաղի գրոհը»:

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ի՞նչ կարող եք ասել Անդրանիկի ռուսական կողմնորոշման մասին:**

Մ. ՆԵՐՍԻՍՅԱՆ— Ինչպես հայ ազատագրական շարժման մյուս գործիչները, այնպես էլ Անդրանիկը ունեցել է ռուսական կողմնորոշում: Որոշ շրջանում նա սպասելիքներ ուներ Անգլիայից, բայց շուտով հիասթափվեց: Ողջախոհությունը, կյանքի փորձը և իմաստությունը նրան բերեցին այն համոզման, որ ժողովուրդը կարող է ռեալ օգնություն ստանալ միայն Ռուսաստանից: Անդրանիկը ողջունեց ցարական կարգերի տապալումը Ռուսաստանում:

1918 թվականին, երբ թուրքական զավթիչների արշավանքի հետևանքով Անդրկովկասում ստեղծվել էր ճգնաժամային վիճակ, գեներալ-մայոր Անդրանիկը որոշեց իր ուժերը տրամադրել խորհրդային Ռուսաստանին: Այդ նպատակով հուլիսի 4-ին նա հեռագիր ուղարկեց Բաքու՝ Կովկասի արտակարգ կոմիսար և Բաքվի ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ Ստ. Շահումյանին՝ հետևյալ բովանդակությամբ. «Նախիջևանի գավառը, ուր ներկայումս գտնվում եմ իմ ջոկատով, հայտարարում եմ Ռուսաստանի հանրապետության անբաժան մասը: Խնդրում եմ հայտնել ում հարկն է, որ ես իմ ջոկատով այսօրվանից գտնվում եմ Ռուսաստանի կենտրոնական կառավարության տրամադրության տակ և ենթարկվում նրան: Կաշխատեմ արգելակել թուրքական զորքերի մուտքը Նախիջևանի գավառ: Սպասում եմ պատասխանի և կարգադրության»:

Ստ. Շահումյանը բարձր գնահատեց Անդրանիկի արած քայլը: Մի քանի օր հետո նա ուղարկեց պատասխան հեռագիր. «Ժողովրդական առաջնորդ Անդրանիկին: Ձեր հեռագիրը ստացա: Լրիվ տեքստը հաղորդել եմ Մոսկվա, կենտրոնական կառավարությանը: Իմ կողմից հանձին Ձեզ, ողջունում եմ իսկական ժողովրդական հերոսին: Եթե պարոնայք Քաջազնունիները և մյուսները Ձեզ նման լինեին, հայ գյուղացիությունը չէր ապրի ներկայիս ողբերգությունը: Ողջույն հաղորդեցեք Ձեր դրոշի տակ մարտնչող բոլոր խիզախ մարտիկներին և ամբողջ աշխատավոր ազգաբնակչությանը... Երբ մենք հաղթենք թուրքերին, խաներին ու բեկերին, վրաց իշխաններին ու հայ բուրժուազիային, այն ժամանակ ամբողջ Անդրկովկասի միավորված գյուղացիներն ու բանվորները խորհրդային իշխանություն կհաստատեն իրենց ընդհանուր համագումարում և կրկին կկապվեն ռուսաստանյան մեծ հանրապետության հետ: Ուրախ կլինենք Ձեզ անհրաժեշտ աջակցություն ցույց տալու: Գուցե ուղիներ որոնենք կապ պահպանելու համար»:

Թուրքական բանակի ներխուժումը 1918 թ. Անդրկովկաս, Բաքվի հերոսական կոմունայի անկումը հնարավորություն չտվեցին Անդրանիկին իրագործելու իր նոր ծրագիրը: Սակայն անխոնջ ու տոկուն մարտիկը դիմեց ամեն հնարավոր միջոցի՝ Հայաստանը ազատագրելու թուրք ջարդարարներից:

1918 թվականի աշնանը Անդրանիկն իր զորամասով անցավ Զանգեզուր, ուր մեծ չափով դիմադրեց մուսավաթականների կողմից այն գրավելու փորձերին:

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ի՞նչ կասեք զորավար Անդրանիկի հրատարակած «Հայաստան» օրաթերթի մասին:**

Մ. ՆԵՐՍԻՍՅԱՆ.— 1917 թ. Թիֆլիսում սկսեց հրատարակվել «Հայաստան» օրաթերթը, որի կազմակերպիչներից մեկը ինքը՝ Անդրանիկն էր և արևմտահայ մտավորականության մի շարք գործիչներ: Հատկանշական է, որ թերթի փաստական խմբագիրն էր գրող Վահան Թոթովենցը:

Թերթի համարներում տպագրվել են Անդրանիկի մի շարք կոչերը ուղղված հայ երիտասարդներին, զինվորականությանը, ինչպես նաև նյութեր տարբեր քաղաքներում ունեցած նրա ելույթների մասին: Թերթում հրապարակված մի շարք հոդվածներում արտահայտվում էին նրա հայացքները կովկասյան այն ժամանակվա քաղաքական իրադարձությունների վերաբերյալ:

Հետաքրքիր է նշել այն հանգամանքը, որ Անդրանիկը հանդես բերեց զարմանալի հեռատեսություն: Ինչպես 1918 թվականին, այնպես էլ դրան նախորդած տարիներին, նա միշտ զգուշացնում էր, օրինակ, որ չպետք է հավատալ երիտթուրքերին, քանզի նրանք հայ ժողովրդի ոխերիմ թշնամիներն են: Կյանքը ցույց տվեց, որ Անդրանիկն ավելի ճիշտ էր, քան այն ժամանակվա շատ քաղաքական գործիչներ:

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ինչու՞ երկար ժամանակ չէր գրվում մեր ազգային-ազատագրական շարժման և դրա հետ կապված զորավար Անդրանիկի մասին: Նրա գործունեության վերաբերյալ արդյոք նախատեսվա՞ծ է լույս ընծայել գիրք: Այսօր, ինչպես երբեք, հայ ժողովուրդը զգում է դրա անհրաժեշտությունը:**

Մ. ՆԵՐՍԻՍՅԱՆ.— Անհատի պաշտամունքի տարիներին, երբ գաղափարական ճակատում իշխում էին կարծրացած դոգմաները, հայ ազատագրական շարժումը դիտվում էր որպես հետադեմ շարժում: Բանը հասնում էր նրան, որ արևմտահայության շարժումները համարվում էին «ավանտյուրիստական» և վնասակար: Բերենք մեկ օրինակ. 30-ական թվականների հեղինակներից մեկը գրել է. «Հայ բուրժուազիայի մարտական կուսակցությունը՝ դաշնակցությունը, եղել է և է հակահեղափոխական այն ուժը, որի մոտ 40 տարվա ավանտյուրիստական, ֆիդայական քաղաքականության պատճառով բնաջնջվել են միլոնավոր հայ և թուրք աշխատավորներ, աշխարհի չորս կողմն են նետվել որբերի, հաշմանդամների ու գաղթականների հոծ զանգվածներ» («Էջմիածինը հակահեղափոխության սպասարկու», Երևան, 1932, էջ 25):

Ինքնին հասկանալի է, որ նման պայմաններում ավելորդ էր մտածել, թե որևէ մեկը դրական խոսք կասեր մեծ հայրենասերի մասին:

Հարկ է նկատել, սակայն, որ սփյուռքում միշտ էլ գրել են մեր ազատագրական շարժման և Անդրանիկ զորավարի մասին: Հրատարակվել են բազմաթիվ աշխատություններ, հուշեր, նյութերի ժողովածուներ և այլն: Մեզ մոտ՝ Խորհրդային Հայաստանում, զորավարի մասին հոդված հրապարակվեց առաջին անգամ 1965 թվականի փետրվարին (նրա ծննդյան 100-ամյակի կապակցությամբ) «Սովետական Հայաստան» թերթում՝ «Ժողովրդական հերոսը» վերնագրով: Ի դեպ, հոդվածը պատկանում է մեր գրչին: 1960—70-ական թվականներին Հայաստանի պետական կենտրոնական պատմական արխիվի կոլեկտիվը զգալի նյութեր հավաքեց Անդրանիկի մասին, բայց դժբախտաբար, ինչինչ պատճառներով դրանք չհրապարակվեցին: Կուսակցական ղեկավար մարմինների որոշմամբ մոտ ապագայում ռուսերեն լեզվով տպագրության կհանձնվի նյութերի ժողովածու Անդրանիկի և նրա գործունեության վերաբերյալ:

Ուրախալի է, որ վերջին ժամանակներս այդ հարցին անդրադառնում են մի շարք հեղինակներ, բայց ասենք, որ նրանցից շատերը կարծես գյուտ են անում և «սպիտակ էջերը» լրացնում, չնշելով, որ այդ

հարցերի մասին սփյուռքում հարյուրավոր գրքեր, գրքույկներ, նյութերի ժողովածուներ են հրատարակվել: Չմոռանանք, որ մեր ազատագրական շարժման պատմությունը խեղաթյուրում են պատմության թուրք կեղծարարները և նրանց կրկնող ադրբեջանցի մի շարք պատմաբաններ՝ հորինելով մեր ազգին վարկաբեկող զրպարտություններ:

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Մկրտիչ Գեղամի, Արցախյան ազատագրական շարժման արդի փուլը նույնպես իր առնչությունները ունի նախորդների հետ: Եվ որպես հայ ժողովրդի ինքնագիտակցության զարթոնքի նոր փուլ, որպես վերակառուցման արգասիք, Ձեր կարծիքով, ինչպիսի՞ն է այն և ի՞նչ հեռանկարներ եք ակնկալում:**

Մ. ՆԵՐՍԻՍՅԱՆ.— Ղարաբաղի հայ բնակչության ազատագրական իղձերը, անկասկած, պետք է իրագործվեն: Այդ են պահանջում մեր ժամանակների դեմոկրատիան և մարդասիրությունը:

Դեռևս 1988 թ. մայիսի 12-ին հանրապետության գիտությունների ակադեմիայի ընդհանուր ժողովում ունեցած իմ ելույթում ասել եմ. «Այսօր, երբ մեր երկրում լայնորեն իրագործվում են դեմոկրատիայի և հրապարակայնության սկզբունքները, երբ վերանայվում են անցյալից մեզ ժառանգություն մնացած և ոչ ճիշտ լուծում ստացած շատ հարցեր, ժամանակն է լուրջ քննարկման ենթարկել արցախահայության միանգամայն արդարացի պահանջը: Խնդրի այդպիսի լուծումը չի հակասում վերակառուցման գործին և ժողովուրդների բարեկամության սկզբունքներին: Ընդհակառակը, այն բխում է ժողովուրդների ինքնորոշման իրավունքի լենինյան սկզբունքից: Բայց զարմանալի է, որ Լեռնային Ղարաբաղի հարցի կապակցությամբ միութենական մամուլի մի շարք օրգաններում ու հեռուստատեսության առանձին հաղորդումներում փորձեր են արվում հայ ժողովրդի արդարացի պահանջը որակել որպես նացիոնալիստական: Որոշ անազնիվ մարդիկ, դիմելով բացահայտ հերյուրանքի, անգամ աշխատում են ստեղծել այն տպավորությունը, թե Ղարաբաղում և Երևանում տեղի ունեցած ցույցերն ու միտինգները, իբր, հրահրել են օտարերկրյա ուժերը: Դրանք հորինված են չարամիտ զրպարտիչների ու պրովոկատորների կողմից, որոնց նպատակն է առաջացնել հակահայկական տրամադրություններ: Միաժամանակ խորին շնորհակալություն պետք է հայտնել ռուս և մյուս եղբայրական ազգությունների այն ներկայացուցիչներին, որոնք ցավակցություն հայտնեցին Սումգայիթի բնակչության արյունոտ ջարդերի առթիվ»:

Այդ ելույթում կան նաև այսպիսի տողեր. «Միանգամայն անհասկանալի է այն, որ մեր երկրում ստեղծված նոր պայմաններում, ինչպես նաև միջազգային իրադրության այժմյան փուլում խորհրդային կառավարությունը դեռևս պաշտոնապես չի ընդունել արևմտահայության 1915 թ. ցեղասպանության փաստը, և դա այն ժամանակ, երբ եվրոպական շատ պետություններ ու աշխարհի առաջադեմ մարդկությունը հրապարակայնորեն հավաստել են այդ իրողությունները: Խորհրդային ղեկավարությունը ևս պետք է ընդունի հայերի 1915 թ. ցեղասպանության փաստը»:

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ինչպիսի՞ն է Ձեր կարծիքը Բաքվում այս տարվա հունվարին կատարված դեպքերի մասին:**

Մ. ՆԵՐՍԻՍՅԱՆ.— Ինչպես նշվեց մեր երկրում և ամբողջ աշխարհում, այդ դեպքերը իսկապես որ հայերի նկատմամբ ծրագրվող ու իրականացվող ցեղասպանության հերթական մի ակտ են, որոնց ընթացքում տեղի ունեցան քաղաքակրթված ազգերի համար միանգամայն անհասկանալի վայրագություններ: Մեր առաջնակարգ խնդիրն է անել ամեն ինչ, որպեսզի քաղաքական ճանապարհով լուծվի Լեռնային Ղարաբաղի հարցը և վերականգնվի խաղաղությունը ժողովուրդների միջև խորհրդային ֆեդերացիայի կազմում:

***

Հավանաբար, Անդրանիկ Օզանյանի երկրպագուներից քչերին է հայտնի, որ տաղանդավոր զորավարը, լինելով ներքին բարձր կուլտուրայով օժտված անձնավորություն, նաև ժամանակ է գտել թղթին հանձնելու իր հուշերը:

1905 թվականին Սասունի ապստամբության հաշվեհարդարից հետո նա մեկնում է Ժնև և հայտնի գյուղատնտես, այն ժամանակ ուսանող Գրձելյանին թելադրում իր կյանքի պատմությունը, այնուհետև իր ձեռքով կատարում լրացումներ, խմբագրում այն: Հուշերը տպագրվել են նրա մահից հետո սփյուռքահայ մամուլում և առանձին գրքով:

Այսօր պատմագիտությունը դեռ իր լիարժեք խոսքը չի ասել մեծ զորավարի ու հայրենասերի մասին: Այդ ասպարեզում որոշակի քայլեր են արվում: Նախատեսված է հրատարակել Անդրանիկի կյանքի ու գործունեության վերաբերյալ փաստաթղթերի ժողովածու, ժամանակակիցների խոսքը նրա մասին, ինչպես նաև մեծ հայրենասերի հուշերի գիրքը:



# ԳԹԱՍՐՏՈՒԹՅՈՒՆ

**Ա. ՊԱՐՍԱՄՅԱՆ**

19-ՐԴ ԴԱՐԻ 90-ական թվականներին անգլիացի ճանապարհորդուհի և գթության քույր միսս Քեթ Մերսդենը նախաձեռնում է ճամփորդել Յակուտական մարզի բոր հիվանդության (прока'за) տեղակայման օջախներով: Նա այդտեղ անցկացրեց շուրջ երկու տարի, այցելելով երկրամասի ամենախուլ անկյունները, հաճախ գիշերելով բորոտների հետ միասին նույն յուրտերում: Այդ մենակ կինը շատ բան արեց ոչ միայն Յակուտիայի, այլև Ռուսաստանի բորոտների համար, քանի որ նրա այդ ուղևորությունը նախաձեռնության մղեց այն ժամանակվա ռուս հասարակությանը՝ բորոտանոցներ կազմակերպելու:

Քրիստոնեական կրոնի հիմնադրույթներից բխող՝ քրիստոնեական եկեղեցին առհասարակ, և հայ լուսավորչական եկեղեցին մասնավորապես, իր գործունեության անբաժան մասն է համարել բարեգործությունը: Հայոց պատմության էջերում կարելի է հանդիպել բազմաթիվ հիշատակություններ այն մասին, թե պետական, թագավորական տիրույթներից տարբեր ժամանակներում որքա՜ն հատկացումներ են արվել ի նպաստ և օգնություն կարիքավորների՝ ծերերի, հիվանդների...

.. Հայոց Մեծ Եղեռնի օրերին՝ սանձազերծված բարբարոսական Թուրքիայի ձեռքով, որ մարդկության պատմության ամենաամոթալի էջերից մեկն է, փրկված հայ որբերին տիրություն արեցին՝ այն էլ իրենց կյանքը բոլորանվեր նրանց զոհաբերելով, դանիուհի Մարիա Յակոբսենը, էստոնուհի Հեդվիգ Բյուլը, ուրիշներ...

Կամ՝ մոռանալու՞ բան է մեծ Հայրենականում գթության քույրերի արածը. անձնուրաց նվիրու՛մ, խիզախու՛մ, սեփական կյանքը վտանգելով փրկել վիրավոր ռազմիկներին:

Եվ եթե ծանրագին ու դժվար հանգամանքներում են պարզվում, ավելի տեսանելի դառնում լավն ու վատը, ապա գթասրտության առավել տեսանելի դրսևորում, քան ցույց տվեց, առանց չափազանցության, ողջ աշխարհը երկրաշարժից հետո Հայաստանին, մինչ այդ չէինք տեսել: Մոլորակի բոլոր կողմերից փութացին օգնության ձեռք մեկնել հիմա էլ նոր աղետի մատնված Հայաստանին: Եկա՛ն, հասա՛ն, իրա՛ր անցան, որպեսզի օգտակար լինեն: Ուղարկեցի՛ն, առաքեցի՛ն, բերեցի՛ն ինչ կարող էին... Եվ որքան մեծ էր կորուստի ցավը, նույնքան և ավելի մեծ եղավ հայտնության զգացողությունը: Ես անձամբ, իբրև հայ մարդ, ապա և մարդ առհասարակ, մեծ, անփարատելի ցավի կողքին հանկարծ զգացի մարդու, մարդ էակի, հողագնդի տիրոջ, Իսահակյանի բառով ասած՝ տիեզերքի պերճ հյուսվածքի հոգու ողջ խորությունն ու հարստությունը, տեսա մեծատառով Բարին: Իսկ դա շատ կարևոր է, եթե այն պատկերացնենք մինչև իսկ չարի անմիջական հարևանությամբ: Չարի, որի ձեռագիրը այդ մեծ բարու վրա էլ կեղտոտ մատնահետքեր ուզեց թողնել... Այդքանը միայն, որովհետև բարին բարձր էր, անընդգրկելի ու նաև՝ իմ խորին համոզմամբ, ակնածելի, խնկելի: Թող չափազանցություն չդիտվի, եթե ասեմ, որ առաջին անգամ մարդկային ցեղին պատկանելու հպարտությունն զգացի հենց ա՛յդ օրերին, արհավիրքի պատճառած ցնցման մեջ, ճիշտ է, բայց հոգով վեհացած ու մաքրված...

***

Երբ սահմանային, ազգային, քաղաքական ու գաղափարական կաշկանդումները մի կողմ հրելով բոլո՜ր-բոլորը փութացին մեզ օգնության, ինքս ինձ ասացի, որ դեռ արժե՛ ապրել աշխարհում...

Տեր աստված, մտածելն իսկ սարսափելի

---

*ՊԱՐՍԱՄՅԱՆ ԱՆԱՀԻՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆԻ— ԽՍՀՄ գրողների միության անդամ։*

է, թե ինչ կլիներ կյանքը, ինչի կվերածվեր այն, եթե կյանքից հանվեր Բարին: Պատկերավոր ասած, եթե կյանքից, տիեզերքից, բնության գոյության համակարգից հանվեր... Արևը: Այո, հենց այդպես: Հոգևոր խավարը կկլաներ մեզ: Զուր չէ մեր Եղիշե պատմիչն ասել՝ «Լավ է կույր աչոք, քան կույր մտոք»: Որովհետև, եթե իմացությունը, գիտելիքը մտքի, բանականության աչքն են, ապա բարությունը՝ հոգու: Չար մեկի մասին ասում են՝ անհոգի, դաժան մարդ է: Մեծ հեքիաթագիր Անդերսենի «Ձյունե թագուհին» հեքիաթում մանուկ Կայը հանկարծ դառնում է անտարբեր ու կարծրասիրտ, ուրեմն և դաժան, որովհետև Ձյունե թագուհին սառեցնում է նրա սիրտը: Նրա կրծքի տակ սրտի փոխարեն մի կտոր սառույց էր, ասվում է հեքիաթում: Իսկ Ձյունե թագուհին այդպես էր արել, որպեսզի Կայը մնար իր մոտ, թե չէ հիշողությունն ու արյան կանչը նրան դեպի հետ՝ հարազատ հարկը կտանեին: Եվ հեքիաթի վերջում քրոջ՝ Հերդայի արցունքը հալեցնում է նրա սրտի սառույցը, նա նորից դառնում է բարի, նախկին Կայը, հասկանում է քրոջ ցավն ու գնում դեպի նա... Ուրեմն, խղճից, գթից զուրկ սիրտն իսկ սառցակտոր է... Գթասրտությունը բարության սրտացավ դուստրն է: Գթասրտությունը, որի պակասությունը մարդու մեջ մի՛ կամ մի՛ քանի՞ զգայարանների կորստի է հավասար...

Հիշենք, գրականությունից, պատմությունից այն դեմքերն ու կերպարները, որոնք զուրկ են եղել գթասրտությունից, հրեշներ են... Օրինակներ, ցավոք, շատ կան. բայց բավարարվենք քչով՝ Ռիչարդ Երրորդ, Մակբեթ, Յագո, Սուլթան Համիդ, երիտթուրքերի պարագլուխներ, Հիտլեր, Բերիա, Ստալին... Եվ երբ աչք ենք նետում վերոհիշյալ թե՛ գրական կերպարների և թե՛ պատմական դեմքերի գործունեությանը, տեսնում ենք, որ նրանց տխուր ճանապարհի առաջին քայլը եղել է... սեփական խիղճն սպանելը: Տխրահռչակ Հիտլերը նույնիսկ ասույթ ունի այդ առթիվ...

Երբ խորհում ես գթասրտության մասին՝ նորից ու նորից գնում ես դեպի ժողովուրդը, նրա սրբազան ավանդույթներն ու հավատամքը: Իսկ ժողովրդի ամենամեծ հավատամքը խիղճն է: «Անխիղճ-անաստված», «խիղճդ մեռնի»... և հարանման արտահայտությունները ցույց են տալիս, որ ժողովուրդը արգահատանքով է նայում խիղճ, գութ չունեցողին: Եվ հակառակը, բարին համարվում է բարիք, լավի մաղթանք: «Բարին ընդ ձեզ»,— ասում է ժողովուրդը: Իսկ խիղճ, գութ չունեցողը, իրոք որ, արգահատանքի է արժանի:

Հիմա, երբ վերակառուցման ու հրապարակայնության ալիքով մեր երկիրն ու պատմությունը մաքրագործվում են, շատ բան է քողազերծ լինում... Նայում ես չարագուշակ 37 թվականին նախորդող և հաջորդող տարիներին: Նայում ես ու սարսափով արձանագրում. ամեն բան սկսվեց նրանից, որ Խիղճը մեռա՛վ... Իսկ Խիղճը, գութը սոսկ մեկ գաղափար չէ, նա հավաքական հասկացողություն է. խիղճ ունենալ նշանակում է մտածել մերձավորի մասին, բարու և չարի, լավի ու վատի մասին, ձեռները ծալած չնստել, այլ պայքա՛րել արդարության հաղթանակի համար: Խիղճ ունենալ նշանակում է շա՜տ բան ունենալ...

Ահա, ուրեմն, դժնաշունչ 37-ին, երբ խիղճը մեռավ իշխանության գլուխ անցած որոշ անձանց կրծքի տակ, և դեռ արդեն այդ խղճազուրկների՝ իսկ մղումով համառորե՞ն շարունակում էին մեռցնել ու արմատախիլ անել այն, գթասրտությունը դադարեց առաքինություն լինելուց, ինչպես եղել է և կա, այլ համարվեց, ոչ ավելի, ոչ պակաս քաղքենիության մնացուկ... Ահա, տեսնու՞մ եք, թե մինչև ու՞ր, ի՛նչ փակուղու կարող է հասցնել մտքի քարացածությունը... Հիշենք, որ ներկայիս բուժքույրերն առա՛ջ կոչվում էին գթությա՞ն քույր...

... Եվ ի՛նչ. հրեշային, անխիղճ արարածները սանձազերծեցին իրենց ջա՛րդ նման ու մանավանդ իրենց սրտով՝ սպանդ...

Մի քանի տարի առաջ, երբ եղա մեր հանրապետության, այսպես կոչված, հատուկ դաստիարակության դպրոցում, սիրտս (ուրեմն և խիղճս...) ճմլվե՜ց: Մանկահասակ երեխաներ, նաև դեռահասներ, բայց արդեն մի տեսակ կանխորոշված ճակատագրերով: Ահա և «Новый мир» հանդեսի 1989 թվականի № 6, 7-ում տպագրված Լեոնիդ Գաբիշևի «Одлян, или воздух свободы» գործը:

Այս վավերագրությունը կարդալուց հետո ինքդ քեզ հարց ես տալիս. իրավունք ունի՞ մարդն ասել-խոսելու կամ լիաթոք ծիծաղելու, եթե մի այլ տեղ մարդ էակը, առավել ևս դեռահասն ու մանուկը, տանջվում են անմարդկային պայմաններում: Չէ, տանջվելն էլ այն բառը չէ, ստորացվու՞մ են բոլոր հնարավոր ու անհնարին ձևերով, կորցնում են մարդուն մարդ պահող մյու՛ս կարևոր կռվանը՝ արժանապատվությունը: Այո, մարդկային նկարագիրը, եթե բնորոշելու լինենք, հիմնվում է երեք սյուների վրա՝ Բանականություն, Խիղճ և Արժանապատվություն: Ընդ որում, այս երեքը միմյանց հետ օրգանական ու գիտակցական ոչ միայն կապ ունեն, այլև նույն բազմանիստի կողմերն են. առանց դրանցից ամեն մեկի, մյուսները թերի կլինեին: Մեծ ու փոքր շատ ճշմարտություններ կան աշխարհում, որոնք հատուկ են այս կամ այն ժամանակին, այս կամ այն ժողովրդին: Կան ճշմարտություններ, սակայն, որոնք ընդհանուր են բոլոր ժողովուրդների համար, որոնք թարգմանության կամ մեկնաբանության կարիք չունեն, ինչպես Լույսը, Անձրևը, Արեգակի ջերմությունը... Այդպիսիք են Ծպիտը, Արցունքը, Խանդաղատանքը, Կարեկցանքը, Սփոփանքը... միով բանիվ ա՜յն ամենը, ինչը կազմում է հենց Գթասրտություն հասկացության երանգապնակը:

* * *

Ծաղկուն տարիքում անբուժելի հիվանդությունից իր մահկանացուն կնքած մի կնոջ թաղումն էր: Ննջեցյալը որբ էր թողնում մի ընտանիք՝ հասարակության չարի ու արատավորի դեմ պայքարի բովում գտնվող ամուսնուն, երեք զավակներին: Մի տուն էր քանդվել, երեք երեխա մայրակորույս էին եղել... Ինքը՝ հանգուցյալն էլ, այդքան վաղաժամ կտրված կյանքի թելով, ճերմակահանդերձ ու բարետես, խորին վիշտ էր ներշնչում ներկաների՛ն, իսկ, ու՜ր մնաց թե հարազատներին... ծանր տեսարան էր, ծա՛նր...

Եվ մարդկային տարատեսակ այդ զանգվածի մեջ, ուր, ցավոք, չկային նրանցից շատերը, ովքեր հանգուցյալի բարի վերաբերմունքն ու հյուրասիրությունն էին վայելել, աչքիս զարնեց մեկը. տարիքով այդ մարդը լալիս էր երեխայի պես հոնգուր-հոնգուր, լալիս էր բացահայտ ու չէ՜ր ամաչում դրա համար: Եվ ես հասկացա, այնքա՛ն պարզ գիտակցեցի այդ պահին, որ հանգուցյալն, ահա, գնում է, բայց այդ արցունքները մե՛զ, ապրողներիս են պետք...

Մեզ՝ ապրողների՜ս են պետք, որովհետև ազդարարում ու խոսում են գթասրտության մասին: Իսկ առանց դրա, առանց գթասրտության, կյանքն իրավ սպանդանոցի է նման...

Այո, ասում ենք, Գթասրտություն: Վերջին շրջանում այդ մասին շատ է խոսվում ու գրվում, այդ թվում և կենտրոնական մամուլում: Փորձ է արվում շտկելու տարիների սխալը: Սխալ, որ միլիոնավոր կյանքեր է արժեցել: Հենց վերջերս միութենական «Литературная газета»-ն տպագրեց այդ մասին հիշարժան մի նյութ՝ «Մեծ իշխանուհին» խորագրով, շա՜տ բանի մասին խորհել տվող նյութ... Եվ դա միակը չէ: Գթասրտության մասին բազմաթիվ ու բազմաբնույթ նյութեր են տպագրվում «Здоровье», «Работница» ամսագրերում, տարբեր թերթերում: Գթասրտության գործնական դրսևորումներ են Միութենական մանկական ֆոնդի գործունեության կտրուկ ակտիվացումը, որբերի, ծերերի ու հաշմանդամների նկատմամբ սրացած ուշադրությունը, ներթափանցումը նույնիսկ այնպիսի՝ առ այսօր փա՛կ հաստատությունների պատերից ներս, ինչպիսիք են կալանատներն ու հոգեբուժարանները: Զարթնել է և դեռ շարունակում է զարթնել արդեն 72-ամյա խորհրդային երկրում լեթարգիական քուն մտած գթասրտությունը... Այո, լավ է, եթե բոլորը հասկանան Բարին, ու բոլորը լինեն Բարու բարձրության վրա: Բայց... ինչպե՞ս չհիշես, որ 1988 թվականի դեկտեմբերի 7-ի չարաղետ երկրաշարժի առիթով ողջ աշխարհից մեզ մեկնված օգնության ձեռքերի անտառի կողքին, ցավակցական հեռագրերի հեղեղի մեջ եղան և, որ աննկարագրելին է պարզապես, ... չարախնդացո՜ղ, մեր խորն ու անդարման վերքին ա՛ղ անող հեռագրեր, և ու՛մ կողմից՝ մեր հարևան ու դեռ եղբայր համարվող ադրբեջանցիների... Այո՜, երևի ո՛չ մի բան այնպես չի վկայում ու բացահայտում նրանց ով լինելը, որքան Սումգայիթի եղեռնագործությունն ու այս չարախնդացող, երկրաշարժը... շնորհավորո՜ղ հեռագրերը:

Ի՛նչ անարգանք ու հարված գթասրտությանն ու աշխարհի հասարակական մըտքին, բարու՛, ազնիվի՛, համամարդկային ավանդույթներին:

Կամ՝ Սումգայիթի ու չարախնդացող հեռագրերի շարունակությունը դառնալու չեկա՞վ նու՛յն «եղբայրական» Ադրբեջանի կողմից... հիմա էլ... շրջափակու՛մը՝ բլոկադան: Մտածել-պատկերացնե՞լն իսկ դժվար է, թե մինչև ո՞ր աստիճանի քարացած ու ամայի պիտի լինի մարդ հորջորջվող արարածի կարծեցյալ հոգին, որպեսզի վերջինս կարողանա՛ իր մեջ «ուժ» գտնել... խփելու՛ խփվածի՛ն, անչափելի դժբախտության տակ կքածի՛ն... վիրավորի՛ն...

Ի խայտառակություն իրենց, ադրբեջանցիք, ահա, կարողացան: Կարողացան այդքան դաժան ու սևահոգի լինել, գթասրտության գաղափարի՞ց անգամ աներևակայելիորեն հեռու լինել՝ բացարձակորեն սովի մատնելու համար առանց այն էլ երկրաշարժի աղետի շարունակվող ողբերգության մեջ գտնվող սգակիրներին ու տուժածներին, վիրավորներին ու մանուկներին, բոլորին... Ինչպե՛ս կարող էր

մարդկային ձեռք կոչվածը բարձրանալ այդ նույն վիրավորներին ու տուժածներին ուղարկվող դեղերի՛, ուտելիքի՛ ու պարենամթերքի՛ վրա, հագուստների ու հավաքովի տնակների՛ վրա, պղծե՛լ ու ջարդուփշու՜ր անել դրանք...

Եվ այդ աղաղակող անմարդկայնության ու չարագործության կողքին ավելի են թանկանում բարու, գթասրտության, մարդկայնության դրսևորումները: Անհնարին էր առանց հուզմունքի նայել ռուս տարեց կնոջ՝ Կալուգայի մարզի Մեշչովսկի շրջանի Ուրվան գյուղակի բնակչուհի, թոշակառու Թամարա Եֆիմովնա Սոլովյովայի լուսանկարին. նա Հայաստան՝ երկրաշարժից տուժածների ֆոնդին փոխանցեց տարիների՜ ընթացքում սև օրվա համար կոպե՛կ-կոպեկ հավաքած իր երկու հազար ռուբլին, ու դրանով չբավարարվելով, դեռ բրդյա գործվածքեղենի մի ծանրոց էլ... Ճիշտ էր ասում Սայաթ-Նովան, թե՝ «Սերն սեր կու բերե»: Հայաստանից ի նշան երախտագիտության բազմաթիվ նամակներ ուղղվեցին նրան, ծանրոցներ ուղարկեցին: Իսկ հենց վերջերս, երբ Հայաստանից դարձյալ նրան այցելության գնացին, պարզվեց, որ փորձանքը մուտք է գործել այդ առաքինի ու գթասիրտ կնոջ հարկի տակ էլ. այրվել էր նրա տունը: Հայ տղաները գործի անցան, քարն իսկ կանաչեցնող իրենց ձեռքերով մեկ-երկու օրում կանգնեցրին հարազատ Թամարա Եֆիմովնայի տունը, Հայաստանից տարած բարիքներով զարդարեցին նրա տունն ու սեղանը... Եվ սքանչելի՜ վարվեցին, կատարելով մեր բոլորի իղձը: Թամարա Եֆիմովնան ու նրա նման բարի հոգիները ավելիի՜ն են արժանի:

Ձեռքս առա մեր «Ծիծեռնակ» ամսագրի 1989 թվականի 6-րդ համարն ու... հոգիս (այս երկու՜ տարվա ընթացքում՝ Արցախյան շարժու՛մ, Սումգայի՛թ..., երկրաշա՛րժ..., ավելի՛ խոցված ու ցաված, քան ո՜ղջ կյանքիս ընթացքում...) միանգամից փափկեց, ջերմացավ, լցվեց խանդաղատանքով... Երեխանե՜րն են գրում, աշխարհի՜ երեխաները: Նրանք իրենց մաքուր, ուժեղ ու անաղարտ ձեռքերն են պարզում մեզ: «Թանկագին պարոն Գորբաչով, մենք դասարանում առևտուր կազմակերպեցինք և որոշ գումար ուղարկեցինք Հայաստան՝ տուժածներին օգնելու համար:

Լյուսի Թիմ, 8 տ.»:

«Թանկագին պարոն Գորբաչով.

Մենք որոշ գումար ենք հավաքել մեր խաղալիքները վաճառելով: Պատրաստվում ենք այդ դրամը ուղարկել երկրաշարժից տուժածներին:

Լավագույն ցանկություններով՝
Սայմեն Ֆիշեր»

Հայկական հանրապետության բնակիչներին.

«Մենք գիտենք, որ ձեզ մոտ տեղի է ունեցել երկրաշարժ: Մենք զարմացել ենք երկրաշարժի ուժից:

... Ամբողջ դասարանով հավաքել և ձեզ ենք ուղարկել որոշ գումար:

Խնդրում ենք՝ մի հուսալքվեք, դիմացեք:

Պրեֆեկտուրա Օսակա, ք. Իձումիոցու Սյոգակուկո, 4-րդ դասարանի 1-ին խմբի աշակերտներ»:

Հապա մեր սփյուռքահա՛յ կրտսեր քույրեղբայրները:

«Ծիծեռնակի» ընթերցողներին իրենց ցավն ու հուզմունքն են արտահայտել Նյու Յորքի «Սուրբ Լուսավորիչ», Բոստոնի հայ քույրերի «Ծիծեռնակաբույն», Բեյրութի Համազգայինի Սիլանքթոն և Հայկ Արսլանյան ճեմարանների ու վարժարանների երեխաները:

«Բարև: Իմ անունն է Արեմին Հակոբյան: Ես և իմ ընկերները շատ տխուր ենք երկրաշարժի համար: Դպրոցի մեջ փուչիկ ենք ծախում, որ ստացած փողը ուղարկենք Հայաստան: Հայերը նորեն պիտի բարձրանան, բայց ավելի ուժեղ այս անգամ:

Արեմին Հակոբյան, Բոստոն»:

«Ի՞նչ կրնայի ընել. հայրենիքս ինծմե շատ հեռու է: Բացի գանձանակս և ունեցածս տվի աղետյալներուն: Հայ ժողովուրդը բնավ չէ հուսահատած, ան պայքարած է բնության և մարդկային բոլոր քանդիչ ուժերուն դեմ և իր ապրելու, գոյատևելու կամքը և տենչը հասցուցած է զինք մինչև այս օրը: Վստահ եմ, որքան աշխարհը գոյություն ունի, Հայաստան կա:

Սարին Հացագործյան, Բեյրութ»:

«Ծիծեռնակ» ամսագրին ուղղված իրենց նամակներում երկրաշարժի մեզ բերած մեծ վիշտն են կիսում սփյուռքահայ մանուկներ Լարա Բադալյանը (Բոստոն), Թալին Թըլյանը, Ալիս Դիլեյանը (Նյու Յորք), Հրաչ Փեհլիվանյանը, Անի Չեքիջյանը, Լինա Պալյանը, Հովսեփ Լոշխանյանը, Խաժակ Գուլաջյանը (Բեյրութ): Էլի շա՜տ-շատերը:

Չէ, ինչ-ինչ, բայց մեր ժողովուրդը՝ հա՛յ ժողովուրդը գթասրտության պակաս չունի: Աստված մի արասցե, եթե մի փորձանքի պատահես և օգնության կարիք ունենաս, հայկական միջավայրում անօգնական չես մնա: Այդպիսին ենք, անշուշտ, թերություններից էլ զերծ չլինելով, ինչպես ամեն մարդ, ամեն ժողովուրդ: Եվ դա, թերևս, մեր առաքինություններից ամենաթանկն է:

Կնեղենք մեզ, բայց կօգնենք նեղն ընկածին: Մենք չենք ուտի, կհյուրասիրենք (այստեղ արդեն գթասրտությունը միանում է արժանապատվությանը): Մենք մի՛ շապիկով էլ լինենք, կտանք այդ շապիկը ավելի՛ կարոտյալին:

Հա, տաքարյուն ու սրտացավ լինելու հետ մեկտեղ տաքգլուխ էլ ենք: Մեկ էլ տեսար բնակելի այսինչ շենքը թնդում է աղմուկ-աղաղակից, եղածն էլ ի՛նչ լինի, որ լավ լինի. աջ կողմի հարևանը սխալ է մեկնաբանել ձախ կողմի հարևանի երկիմաստ ռեպլիկը, և հիմա, պատկերավոր ասած, «զարկում-զարկվում» են...

Բայց ի՞նչն է, որ ներողամտությամբ է նայել տալիս քեզ այդ ամենին. մեծ, տաք, ամենուր և բոլորին հասնող այն բարությունը, որի անունն է սրտացավություն և որն ուղղակիորեն գթասրտության դրսևորում է: Սրտացավություն, որ կարող է կայարանի հրապարակից կամ օդանավակայանից վերցնել ու ոչ այս, ոչ այն, ուղղակի տուն բերել անծանոթ, այլազգի և Երևան քաղաքում հասցե չունեցող մեկին: Մի լավ չիմացած էլ՝ ո՞վ է, ի՞նչ է...

Գթասրտությունը իրեն հարգող, բարոյական մարդու համար հոգևոր պահանջ է նաև, իր մարդկային ու քաղաքացիական կշռի, լիարժեքության ապացույցը:

Եվ ինչու՞ միայն մարդու... Հիշենք, որ Ամենաբարձրյալին՝ Աստծուն լավագույնս բնորոշող էպիտետների շարքն սկսվում է գթած, ողորմած, գթասիրտ, բարի բառերով:

Պարզ է, որ գթասրտությունը և բարին ուժեղ են իրենց գոյությամբ: Չարը երբեք գթասիրտ չի կարող լինել:

... Կյանքի աննախադեպ ու խճողված իրադարձությունների քաոսում հանդիպող Գթասրտությունը մեկենիմեկ ի՜նչ խանդաղատանքով ու հույսով է լցնում, առանց չափազանցության՝ լուսավորու՜մ է մթագնած տրամադրությունդ էլ, օ՛րն էլ, հու՛յսն էլ, հավա՛տն էլ...

Որովհետև գթասրտությունը Սեր է, իսկ սերը կյանքն է հաստատում:

# ԻՆՔՆՈՐՈՇՄԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԸ՝ ԺԱՄԱՆԱԿԻ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ

Հեղափոխական վերակառուցման ժամանակաշրջանը, երկրում ծավալված հրապարակայնությունը աննախադեպ հնարավորություններ են ընձեռել ԽՍՀՄ բոլոր ժողովուրդների ազգային ինքնագիտակցության զարթոնքի, ինչպես նաև անցած տասնամյակներին հասարակական կյանքում կատարված բազում անարդարությունների դատապարտման ու վերացման համար։ Այսօր մերկացվում են ազգամիջյան հարաբերություններում թույլ տրված աղաղակող ձևախեղումները, հրատապ է դարձել մեր ժամանակի ոգուն համապատասխան ազգային նոր քաղաքականության մշակման պահանջը։

Այդ նոր ֆոնի վրա առանձնակի նշանակություն է ձեռք բերում Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը, որի դեմոկրատական, սահմանադրական լուծման հիմքերի օբյեկտիվ վերլուծությանն է նվիրված իրավագետ-միջազգայնագետ, ՄԱԿ-ի միջազգային իրավունքի հանձնաժողովի անդամ, պրոֆեսոր Յու. Բարսեղովի նոր աշխատությունը*։ Հեղինակն իր հետազոտությունն անվանել է «Ինքնորոշման իրավունքը ազգամիջյան հարաբերությունների դեմոկրատական լուծման հիմքն է (Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի շուրջը)»։

Այստեղ խորագիտակությամբ, ազգամիջյան պրոբլեմների լուծման լենինյան ժառանգության և ժամանակակից միջազգային պրակտիկայի զուգակցման, սահմանադրական ու միջազգային իրավունքի նորմերի մանրակրկիտ վերլուծության հիման վրա բացահայտված է ԼՂԻՄ-ի պրոբլեմի էությունը։ Ցույց է տրված, որ խոսքը մարզի բնակչության ինքնորոշման, այլ ոչ թե տարածքային վեճի մասին է, ինչպես ջանում են այն ներկայացնել դրա դեմոկրատական լուծման հակառակորդները։

Ազգերի ինքնորոշման իրավունքը, որպես տարածքային սահմանազատման իրավահիմք, սերտորեն առնչվում է պետական տարածքի անձեռնմխելիության սկզբունքի հետ։ Միջազգային հարաբերություններում լայն տարածում ստացած այդ սկզբունքը չի բացառում խաղաղ ճանապարհով տարածքային փոփոխությունները։ Ավելին, ժամանակակից միջազգային իրավունքը հնարավոր, իսկ առանձին դեպքերում անհրաժեշտ է համարում տարածքային փոփոխությունները, պայմանով, որ չխախտվի ինքնորոշման սկզբունքը։

Պետությունների տարածքային անձեռնմխելիության սկզբունքը, չբացառելով ինքնորոշման իրավունքի հիման վրա կատարվող տարածքային փոփոխությունների օրինականությունը, բացառում է ինչպես ուրիշների հողերի բռնի գրավումը, այնպես էլ օտար պետության սահմաններում այս կամ այն ազգին բռնությամբ պահելը։

Ազգերի ինքնորոշման իրավունքի իրականացման հիման վրա տարածքային փոփոխությունների օրինաչափությունն այժմ լիովին ճանաչված է գործող միջազգային իրավունքում և անհրաժեշտ նախադրյալ է ժողովուրդների ազգային-պետական և տարածքային ամբողջականության համար։

Ազգերի ինքնորոշման իրավունքի միջոցով բացահայտվում է տվյալ երկրի ժողովրդի, տարածքի բնակչության կամքը՝ տարածքային սահմանազատման պետական-իրավական ստատուսի վերաբերյալ։ Հետևաբար, իրավացի է Յու. Բարսեղովը, որի համոզմամբ, չի կարելի վկայակոչել միութենական հանրապետության սուվերենությունը, տարածքային ամբողջականությունը և գործն այնպես ներկայացնել, թե իբր նրանք ազատ են իրենց սահմաններում ժողովուրդների ինքնորոշումը ճանաչելու անհրաժեշտությունից։ Այս առումով ԼՂԻՄ-ի ինքնորոշման իրավունքի ժխտումը Ադրբեջանական ԽՍՀ-ի կողմից նշանակում է Խորհրդային Միության կողմից իր միջազգային պարտականությունների չկատարում։ Բայց չէ որ պետությունը պարտավոր է կատարել իր ստանձնած միջազգային պարտավորությունները, եթե անգամ առկա է ներպետական իրավական նորմի

* БАРСЕГОВ Ю. Г. Право на самоопределение — основа демократического решения межнациональных проблем: К проблеме Нагорного Карабаха.— Ереван, «Айастан», 1989, 104 с.



և միջազգային իրավական նորմի կոլիզիա։ Ավելին, պետությունն իրավունք չունի, հենվելով միջազգային իրավունքի նորմի և իր օրենքի անհամապատասխանության փաստի վրա, չկատարել միջազգային իրավունքի պահանջները։ Այդ սկզբունքն իր ամրապնդումն է ստացել միջազգային պայմանագրերի իրավունքի մասին Վիեննայի 1969 թ. կոնվենցիայի 27-րդ հոդվածում, որտեղ ասված է, որ կոնվենցիայի «մասնակիցը չի կարող վկայակոչել իր ներքին իրավունքի դրույթը՝ որպես արդարացում իր կողմից պայմանագիրը չկատարելու համար»։ Միաժամանակ պետությունը միջազգային-իրավական պատասխանատվություն է կրում միջազգային իրավունքին հակասող օրենք կամ վարչական ակտ ընդունելու համար։ Այսպիսով, Ադրբեջանական ԽՍՀ պետք է անմիջական պատասխանատվություն կրի Արցախի ժողովրդի հալածանքների, նրա շրջափակման համար։

Յու. Բարսեղովի աշխատության մեջ հիմնավորվում է այն գաղափարը, որ միջազգային իրավունքը ոչ միայն միանշանակ արգելում է պետության կողմից ցանկացած ձևով ուժի կամ դրա կիրառման սպառնալիքի իրականացումն ընդդեմ ինքնորոշման ձգտող ժողովուրդների, այլև նախատեսում է վերջիններիս կողմից անհրաժեշտ միջոցների դիմելու իրավունքը, ընդհուպ մինչև ինքնապաշտպանության կարգով ուժի դիմելը ինքնորոշման իրավունքի իրացման համար՝ ներառյալ ազգային ու տարածքային միասնության հասնելը։

Միջազգային-իրավական տեսանկյունից լիակատար օրինակն է ԱՄՆ-ի Սենատի Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ որոշումը, որում արտահայտվում է ռեգիոնում ձգձգվող քաղաքական ճգնաժամի առթիվ ամերիկյան ժողովրդի մտահոգությունը, ինքնավար մարզի բնակչության ինքնորոշման արդարացի պահանջի պաշտպանությունը և ըմբռնումը։

Անեքսիայի հետևանքով տարածքային ոչ մի ձեռքբերում օրինական ճանաչվել չի կարող։ Յուրաքանչյուր տարածքի պետական պատկանելության ամեն մի փոփոխություն պետք է խարսխվի այնտեղ բնակվող ժողովրդի ինքնորոշման իրավունքի վրա։ Անեքսիան միջազգային հանցագործություն է։ Նման վարքագիծ դրսևորած պետությունը պետք է միջազգային պատասխանատվություն կրի։ Իսկ միջազգային ընկերակցությունը ամբողջությամբ և նրա մեջ մտնող յուրաքանչյուր պետություն առանձին վերցրած պարտավոր են համապատասխան վերաբերմունք ցույց տալ։ Այսինքն, հնարավոր ամեն ինչ անել, որպեսզի այդպիսի իրավախախտում թույլ չտրվի կամ խափանվի։ Հենց այս դիտակետից էլ մեկնաբանվում են 1921 թ. մարտի 16-ին ՌԽՖՍՀ-ի և Թուրքիայի միջև կնքված Մոսկվայի պայմանագրի հիմնական դրույթները։ Ըստ էության, հակաիրավական այդ պայմանագրի օրինակով հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես են խախտվել միջազգային իրավունքի՝ «ոչ ոք չի կարող հանձնել այն, ինչ չունի» և «ոչ ոք չի կարող ավելի շատ իրավունքներ հանձնել, քան ինքն ունի» հիմնարար սկզբունքները։ Ստալինի նախաձեռնությամբ կնքված այդ պայմանագիրը որոշեց հայկական Նախիջևանի մարզից «ինքնավար տարածք կազմավորել Ադրբեջանի պրոտեկտորատի ներքո», և այն պայմանով, որ Ադրբեջանը այդ պրոտեկտորատը չի զիջի երրորդ պետության, այսինքն, դրա օրինական տիրոջը՝ Խորհրդային Հայաստանին։ Այդ ցինիկ գործարքով չբավարարվելով, Ստալինը շարունակեց անպաշտպան, արնաքամ, տասնհինգ-քսան թվականների եղեռն ապրած Հայաստանի սահմանների վերաձևելու քաղաքականությունը, հասավ Ադրբեջանական ԽՍՀ-ին հայկական ևս մեկ մարզի՝ Լեռնային Ղարաբաղը հանձնելուն, որի բնիկ հայությունն այն ժամանակ կազմում էր 95 տոկոս։ Մնացածի երկու տոկոսը կազմում էին ադրբեջանցիները, երեք տոկոսը՝ քրդերը, հույները, թաթարները, ռուսները, թալիշները։ Մոսկովյան պայմանագրից այնուհետև ծնունդ առավ նաև Ղարսի պայմանագիրը, որի հետևանքով Հայաստանը զրկվեց Ղարսի, Արդահանի, Սուրմալուի շրջաններից՝ մոտավորապես 20700 քառ. կիլոմետր տարածությունից, այսինքն նախկին ռուսական Հայաստանի տարածքի գրեթե կեսից։

Ժամանակակից միջազգային իրավունքի կարևորագույն սկզբունքներից մեկը՝ տարածքային սահմանազատման գերագույն սկզբունքը՝ հայ ժողովրդի ինքնորոշման իրավունքը, գռեհկաբար խախտվեց։ Հայ ժողովրդի տարածքները, առանց նրա հետ հաշվի նստելու և հակառակ նրա կամքի, մնացին օտար պետության կազմում։ Այլ կերպ չի կարելի գնահատել փաստերը, քանի որ միայն ազգը իրավունք ունի որոշելու իր ճակատագիրը, տնօրինելու իր տարածքը, որոշելու պետական սահմանները։ Միջազգային իրավունքի հայեցակետից ելնելով, հիշատակված երկու պայմանագրերը պետք է չեղյալ հայտարարվեն՝ դրանից բխող բոլոր հետևանքներով։

Այնուհետև հեղինակը բացահայտում է Ադրբեջանական ԽՍՀ-ից ԼՂԻՄ-ի անջատման տնտեսական անհնարինության սկզբունքի կեղծությունը։ Ադրբեջանի նախկին և այսօրվա ղեկավարները հակալենինյան այն գաղափարն են զարգացնում, թե Ղարաբաղը Ադրբեջանական ԽՍՀ-ի կազմի մեջ է գտնվում, որովհետև նրա հետ կապված է տնտեսական սերտ կապերով, որ նրա տնտեսական ծաղկումը հնարավոր է հանրապետության շրջանակներում։ Վ. Ի. Լենինը կարծես կանխատեսել է նման իրավիճակը, երբ նախազգուշացրել է այն մարդկանց խարդավանքից, ովքեր ձգտում են անեքսիոնիստական նպատակներին հասնել իրենց զոհի բարօրության նկատմամբ կեղծ հոգատարու-

թյամբ, չխնդրած «երջանկացում» պարտադրելով ուրիշ ժողովուրդներին։ Ըստ Լենինի, հարցը այլ կերպ է դրվել։ Եթե ազգային մարզերն իրենց հովանու տակ բռնի կերպով պահողները իսկապես՞ անհանգստացած են դրանց բնակչության բարօրությամբ, ապա նրանք պետք է այդ մարզերին ընտրության ազատություն տան։ Չի կարելի դեմոկրատիայի և ընտրության իրավունքի մասին խոսել, միաժամանակ ժողովրդին թույլ չտալով, որ իր ընտրությունը կատարի։ Հետևաբար, չի կարելի նաև ձգտել «հավերժացնելու ԽՍՀՄ-ի ներսում գոյություն ունեցող տարածքային ստատուս-քվոն»՝ անուղղելի վնաս հասցնելով քաղաքականության նկատմամբ իրավունքի առաջնության ԽՄԿԿ-ի հռչակած դեմոկրատական սկզբունքին, քողարկվելով փարիսեցիական այն «փաստարկումով», որ ինքնորոշման իրավունքի իրականացումը բախումների և ընդհարումների տանող ուղի է։ Սակայն նման նեգատիվ հետևանքներ է ծնում ոչ թե այդ իրավունքի իրականացումը, այլ նրա ոտնահարումը։

Անվիճելի է լենինյան այն ձևակերպումը, որ «ուրիշի մարզի» բռնի միավորումը և պահումը անդունդ է ստեղծում ժողովուրդների միջև, նրանց տանում է դեպի կոնֆլիկտներ ու պատերազմներ։ Դժբախտաբար, փաստորեն հենց նման նպատակ է հետապնդում ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1989 թ. նոյեմբերի 28-ի «Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում իրադրությունը նորմալացնելու միջոցառումների մասին» որոշումը։ Իրավական պետության ուղին բռնած երկրի բարձրագույն մարմինը փակ դռների հետևում, անտեսելով հրապարակայնությունը, ընդունեց մի որոշում՝ առանց այն ժողովրդի ներկայացուցիչների մասնակցության, որի անմիջական ճակատագրին է վերաբերում։

Դեմոկրատական պառլամենտական ընթացակարգը շրջանցելով ընդունված որոշումը արցախահայության արդարացի պահանջը անտեսելու, դրա քաղաքական լուծումից խորշելու տխուր փաստ է, որն ըստ էության ոչ թե նպաստում է ռեգիոնում լարվածության թուլացմանը, այլ ավելի է բորբոքում երկու հարևան ժողովուրդների միջև ազգամիջյան թշնամանքը, վերացնում բարեկամության հաստատման հնարավորությունները։

Այն նահանջ է առանց այն էլ սահմանափակ այն միջոցառումներից, որոնց կատարումը ներկայացվում էր քաղաքական լուծման անհրաժեշտ պայման։ Հատուկ կառավարման կոմիտեի գործունեությունը, որպես ազգի ինքնորոշման իրավունքի հիման վրա հարցի լուծման փուլ, ամրապնդելու փոխարեն, այն փոխարինվում է մի մարմնով, որը կարող է լոկ ժամանակավորապես իրականացնել վերահսկիչ-վերադիտող ֆունկցիաներ այն պայմաններում, երբ նախատեսվում է իրական իշխանությունը նորից հանձնել Ադրբեջանական ԽՍՀ-ին՝ կոնֆլիկտի կողմերից մեկին։ Կարելի՞ է մարզի հետագա ճակատագրի տնօրինումը հանձնել նրան, ումից բողոքում են և ումից անջատվել են ուզում։ Կարելի՞ է ԼՂԻՄ-ի իրավական ստատուսի վերաբերյալ համապատասխան օրենսդրական ակտերի ընդունումը հանձնարարել մարզը բռնությամբ պահող կողմին։

Մի խոսքով, որոշումը կենսունակ չէ, գործնականում անիրագործելի է, որովհետև հակասում է ինքնորոշման իրավունքի սուբյեկտի՝ արցախահայության արդար պահանջին։

Գրքի եզրափակիչ մասում Յու. Բարսեղովն առաջարկում է ղարաբաղյան պրոբլեմի լուծման փոխզիջումային ուղիներ։ Դրանցից մեկը խորհրդային ինքնավար միավորումների դերի բարձրացումն է, որը ներկայացվում է իբրև ֆեդերացիայի վերակառուցման անցողիկ միջոց։ Այդ կապակցությամբ հեղինակը քննադատական վերաբերմունք է ցուցաբերում ԽՄԿԿ Կենտկոմի կուսակցության ազգային քաղաքականության պլատֆորմում ձևակերպված «ուժեղ կենտրոն՝ ուժեղ հանրապետություն» նոր սկզբունքի նկատմամբ։ Վերջինս չհամարելով ազգային հարցի լուծման բանալի, հեղինակը գրում է. «Կողմնորոշվելով դեպի ազգային և ազգամիջյան պրոբլեմների, թվում է, «ուժեղ կենտրոն՝ ուժեղ հանրապետություն» հասարակ ու պարզ բանաձևով լուծումը, մենք անխուսափելիորեն կանգնում ենք հետևյալ հարցի առաջ. իսկ ինչպե՞ս վարվել քսան ինքնավար հանրապետությունների, ութ ինքնավար մարզերի, տասը ինքնավար օկրուգների հետ։ Եթե շղթան կտրենք և սահմանափակվենք միութենական հանրապետությունների ամրապնդմամբ, նախկին վիճակում թողնելով նրանց ենթակա երեսունութ ինքնավարությունները, ապա դա ավելի կխորացնի գոյություն ունեցող ազգային պրոբլեմները։ Ակներև է, որ մինչ որպես իրավահավասար սուբյեկտ բոլոր ինքնավար կազմավորումների միասնական խորհրդային ֆեդերացիայի կազմի մեջ ուղղակի մտնելու հարցի լուծումը, շղթան պետք է շարունակվի և առաջարկված բանաձևի մեջ պետք է մտցվի պակասող երրորդ տարրը՝ «ուժեղ կենտրոն՝ ուժեղ հանրապետություն՝ ուժեղ ինքնավարություններ»։

ԼՂԻՄ-ի պրոբլեմի լուծման մյուս հնարավոր տարբերակը, Յու. Բարսեղովի կարծիքով, նրան միութենական (ֆեդերալ) ենթակայության տարածքի ստատուս տալն է և այն ԽՍՀՄ Գերագույն խորհրդին՝ ի դեմս նրա նախագահության կամ նախագահին ենթարկելը։ Այդ դեպքում մարզի կառավարումը պետք է իրականացվի դեմոկրատական ընտրությունների միջոցով կազմավորվող ժողովրդական դեպուտատների խորհրդի կողմից։ Ինչ վերաբերում է մարզի կուսակցական մարմինների ստատուսին, ապա առաջարկվում է նրանց ուղղակի ենթակայություն ԽՄԿԿ Կենտկոմին՝ կուսակցական դեմոկրատիայի բոլոր ձևերի պահպանումով։ Ֆեդերալ մարզը կառավարման բոլոր գծերով (ֆինանսավորում, նյութատեխնիկական մատակարարում, դատարան, դատախազություն և այլն) պետք է անմիջականորեն ենթարկվի իշխանության բարձրագույն մարմիններին։

Մարզը իրենից պետք է ներկայացնի առանձին ֆեդերալ միավորում, օժտված այնպիսի իրավական ստատուսով, որը հնարավորություն է ընձեռում կանխելու ի վնաս տեղի հիմնական ազգաբնակչության իրականացվող բոլոր ձեռնարկումները։

Հեղինակը իրավացիորեն գտնում է, որ միութենական տարածքի ստատուսը պետք է նախատեսի այնպիսի միջոցներ, որոնք կկանխեն տարածքի էթնիկական կազմի փոփոխությունը՝ ի վնաս արմատական հայ ազգաբնակչության։ Դրա համար էլ մարզի քաղաքացիները կարող են լինել միայն այն անձինք, որոնք ներկայումս բնակվում են այդ տարածքում և անկախ ազգությունից այդ մարզի ծնունդ հանդիսացող վտարանդիներն ու փախստականները։

Միութենական տարածքի ստատուսը համարելով անցողիկ երևույթ, Յու. Բարսեղովը գտնում է, որ միութենական մարմինների կողմից ֆեդերալ մարզի ստատուսի դադարեցման դեպքում տեղի արմատական ազգաբնակչությունը պետք է իրավունք վերապահվի որոշելու, թե երկրի որ հանրապետության կազմում է ինքը ցանկանում լինել։

Վերջնական եզրակացությունը հետևյալն է. ինքնորոշումը ժողովուրդների և պետությունների միջև խաղաղության ու բարեկամական հարաբերությունների հաստատման կարևորագույն գործոն է։ Արցախի ժողովրդի ինքնորոշման իրավունքի իրականացումը Անդրկովկասում խաղաղ գոյակցության անհրաժեշտ պայման է։ ԼՂԻՄ-ի անջատումը Ադրբեջանի տարածքային ամբողջականության խախտում չէ, բայց դրանից հրաժարումը հայ ժողովրդի տարածքային ամբողջականության կոպիտ ոտնահարում է։

Յու. Բարսեղովի՝ հայ ժողովրդի պատմության բարդ և կարևորագույն հարցերից մեկին նվիրված աշխատությունն իր հարցադրումների թարմությամբ, եզրահանգումների այժմեականությամբ ուշագրավ ուսումնասիրություն է։

Վ. ՄԱՐՈՒԽՅԱՆ
Երևանի պետական համալսարանի իրավաբանական ֆակուլտետի պետության և իրավունքի տեսության ու պատմության ամբիոնի վարիչ, իրավաբանական գիտությունների թեկնածու, դոցենտ

# ԱՐՑԱԽԻ ՄԱՄՈՒԼԸ

ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ տասնհինգ մեծ նահանգներից մեկի՝ Արցախ աշխարհի նախախորհրդային շրջանի առաջադիմական մամուլի գրեթե մի ամբողջ հարյուրամյակի պատմությունը վկայում է, որ տպագիր խոսքը, թերթերն ու հանդեսները այստեղ ծնունդ են առել տեղական անհրաժեշտության բերումով, ապրել հասարակական-քաղաքական կյանքով՝ դառնալով գավառի յուրատեսակ հայելին, պայծառ ու ստվերոտ կողմերի արտահայտիչը։

Այս բնագավառում արժեքավոր հետազոտություն է բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Սմբատ Ավագյանի մենագրությունը*, որը լույս է ընծայել համալսարանի հրատարակչությունը։ Հարուստ փաստերով այս մենագրությունը գրվել է հեղինակի տքնաջան աշխատանքի՝ արխիվներում ու գրադարաններում, գիտական հիմնարկների ֆոնդերում, թանգարաններում, Երևանի Մ. Մաշտոցի անվան գիտահետազոտական ինստիտուտում կատարած համառ որոնումների հիման վրա։ Նա զրուցել է Շուշիում նախախորհրդային շրջանում հրատարակված պարբերականների, գրականագիտական ժողովածուների լույսընծայմանն ակտիվորեն մասնակցած մարդկանց հետ, ծանոթացել բոլշևիկյան կազմակերպությունների և առանձին հայրենօգուտ ընկերությունների աշխատանքին, որոնք Ղարաբաղում պայքարել են խորհրդային իշխանության հաղթանակի համար։

Գիրքը նվիրված է 1828—1920 թվականների Ղարաբաղի մամուլի պատմությանը։ Հայտնի է, որ այդ ժամանակաշրջանը հայ ժողովրդի առավել բարդ ու ճակատագրական տարիներից է։

Աշխատության առաջին գլխում հեղինակը ներկայացնում է XVIII դարի վերջերին Ղարաբաղում հրատարակչական գործի և տպագիր խոսքի սահմանափակ հնարավորությունները, երբ ոչ միայն կրճատվում էր տպագրվող գրքերի, թերթերի, ամսագրերի քանակը, այլև խավարամոլներն այրում էին այն գրքերը, որոնցում ցոլանում էր պայծառ, լուսավոր միտքը, ազատության տենչը։ Միայն XIX դարի առաջին քառորդում որոշ տեղաշարժեր են նկատվում մամուլի, գրականության զարգացման գործում։ Ս. Ավագյանը նշում է, որ ինչպես Ռուսաստանի շատ քաղաքներում, տպարանական գործը ծնունդ է առնում նաև ռուսական կայսրության ծայրամասային գավառում՝ Ղարաբաղում, ուր առաջին հրատարակիչները օտարերկրացիներ էին։ Հիմք է դրվում առանձին թերթերի, ամսագրերի ու գրքերի տպագրության։ Այդ շրջանում, ինչպես վկայում է հեղինակը, Շուշիում Շվեյցարիայի Բազել քաղաքից եկած միսիոներներ Ավգուստ Դիտրիխը և Ֆելիցա Զարեմբան հիմնեցին հայկական տպարան, որտեղ մաքուր աշխարհաբարով տպագրվեց ավետարանը և շատ այլ գրքեր։ Անուրանալի են Հասան Ջալալյանի ջանքերը դպրոցաշինության և գրատպության ասպարեզներում, Նա բացում է եռալեզվյան (հայերեն, ռուսերեն և թաթարերեն) ուսումնարան։ Նրա 1839 թ. գրած «Պատմություն կամ հիշատակ...» աշխատությունում ներկայացված են XVII—XVIII դարերի իրադարձությունները, առանձին նշանավոր մարդկանց գործունեությունը, ժողովուրդների, մասնավորապես հայերի ու վրացիների բարեկամությունը և այլն։

Հեղինակը նշում է, որ անցյալ դարի 20—30-ական թվականներին Ղարաբաղում գոյություն ունեցող դպրոցները սահմանափակ գիտելիքներ էին հաղորդում աշակերտներին։ Ղարաբաղի թեմական դպրոցը լուսավորության հիմնական օջախն էր, որտեղ տարբեր ժամանակներում դասավանդել են մեր գրողներից և ականավոր մանկավարժներից շատերը՝ Պ. Պռոշյանը, Ղ. Աղայանը, Վ. Փափազյանը, Լեոն, Ս. Մանդինյանը և ուրիշներ։

Արևելահայաստանի միացումը Ռուսաստանին բարերար ազդեցություն է ունենում հայ ժողովրդի տնտեսական ու մշակութային կյանքի զարգացման վրա։ Ակնհայտ էր հատկապես կրթության և հրատարակչական գործի որոշ աշխուժացումը։ XIX դարի սկզբին լույս աշխարհ էին գալիս տարբեր բնույթի և ուղղության պատկանող գրքեր, թերթեր, հանդեսներ, որոնցում արծարծվում էին հայրենասիրական ու մարդասիրական գաղափարներ։ Սակայն, ինչպես նշում է հեղինակը, ցարական գրաքննությունը դաժանորեն ճնշում էր ամեն մի լուսավոր միտք։ Նրա աչքից չէր վրիպում ոչ միայն աշխարհիկ, այլև հոգևոր, եկեղեցական գրականության լույսընծայումը։

Մենագրության երկրորդ գլուխը նվիրված է հասարակական-քաղաքական մտքի որոշակի աշխուժացմանը։ Ռուսական հեղափոխական-դեմոկրատները «Սովրեմեննիկում» հանդես էին գալիս գյուղացիների շահերի օգտին, դնում նրանց ազատագրության հարցը։ Այս շարժումը իր բարերար ազդեցությունն է ունենում ողջ երկրի վրա։ Հայ իրականության մեջ «Հյուսիսափայլը», Միքայել Նալբանդյանի ակտիվ աշխատակցությամբ, նույնպես տարածում էր ազատաբաղձ մտքեր։

Խոսելով անցյալ դարի 60-ական թվականներին գրականության, արվեստի, դպրոցական, հրապարակախոսության և հրատարակչական գործի որոշակի աշխուժացման մասին, հեղինակը նկատում է, որ այդ շրջանում Մ. Նալբանդյանից բացի հրապարակ են գալիս Սմբատ Շահազիզը, Մկրտիչ Պեշիկթաշլյանը, Պետրոս Դուրյանը, Ռաֆայել Պատկանյանը և ուրիշներ, որոնց հայրենաշունչ խոսքը, սրտաբուխ ստեղծագործությունները ընթերցողին համակում էին ազատատենչ մտքերով։ Այդ թվականներին որոշակի քայլեր են նկատվում հայ թատրոնի զարգացման մեջ։ Նրանց խաղացանկում մեծ տեղ են գրավում հայրենասիրական պիեսները։

XIX դարի 60-ական թվականները հասարակական կյանքի պատմության մեջ հայտնի են որպես գաղափարների որոշակի զարթոնքի ժամանակաշրջան։ Հմտորեն օգտագործելով այդ շրջանում տպագիր օրգանների, մամուլի նյութերը, հեղինակը ներկայացնում է Շուշիի հոգևոր հայերի տպարանի գործունեությունը, որտեղ հրատարակված «Հայկական աշխարհ» գրական, մանկավարժական և կրոնական ամսագիրը հետապնդում էր լուսավորական, դաստիարակչական նպատակ։ Այնտեղ հատվածներ են տպագրվել Մ. Խորենացու «Հայոց պատմությունից» և մեր նախնիների հերոսական գործերից։ 1881 թ. Շուշիում բացված Միրզաջան Մահտեսի Հակոբյանի տպարանը քսան տարուց ավելի Արցախի միակ տպագրական օջախն էր։

Գրքում հանգամանորեն վերլուծված է XIX դարի 80—90-ական թվականներին Արցախի գրական մտքի առաջընթացի գործում որոշակի դեր կատարած հրատարակությունները, ինչպես օրինակ, Ն. Տեր-Ավետիքյանի «Քնար խոսնակը» ժողովածուն, Ս. Հախումյանի «Գործ» գրական, քաղաքական ու ազգային հանդեսը, Տ. Նազարյանի «Աղբյուր» մանկապատանեկան ամսագիրը և նույնի «Տարազ» գրական, երգիծական շաբաթաթերթը։ Այդ հրապարակումները տոգորված են ժողովրդասիրության, հայրենիքի պատմության ուսումնասիրության գաղափարով։

Մենագրության հաջորդ գլուխը նվիրված է ժողովրդական զանգվածների լուսավորությանն ու հոգևոր զարգացմանը։ XIX դարի վերջերին ռուսական հեղափոխական և հասարակական մտքի զարգացումն իր ազդեցությունը թողեց նաև մյուս ժողովուրդների վրա։ Առաջընթացը նկատվում էր մասնավորապես դպրոցական ասպարեզում։ Նոր դպրոցներ են բացվում Հայաստանում և Անդրկովկասի հայաբնակ մի շարք վայրերում։ Սակայն, ինչպես նշում է հեղինակը, ցարական կառավարության հրամանով փակվում են մի շարք հայկական դպրոցներ, արգելվում է հայագիտական առարկաների ուսումնասիրությունը։ Այնուամենայնիվ Անդրկովկասի հայաբնակ վայրերից Թիֆլիսն ու Շուշին շարունակում են պահպանել իրենց կարևորությունը՝ իբրև մշակույթի օջախներ։ Շուշիում աշխուժանում է հատկապես թատերական կյանքը։

Մենագրության մեջ ներկայացված է 1890-ական թվականներին Ղարաբաղի պարբերական մամուլի պատմության մեջ հայտնի ականավոր բանասեր Երվանդ Լալայանի «Ազգագրական հանդեսի» մասին, որը հայ ընթերցողի համար ոչ միայն գիտական հարուստ նյութեր էր տպագրում անցյալի ու ներկայի մասին, այլև սեր առաջացնում հայրենի հողի ու ջրի նկատմամբ։ Հանդեսին աշխատակցել են անվանի գիտնականներ Մ. Աբեղյանը, Ստ. Մալխասյանցը, Հր. Աճառյանը, Թ. Թորամանյանը, Ն. Շահազիզը, Վր. Փափազյանը, Գ. Լևոնյանը և ուրիշներ։

Մենագրության չորրորդ գլուխը բացահայտում է 1890—1906 թթ. հայ մամուլի համար տխուր քաղաքական իրավիճակը, երբ ցարական դաժան գրաքննությունը ձգտում էր փականքի տակ դնել լուսավոր միտքը, արգելում էր հրապարակելու մասսայական գրականություն, թերթ, ամսագիր, հանդես, քանի որ այնտեղ կարող էին թափանցել հակակառավարական և հեղափոխական մտքեր։ Այս ամենին հակառակ առավել հնարամիտ էին մամուլի անվարան գործիչները։ Հեղինակը ներկայացնում է Արցախի մտավորականության առաջադեմ ներկայացուցիչներին, որոնք կրթվելով երկրի տարբեր քաղաքների միջնակարգ ու բարձրագույն դպրոցներում, ունենալով հեղափոխական գաղափարներ, ձգտում էին տեղերում կազմակերպել մարքսիստական խմբակներ։ Այդպիսի խմբակ է ստեղծվում Շուշիում 1902 թվականին։ Այստեղ են թափանցում գրքեր, թռուցիկներ, կոչեր, պարբերականներ։ Մեծ գործ է կատարում լենինյան «Իսկրան»։ 1901—1903 թթ. այդ թերթի առանձին համարները գավառի մարդկանց են հասնում ամենից առաջ Լենինի աշակերտ, ղարաբաղցի Բոգդան Կնունյանցի միջոցով։ Առանձին համարներում «Իսկրան» անդրադառնում էր Ղարաբաղի, մասնավորապես Շուշիի բնակչության ծանր պայմաններին, նրա հեղափոխական ոգուն, հանդուգն մտքին։

Հեղափոխական շարժումը Ղարաբաղում նոր լիցք է ստանում 1905 թ. համառուսաստանյան

* Ս. Դ. Ավագյան, «Ղարաբաղի մամուլի պատմություն (1828—1920)», Ե., 1989, 288 էջ։

գործադուլներից։ Հեղինակը ներկայացնում է այդ թվականին Շուշիում ստեղծված սոցիալ-դեմոկրատական խմբի գործունեության մասին, որն ամուր կապեր էր հաստատել Վ. Ի. Լենինի և նրա ղեկավարած բոլշևիկյան «Պրոլետարի» թերթի հետ։ Խմբի անդամների ջանքերով Շուշիում հիմնվում է տպարան, ուր տպագրվում են հեղափոխական կոչեր, թռուցիկներ։ 1904—1905 թթ. ուսումնական պլաններից հանված էին մայրենի լեզուները, որոնք կարելի էր լսել միայն կրոնի դասերին։ Այդ պատճառով էլ 1905 թ. փետրվարի 10-ին Շուշիի ռեալական դպրոցի աշակերտները գործադուլ են անում՝ պահանջելով տեղական լեզուների ուսումնասիրումը դարձնել պարտադիր։ Հեղինակը ներկայացնում է այս հարցում ցարական կառավարության դիրքորոշումը, որը ձգտում էր սեպ խրել Անդրկովկասի ժողովուրդների միջև, հրահրել ազգամիջյան կռիվներ։ 1905—1907 թթ. հայ-ադրբեջանական ընդհարումներ են տեղի ունենում Ղարաբաղում։ Այրվում է Շուշի քաղաքի մեծ մասը։

Գրքի հինգերորդ գլխում լուսաբանվում է 1910—1914 թվականների Ղարաբաղի մամուլն ու գրականությունը։ 1910 թ. Շուշիում Մելքոն Բաբաջանյանի տպարանում լույս տեսնող առաջին պարբերականը «Ղարաբաղ» թերթն էր, որի շուրջ էին համախմբվել գավառի մտավորականները։ Թերթի խմբագիրն էր Վրթանես Փափազյանը, որն իր «Գրական ակնարկներ» ծավալուն հոդվածաշարում խոսում էր արվեստագետի, նրա աշխարհայացքի, արծարծվող գաղափարների ու պոետական արժանիքների մասին։ Թերթի ակտիվ աշխատակիցներից էին Արցախի մշակույթի նշանավոր գործիչ Առաքել Առաքելյանը, հայ մեծ գրող Պերճ Պռոշյանը։ Թերթը խարազանում էր այն անձնավորություններին, որոնք հեռացել էին հասարակական կյանքից, չէին մտածում ժողովրդի մասին։ 1911—1914 թթ. գավառի տնտեսական ու հոգևոր կյանքն են լուսաբանում Ղարաբաղում հրատարակվող ռուսական երկու թերթ՝ «Շուշինսկի լիստոկը» և «Շուշինսկայա ժիզնը»։

Գիրքը տեղեկացնում է 1912—1917 թթ. Շուշիի թեմական դպրոցի աշակերտական երկու կազմակերպությունների՝ «Միություն» և «Միրաժ»-ի մասին, որոնք ունեին իրենց տպագիր միջոցները և խոսքի ուժով բացահայտում էին կյանքի արատավոր երևույթներն ու փորձում ճիշտ ուղի գտնել դրանց վերացման համար։

1915 թ. մարտին Շուշիում լույս է տեսնում «Փայլակ» թերթը, որը Ղարաբաղի աշխատավորությանը սոցիալական պայքարի էր կոչում։ 1917 թ. փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխությունից հետո երկրի իրավիճակը մնում էր լարված։ Ցարիզմի տապալումից հետո սկսվել էր նոր ժամանակաշրջան։ Բոլշևիկների կուսակցությունն առաջ քաշեց «Ամբողջ իշխանությունը խորհուրդներին» լոզունգը։ Այդ օրերին, ինչպես հիշատակում է հեղինակը, բոլշևիկներն օգտագործում էին ոչ միայն միտինգներն ու ցույցերը, այլև թերթերն ու հանդեսները։

Հեղափոխության վերելքի ժամանակաշրջանում Շուշիում հրատարակվող «Նեցուկ» թերթը, որի խմբագիրն էր հասարակական-քաղաքական նշանավոր գործիչ Աշոտ Հովհաննիսյանը, կոչ էր անում աշխատավորներին գոտեպնդվելու վճռական մարտերի, համախմբվելու բոլշևիկների կուսակցության շուրջը։ Թերթի էջերում հանդես են եկել քաղաքական գործիչ և հրապարակախոս Ալեքսանդր Ծատուրյանը՝ Ղարաբաղի բոլշևիկյան կազմակերպության հիմնադիրներից մեկը, և քաղաքական գործիչ ու հրապարակախոս Հակոբ Կամարին։

Մենագրության մեջ այնուհետև հեղինակը ներկայացնում է 1918— 1920 թվականների մամուլը։ Այսպես, 1918 թ. օգոստոսի 29-ին հրապարակվում է «Ղարաբաղի սուրհանդակ» թերթը։ 1919 թ. Ղարաբաղի հայոց «Ազգային խորհուրդը» ստեղծում է «Արցախ» անունով թերթ։ Այդ ժամանակաշրջանում հրատարակվում է նաև «Նոր կյանքը», որը լույս էր տեսնում Շուշիում շաբաթը մեկ անգամ։

Ս. Ավագյանի սույն մենագրությունը կարևոր ներդրում է Արցախի նախախորհրդային շրջանի մամուլի պատմության ուսումնասիրման գործում։ Այն ունի ոչ միայն ճանաչողական նշանակություն, այլև արձագանքում է ղարաբաղյան ազգային-ազատագրական արդի շարժմանը՝ արժանանալով ընթերցող լայն հասարակայնության ուշադրությանը։

ՋՈՒԼԻԵՏԱ ԱՎԱԳՅԱՆ

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ

«Ով որ մուտք է գործում գիտության տաճարը,— սովորեցնում էին մեր մեծերը,— նա պարտավոր է միայն ճշմարտությունը սիրել» կամ, ինչպես Մ. Խորենացին է ասել, «զհետ երթալ... զարդարոյն և զճշմարիտն»,— այսպիսի հիշեցում է արել Մանուկ Աբեղյանն իր աշխատություններից մեկում, շատ լավ իմանալով, որ գիտության աշխարհում կան, իրոք, մարդիկ, որոնք դրա դեմ գնալով՝ կեղծումներ են կատարում։ Ճիշտ այդպես է վարվել Ռ. Իշխանյանը նաև իմ «Մի անհրաժեշտ պարզաբանում» հոդվածի («Խորհրդային Հայաստան» թերթի 1989, № 261) առթիվ գրած «Պարզաբանու՞մ, թե՞ մթագնում» նամակում («ԽՀ» 1989, № 265), այդտեղ ևս սխալ ներկայացնելով ասածներս։

Այսպես՝ առաջին. ես իմ հոդվածում նշել եմ, որ Մ. Աբեղյանը, դեռևս անցյալ դարի 90-ական թվականներից սկսած, մտահոգվել է հայոց լեզվի ուղղագրության բարեփոխության հարցով, որ տակավին 1913 թ. հատուկ զեկուցում է կարդացել հայոց լեզվի ուղղագրության մասին և գիտականորեն հիմնավորել, թե ինչ փոփոխություններ կարելի է կատարել այնտեղ, որ խորհրդային շրջանում «1921 թ. հունվար ամսին Հայաստանի Ս. Խ. Հանրապետության լուսավորության ժողկոմիսար Ա. Հովհաննիսյանի հրավերով (ընդգծումն իմն է— Ա. Մ.) Երևանում բազմամարդ ունկնդիրների առաջ» «մեր ուղղագրության բարեփոխության մասին» ևս «մի զեկուցում» է կարդացել՝ հետապնդելով, անշուշտ, միակերպ քերականության հետ միակերպ ուղղագրություն ունենալու, «գրել-կարդալու և ուղղագրության դժվարությունները վերացնելու նպատակ»...

Սրանք անժխտելի փաստեր են, որոնք պարզորոշ ցույց են տալիս, որ «Մ. Աբեղյանի մշակած և 1922 թ. մարտի 4-ի դեկրետով ընդունված նոր ուղղագրությունը» իրոք «ոչ մի կապ ու առնչություն չունի մի ընդհանուր լատինական գիր ստեղծելու ու նրանով առաջնորդվելու անհեթեթ գաղափարի հետ», որ, իրոք, «նոր ուղղագրությունը երբեք լատինական գրին անցնելու համար չէ կյանքի կոչվել և երբեք էլ դրա իրացման, այսպես կոչված, առաջին աստիճանը կամ փուլը չի կազմել»։

Բայց Ռ. Իշխանյանը, չգիտես ինչու և ինչ իրավունքով, անտեսելով այդ ամենը, իր նամակում դարձյալ հակառակն է պնդում և բռնանդատում բառին ամուր կառչած՝ փորձում ընթերցողներին համոզել, թե իբր 1922 թ. մարտի 4-ի դեկրետով ընդունված ուղղագրության ռեֆորմը պատմական որևէ հիմք չի ունեցել և սոսկ ուղղագրական բռնադատում է եղել...

Երկրորդ. ես իմ հոդվածում շատ պարզ նշել եմ, որ ՀԽՍՀ լուսժողկոմ Աշոտ Հովհաննիսյանին 1921 թ. սեպտեմբերին (և ամիսը իզուր չեմ հիշեցրել) փոխարինել է Պողոս Մակինցյանը, որը և Մ. Աբեղյանի «զեկուցման մեջ արված բոլոր առաջարկությունները ներկայացրեց ժողկոմիսարների խորհրդին (հիմա եմ դա ընդգծում— Ա. Մ.), որ և 1922 թ. մարտի 4-ին հաստատեց այն և հրամայեց գործադրել» (տե՛ս Մ. Աբեղյան, Ուղղագրության ռեֆորմը, Երևան, 1925, էջ 3)։

Պետք է ասել, որ Իշխանյանը այս դեպքում ևս ձևախեղում է կատարում և նոր ուղղագրության ռեֆորմը ամբողջապես Պ. Մակինցյանի անվան հետ կապելով՝ իր նամակում նրան ոչ միայն «1922 թ. ուղղագրական փոփոխության նախաձեռնող», «այդ փոփոխությունները ժողկոմխորհում անցկացնող», այլև «հրամանագրող» է համարում։

Բայց հայտնի է, որ ինչպես նաև հենց ինքը՝ Մ. Աբեղյանն է վկայում, որ նոր ուղղագրության 1922 թ. մարտի 4-ի դեկրետը ոչ թե Պ. Մակինցյանը, այլ Հայաստանի կառավարությունը՝ ՀԽՍՀ ժողկոմխորհն է հրամանագրել և որն էլ լույս է տեսել «Խորհրդային Հայաստան» թերթի նույն տարվա մարտի 18-ի համարում՝ Ժողկոմխորհի նախագահ Ալ. Մյասնիկյանի և Ժողկոմխորհի քարտուղար Դ. Տեր-Սիմոնյանի ստորագրությամբ։

Ռ. Իշխանյանը, սակայն, հանիրավի ոչ միայն այդ, այլև դեկրետի ընդունման կարևորությունն է անտեսում և չի նկատում, որ ՀԽՍՀ ժողկոմխորհը ուղղագրության փոփոխության մասին որոշում է կայացրել զուտ «ժողովրդական լայն խավերի համար հայերենի գրագիտության ուսուցումը հեշտացնելու, ընդհանուր կրթությունը բարձրացնելու և դպրոցը՝ ուղղագրություն սովորելիս գործ դրած անպետք և ապարդյուն ժամավաճառությունից և աշխատանքից ազատելու նպատակով»։

Ի դեպ, հարկ եմ համարում տեղեկացնել ընթերցողներին, որ այս շատ պարզ բնութագրումից բացի, Հայաստանի կառավարության հրատարակած դեկրետը բաղկացած է ընդամենը երկու կետից, որոնցից մեկով եթե ներկայացվում են ուղղագրության մեջ մտցվող փոփոխու-

թյունները, ապա մյուսով՝ հանձնարարվում է «լուսավորության ժողովրդական կոմիսարին (այսինքն՝ Պ. Մակինցյանին— Ա. Մ.) հրատարակել հրահանգ՝ սույն դեկրետը կիրառելու համար սահմանելով մասնակի և ամբողջական կիրառման ժամկետները»։

Հակառակ գնալով նաև սրան, Ռ. Իշխանյանը այս անգամ ևս «բոլոր մեղքերը» բարդում է միայն Պ. Մակինցյանի վրա և միաժամանակ մեղադրում ինձ, թե իբր ճիշտ չեմ ներկայացրել ոչ նրա և ոչ էլ իր ասածները...

Երրորդ. ես հոդվածումս շատ պարզ նշել եմ, թե երբ և ինչ նկատառումներով է Պ. Մակինցյանը հայտնել հայկական գրից լատինական գրին անցնելու տեսակետը, թե ինչպես և ինչու է քննադատել ու մերժել «աբեղյանական ուղղագրությունը», ավելացնելով նաև, որ Ռ. Իշխանյանը դա բնութագրում է «Պ. Մակինցյանի մեկնաբանություններին համապատասխան»։

Եվ խսկապես, որ առավել զարմանալի է, Ռ. Իշխանյանը, մի կողմից, ուղղագրության հարցում ամենամեծ «հանցավորը» Պ. Մակինցյանին է ճանաչում, իսկ, մյուս կողմից՝ ուղղակիորեն կրկնում է նրան և նրա պես մերժում նոր ուղղագրությունը։ Տարբերությունը թերևս միայն այն է, որ եթե Պ. Մակինցյանը 1922 թ. մարտի 4-ի դեկրետով ընդունված նոր ուղղագրությունն է հայկական գրից լատինականին անցնելու մի սատիճան համարում և գտնում, որ «ընդունված ռեֆորմը մեզ խզեց, անջատեց արտասահմանի հայկական տարրերից», որ «աբեղյանական ուղղագրությունը» հետադիմություն է և շատ շուտ պետք է ազատվել նրանից, ապա Ռ. Իշխանյանը նույն բաներն ասում է շուրջ 70 տարի հետո՝ այսօրվա ուղղագրության մասին, որ 1940 թ. ուղղագրական բարեփոխությամբ կուռ տեսք է ստացել և վերանայման ու վերափոխման կարիք բնավ չի զգում։

Չորրորդ. ես իմ հոդվածում շատ պարզ նշել եմ, որ հայկական գրից լատինական գրին անցնելու մասին Պ. Մակինցյանի հայտնած տեսակետը ժամանակին խստագույնս քննադատել ու մերժել է անվանի լեզվաբան Ստ. Մալխասյանցը, և հետևաբար՝ անիմաստ է ու ժամանակավրեպ, որ ներկայումս «հայկական գրից լատինականին անցնելու անհեթեթ տեսակետը մերժելու առաճելությունը ոմանք (պարզ է, որ նկատի եմ ունեցել հենց Իշխանյանին) իրենց վրա են վերցնում...»։

Ուղղակիորեն սրան պատասխանելու փոխարեն, Ռ. Իշխանյանը խուսանավում և իր նամակի կեսը կազմող մեջբերումից հետո ազդարարում է, թե «Ստ. Մալխասյանցը նոր ուղղագրության հակառակորդ էր» և Մարգարյանն էլ անտեղի է նրան վկայակոչում...

Թողնելով, որ ընթերցողը որոշի, թե ով ինչ է ասել, հարկ եմ համարում միայն նշել, որ նա այս դեպքում էլ իզուր է փորձում իրեն դաշնակից դարձնել Ստ. Մալխասյանցին, որովհետև ով ծանոթ է 1926 թ. ՀԽՍՀ լուսժողկոմատի կողմից կազմված «Ուղղագրության և տառերի ձևի բարեփոխության հանձնաժողովի «արած առաջարկների «Համադրական տախտակին» (տե՛ս «Տեղեկագիր Հ. Խ. Ս. Հ. գիտության և արվեստի ինստիտուտի», Երևան, 1927), գիտե, որ իբրև հանձնաժողովի անդամ, Ստ. Մալխասյանցը ձայն է տվել ուղղագրական մի շարք և այնպիսի փոփոխությունների օգտին, որոնք կիրառվում են այսօր՝ արդի ուղղագրության մեջ։

1922 թ. ուղղագրության ռեֆորմը բռնադատում համարելով և մերժելով ուղղագրական ամեն մի փոփոխություն՝ Ռ. Իշխանյանը պահանջում է առանց հապաղելու հրաժարվել արդի ուղղագրությունից և անցնել ոչ թե հին կամ ավանդական, այլ «մաշտոցյան կամ դասական» ուղղագրությանը, որ, ի դեպ, նա այդպես է անվանում միտումնաբար՝ իրեն մեծ մաշտոցասեր երևցնելու համար։

Այսպիսով՝ փաստերը վկայում ու ցույց են տալիս, որ Ռ. Իշխանյանը ոչ միայն պարզ պարզաբանումն է անհիմն կերպով մթագնում որակում, այլև այս անգամ նույնպես շատ ընթերցողների է թյուրիմացության մեջ գցում։ Եվ տվյալ դեպքում զարմանալին, իհարկե, ոչ թե դա, այլ այն է, որ նա կարողանում է անարգել նման գործողություններ ծավալել և հաճախ էլ հեշտորեն վիրավորել նրան, ում որ ցանկանում է... «Խորհրդային Հայաստան» թերթում հրապարակված «Պարզաբանու՞մ, թե՞ մթագնում» նամակը, անշուշտ, դրա մի նոր ու անհերքելի ապացույցն է։

Բանասիրական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր
Ա. ՄԱՐԳԱՐՅԱՆ

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 2, 1990 թ.։ Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն։

Հանձնվել է շարելու 17. 01. 1990 թ.։ Ստորագրվել է տպագրելու 27. 02. 1990 թ.։ ՎՖ 04237։ Ֆորմատ $70\times108^{1}/_{16}$։ Թուղթ՝ տպագրական № 2։ Օֆսեթ տպագրություն։ 8,4 պայմանական տպագրական մամուլ։ 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ։ Տպաքանակը՝ 8432։ Պատվեր՝ 49։ Գինը՝ 25 կոպ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2։
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван. проспект Орджоникидзе, 2.